ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 3
ՄԱՐՏ
1962 Թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ—ТЕОРЕТИЧЕСКИЙИ
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXIX
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ





# ՀԱՄԱՊԱՐՏԻԱԿԱՆ, ՀԱՄԱԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԳՈՐԾ

Հրապարակի վրա են Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի օրերս ավարտված պլենումի նյութերը: Մեր ամբողջ հասարակայնության ուշադրության կենտրոնում են գտնվում պլենումի կողմից միահամուռ հավանության արժանացած ՍՄԿՊ Կենտկոմի Առաջին քարտուղար ընկ. Ն. Ս. Խրուշչովի՝ «Կոմունիստական շինարարության արդի էտապը և պարտիայի խնդիրները գյուղատնտեսության ղեկավարումը բարելավելու ասպարեզում» զեկուցումը, այդ առթիվ պլենումի ընդունած որոշումը և նրա Դիմումը՝ ուղղված Սովետական Միության կոլտնտեսականներին ու կոլտնտեսուհիներին, սովխոզների բանվորներին ու բանվորուհիներին, գյուղատնտեսության մասնագետներին, գիտնականներին, արդյունաբերության աշխատողներին, կոմունիստներին ու կոմերիտականներին, բոլոր աշխատավորներին:

Ջերմորեն արձագանքելով պլենումի Դիմումին, սովետական մարդիկ, այդ թվում և Հայաստանի բոլոր աշխատավորներն իրենց պատրաստակամությունն են հայտնում՝ հետևողականորեն կենսագործելու պարտիայի մշակած այն բոլոր միջոցառումները, որոնք ուղղված են մեր երկրի գյուղատնտեսության համակողմանի վերելքին, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ծրագրի հաջող կատարմանը, ժողովրդի բարեկեցության բարձրացմանը, սովետական յուրաքանչյուր մարդու բարօրությանը:

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումին տված իր զեկուցման մեջ ընկեր Ն. Ս. Խրուշչովը վերլուծեց սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման գործում տեղի ունեցած պրոցեսները, մեր գյուղատնտեսության արդի վիճակն ու նրա հետագա բուռն վերելքի փայլուն հեռանկարները: Զեկուցման մեջ իրենց զարգացումն ստացան մարքսիստական-լենինյան թեորիական դրույթները կոմունիստական առատության, կոմունիզմի կառուցման գործում նյութական և բարոյական գործոնների զուգակցման, կոմունիստական և ազգային-ազատագրական շարժման զարգացման վրա մեր տնտեսական հաջողությունների աճող նշանակության մասին և այլն:

Ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման և պլենումի որոշման մեջ ցույց են տրված, թե ինչպես վերջին տարիներին պարտիան կոլտնտեսային ու սովխոզային արտադրության վերելքի նպատակով իրագործեց ռևոլյուցիոն միջոցառումներ, որոնց շնորհիվ սոցիալիստական գյուղատնտեսությունը հասավ լուրջ հաջողությունների: Բավական է ասել, որ 1961 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, երկրում հացահատիկի արտադրությունն աճեց 66 տոկոսով, բանջարեղենինը՝ 37, մսինը (սպանդանոցային քաշով)՝ 50, կաթինը՝ 71, կենդանական յուղինը՝ 80 տոկոսով: Ամբողջ գյուղատնտեսության համախառն արտադրանքն այդ նույն ժամանակամիջոցում ավելացել է 1,6 անգամ:

Գյուղատնտեսական արտադրանքի արտադրության աճման շնորհիվ զգալի-

րեն ավելացել են պետական գնումները և կարևոր սննդամթերքների վաճառքը բնակչությանը: ՍՍՌՄ պետական առևտրի միջոցով բնակչությանը մսի ու մսեղենի վաճառքը 1953 թվականի մեկ միլիոն 757 տոննայից 1961 թվականին հասավ 4 միլիոն 33 հազար տոննայի, կաթինը ու կաթնեղենինը՝ մեկ միլիոն 980 հազար տոննայից 9 միլիոն 393 հազար տոննայի, յուղինը՝ 330 հազար տոննայից 632 հազար տոննայի, շաքարինը՝ 2 միլիոն 410 հազար տոննայից 4 միլիոն 550 հազար տոննայի:

Բայց, չնայած գյուղատնտեսական մթերքների արտադրության կգալի աճին, պարտիան սուր քննադատությամբ բացահայտում է գյուղատնտեսության ասպարեզում եղած թերությունները: Բանն այն է, որ գյուղատնտեսության զարգացման տեմպերը դեռ ետ են մնում արդյունաբերության աճման տեմպերից, որ հացահատիկի, մսի, կաթի և հողագործության ու անասնաբուծության մյուս մթերքների արտադրության մակարդակը դեռևս բացահայտորեն անբավարար է: Այն չի համապատասխանում տնտեսության սոցիալիստական սիստեմի հսկայական հնարավորություններին և գյուղատնտեսական մթերքների աճած պահանջմունքներին, այն մեծ խնդիրներին, որ առաջադրել է մեր պարտիայի XXII համագումարը ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման բնագավառում: Բնակչության գյուղատնտեսական մթերքների պահանջմունքը դեռևս լրիվ չի բավարարվում, որն առաջին հերթին բացատրվում է բնակչության ավելացմամբ և աշխատավորների ռեալ եկամուտների աճմամբ: 1953 թվականից հետո երկրի բնակչությունն ավելացել է 29 միլիոնով, այդ թվում քաղաքային բնակչությունը՝ 28 միլիոնով: Բնակչության դրամական եկամուտները, հաշվի առնելով հարկերի և փոխառության բաժնեգրության վերացումը, 1961 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, աճել են 42 միլիարդ ռուբլով, կամ 87 տոկոսով:

Այս պայմաններում, ասված է պարտիայի Կենտկոմի պլենումի որոշման մեջ «...պահանջվում էր խիստ արագացնել գյուղատնտեսական մթերքների արտադրության տեմպերը, հասնել այն բանին, որ դրանք համապատասխանեն բնակչության հարաճուն պահանջմունքներին, որ մթերքների արտադրությունը գերազանցի դրանց պահանջարկին: Մինչդեռ գյուղատնտեսական մթերքների արտադրության աճը յոթնամյակի առաջին երեք տարում կգալիորեն ետ էր մնում նախատեսված մակարդակից»: Դա ամբողջապես վերաբերում է նաև մեր ռեսպուբլիկային, ուր միայն 1959—1960 թվականների ընթացքում յոթնամյա պլանով նախատեսվածից պակաս է արտադրվել հացահատիկ՝ 55 հազար տոննա, կաթ՝ 52 հազար տոննա, բուրդ՝ մոտ 1100 տոննա: Ավելին՝ Ազիզբեկովի, Ղափանի, Կրասնոսելսկի, Հրազդանի, Սևանի, Ստեփանավանի և մյուս շրջանների շատ կոլտնտեսություններ այդ նույն թվականներին կաթի արտադրությամբ ոչ միայն ետ են մնացել յոթնամյա պլանով նախատեսված մակարդակից, այլ նույնիսկ պակասեցրել են այն:

Գյուղատնտեսական մթերքների արտադրության՝ յոթնամյակի առաջադրանքների անբավարար կատարումը նախ և առաջ գյուղատնտեսության ղեկավարման գործում եղած խոշոր թերությունների հետևանք է: Էական թերություններից է այն, որ շատ ղեկավար աշխատողներ չեն ըմբռնել գյուղատնտեսության մեջ կազմակերպական աշխատանքը վճռականորեն բարելավելու անհրաժեշտությունը, ժամանակին անհրաժեշտ միջոցներ ձեռք չեն առել հողն ավելի լավ օգտագործելու համար: Բացի այդ, Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումից հետո ձեռք բերված մեծ հաջողությունները մեր կադրերի որոշ մասի մեջ առաջ են բերել ինքնահանգստացում, որը խանգարում է գործին: Պարտիայի Կենտկոմի պլենումում լուրջ քննադատության



ենթարկվեցին մի շարք պարտիական, սովետական և գյուղատնտեսական օրգաններ, որոնք թուլացրել են ուշադրությունը գյուղատնտեսության կարիքների նկատմամբ, ըստ արժանվույն չեն գնահատել ժողովրդական տնտեսության այդ կարևոր ճյուղի նշանակությունը:

Գյուղատնտեսության զարգացումը հանդիսանում է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման անբաժանելի մասը: Դա կոմունիստական շինարարության այն տեղամասն է, որից անմիջականորեն կախված է բնակչության պահանջմունքների բավարարումը, երկրում սպառման ապրանքների առատության ստեղծումը: Երկրի գյուղատնտեսության հետագա վերելքը առաջնակարգ նշանակություն է ստանում, որովհետև, ինչպես ասված է ՍՄԿՊ Ծրագրում, «Հզոր արդյունաբերության հետ մեկտեղ ծաղկուն, բազմակողմանիորեն զարգացած և բարձր մթերատու գյուղատնտեսության ստեղծումը կոմունիզմի կառուցման պարտադիր պայմանն է»: Ահա թե ինչու գյուղատնտեսության վերելքը, գյուղատնտեսական մթերքների առատության ապահովումը հանդիսանում են կոմունիստական շինարարության հարվածային ճակատը, ամբողջ պարտիայի, ամբողջ ժողովրդի գործը:

ՍՍՌՄ արդյունաբերության զարգացման տեմպերից գյուղատնտեսության ետ մնալը հաղթահարելու համար անհրաժեշտ է անպայման կատարել այն առաջադրանքները, որոնք պարտիայի XXII համագումարը նախատեսել է ժողովրդական տնտեսության այդ կարևոր ճյուղում: Այդ նպատակով էլ Մարտյան պլենումը անհրաժեշտ համարեց առաջիկա տարիներին գյուղատնտեսական հիմնական մթերքների արտադրությունը հասցնել հետևյալ չափերի՝ հացահատիկ 1962 թվականին 10, իսկ 1965 թվականին՝ 11,7 միլիարդ փթի, միս (սպանդանոցային քաշով) համապատասխանաբար 12,9 և 16,1 միլիոն տոննայի, կաթ՝ 85 և 105 միլիոն տոննայի:

Այդ և գյուղատնտեսության վերելքի հետ կապված մյուս խնդիրների իրականացման համար Սովետական Միությունում կան բոլոր ռեալ պայմաններն ու հնարավորությունները: Մենք ունենք բարեբեր հողի հսկայական տարածություններ, գյուղատնտեսության ժամանակակից զարգացած տեխնիկա, տաղանդավոր կազմակերպիչների ու մասնագետների, առաջավորների ու նորարարների մի հսկա բանակ: Գյուղատնտեսության աշխատողների ձեռքի տակ են ժամանակակից գիտության ու տեխնիկայի, գյուղատնտեսության բազմաթիվ փարոսների մեծ նվաճումները, առկա են Սովետական պետության օգնությունն ու հոգատարությունը, մեր մեծագործ Կոմունիստական պարտիայի փորձված ղեկավարությունը:

Մնում է, որ գյուղատնտեսության աշխատողները, տեղական պարտիական, սովետական և գյուղատնտեսական օրգանները հմտորեն օգտագործեն եղած հնարավորությունները, մինչև վերջ գործի վերածեն կյանքի փորձով ստուգված ու գիտականորեն հիմնավորված այն բոլոր խնդիրները, որ այսօր առաջադրում է պարտիայի Կենտրոնական Կոմիտեն:

Մեկ համար առաջվա պես կարևորագույն խնդիր է մնում ըստ ամենայնի ավելացնել հացահատիկի արտադրությունը, որպես ամբողջ գյուղատնտեսական արտադրության հիմքերի հիմքը: Այդ նպատակով պարտիայի Կենտրոնական Կոմիտեն գյուղի բոլոր աշխատավորներին կոչ արեց ծավալել ցորենի, եգիպտացորենի, ոլոռնի, կորեկի, հնդկացորենի և հացահատիկային ու հատիկալոբազգի այլ կուլտուրաների բերքատվությունը բարձրացնելու մասսայական շարժում, որպեսզի յուրաքանչյուր կոլտնտեսություն և սովխոզ ցորենի ու հացահատիկային այլ կուլտուրաների ամեն մի հեկտարից ստանա 20—25 ցենտներ, եգիպտացորենի հեկտարից՝

50 ցենտներ (հատիկ), ոլոռնի և կերի լոբազգիների հեկտարից՝ 20—30 ցենտներ
բերք: Վերոհիշյալ և գյուղատնտեսական մյուս կուլտուրաների արտադրության
ավելացումը շատ բանով կախված է ընթացիկ տարվա գարնանացանի հաջող նա-
խապատրաստումից: Ուստի ռեսպուբլիկայի բոլոր կոլտնտեսություններում ու սով-
խոզներում պետք է մարտական բեկում մտցնել այդ գործում: Անհրաժեշտ է ամե-
նակարճ ժամանակամիջոցում մաքրել ու կոնդիցիային հասցնել սերմացուն, լրաց-
նել պակասը, վերանորոգել ու պատրաստի վիճակում պահել գյուղատնտեսական
մթերքներն ու գործիքները, բրիգադներում ու օղակներում կատարել աշխատանքի
բաժանում, արագացնել պարարտանյութերի դաշտ տեղափոխումը, ոռոգման ցանցի
կարգավորումը և այն բոլոր նախապատրաստական աշխատանքները, որոնք կապ-
ված են գարնանացանը ագրոտեխնիկական սեղմ ժամկետներում ու բարձր որակով
կատարելու հետ:

Խնդիրները մեծ են ու պատասխանատու նաև անասնաբուծության կարգաց-
ման գործում: Պետք է հասնել այն բանին, որ արդեն 1962 թվականին և մոտակա
տարիներին կոլտնտեսություններն ու սովխոզները ավելի շատ միս և կաթ ար-
տադրեն, որ բնակչությունը տարեցտարի ավելի շատ այդպիսի մթերքներ ստանա:
Դրա համար, ամենից առաջ, պետք է ստեղծել կերի կայուն բազա, ավելի շատ
արտադրել այնպիսի կերաբույսեր, ինչպիսիք են՝ կաթնամոմային հասունության
կողրերով եգիպտացորենը ու կերի սիլոսացու լոբազգիները, շաքարի ճակնդեղը և
ոլոռնը: Կերի կայուն բազայի ստեղծումը, ինչպես նաև անասնաբուծության զար-
գացման հետ կապված մյուս հարցերի ժամանակին լուծումը առանձնապես կարևոր
նշանակություն ունեն մեր ռեսպուբլիկայի համար: Մեր որոշ շրջաններ դեռևս ետ
են մնում անասնաբուծական մթերքների արտադրության գործում: Նման վիճակին
պետք է վերջ տրվի և ամեն կերպ ընդլայնվի անասնաբուծական մթերքների ար-
տադրությունը: Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները պետք է նկատի
ունենան, որ մեր կոլտնտեսությունների ու սովխոզների առջև խնդիր է դրված 1962
թվականին, 1961 թվականի համեմատությամբ, մսի արտադրությունն ավելացնել
17,3 տոկոսով, կաթինը՝ 24,5, բրդինը՝ 10, ձվինը՝ 43 տոկոսով: Այդ խնդրի լուծումը
մեծ ջանքեր է պահանջում և հանդիսանում է գյուղի աշխատավորների պատվի
գործը:

ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա վերելքի համար բացառիկ կարևոր նշա-
նակություն ունի Վ. Ռ. Վիլյամսի հողագործության խոտացանության սիստեմի վե-
րացումը: Ընկեր Ն. Ս. Խրուշչովը Կենտկոմի պլենումին տված իր զեկուցման մեջ
գիտականորեն վերլուծեց ու ցույց տվեց այդ սիստեմի սնանկությունը, որը խոշոր
վնաս է պատճառել մեր գյուղատնտեսությանը: Դատապարտելով սոցիալիստական
գյուղատնտեսության համար խոտադաշտային անպետք սիստեմը, ՍՄԿՊ Կենտկոմի
Մարտյան պլենումը պահանջեց վճռականորեն անցնել հողագործության առավել
ինտենսիվ սիստեմների, լայնորեն արմատավորել շարահերկ ու լոբազգի բարձր
արդյունավետ կուլտուրաների ցանքը, որը հնարավորություն է ընձեռում արմա-
տապես բարելավելու հողի օգտագործումը, ապահովելու կերի առատություն, ար-
տադրելու անհրաժեշտ քանակությամբ գյուղատնտեսական մթերքներ: «Խոտա-
դաշտային մեռած սխեմաներին,— ասված է պլենումի որոշման մեջ,— հարկավոր
է հակադրել ցանքատարածությունների կենսունակ, նպատակասլաց ստրուկտուրա,
որպեսզի հողի յուրաքանչյուր հեկտարից ստացվեն առավելագույն քանակությամբ
գյուղատնտեսական մթերքներ՝ արտադրանքի միավորին ընկնող աշխատանքի ու
միջոցների նվազագույն ծախսումներով»:



ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը նշեց, որ մեր գյուղատնտեսությունը հետագա
զարգացման լայն հնարավորություններ ունի: Բայց դրանք ինքնըստինքյան ոչինչ
չեն տա, եթե ինչպես հարկն է չկազմակերպվի գյուղատնտեսական արտադրության
կառավարումը: Վերջերս, իհարկե, այդ ուղղությամբ որոշ աշխատանք կատարված
է. վերակազմված են Գյուղատնտեսության մինիստրությունը, մթերման ապարատը.
Գյուղատնտեսության մինիստրության սիստեմից առանձնացված է «Սոյուզսելխոզ-
տեխնիկան» և այլն: «Սակայն հարկավոր է ասել,— իր զեկուցման մեջ նշեց ըն-
կեր Խրուշչովը,— որ գյուղատնտեսական օրգանների վերակազմումը առայժմ չի
շոշափել արտադրության ոլորտը, չի շոշափել կոլտնտեսությունների ու սովխոզ-
ների անմիջական ղեկավարման հարցը: Իսկ դա գլխավորն է: Մեր բոլոր պլան-
ները և հաշվարկները կարող են օդում կախված մնալ, եթե գյուղատնտեսության
ղեկավարման ասպարեզում մեր պրակտիկ գործունեության մեջ մենք չհասնենք
մինչև կոլտնտեսություն ու սովխոզ, պատշաճ ազդեցություն չունենանք յուրաքան-
չյուր տնտեսության կողմից հնարավորությունների ավելի լրիվ օգտագործման
վրա»: Պարտիական և սովետական շատ օրգաններ չեն հասկացել այն նոր իրա-
դրությունը, որ առաջացրել է ՄՏ կայանների վերակազմումը: Դա ոչ թե նվազեցրել,
այլ, ընդհակառակը, մեծացրել է պարտիական ու սովետական օրգանների պա-
տասխանատվությունը կոլտնտեսային արտադրության կազմակերպման համար:
Բայց, չնայած դրան, տվյալ օրգանների կողմից կոլտնտեսային արտադրության ղե-
կավարման ձևերը շատ բաներով մնացել են անփոփոխ, այնպես, ինչպես դրանք
կային մինչև ՄՏ կայանների վերակազմումը: Փաստորեն, ըստ էության, չկա մի
օրգան, որն ինչպես հարկն է կառավարի գյուղատնտեսությունը, զբաղվի արտա-
դրության ու մթերումների կազմակերպմամբ, պատշաճ կերպով խորամուխ լինի
կոլտնտեսությունների ու սովխոզների կարիքներին, հասնի հողի, տեխնիկայի և
արտադրության մյուս միջոցների առավել արդյունավետ օգտագործման:

Հաշվի առնելով այդ, Կենտկոմի պլենումը անհրաժեշտ գտավ արմատապես
վերակառուցել գյուղատնտեսության կառավարումը, այն մոտեցնել արտադրությա-
նը, դարձնել կոնկրետ ու օպերատիվ: Պլենումը որոշեց երկրի մարզերում, երկրա-
մասերում և միութենական ռեսպուբլիկաներում ստեղծել գյուղատնտեսական ար-
տադրության ղեկավարման կոլտնտեսային-սովխոզային կամ սովխոզային-կոլտըն-
տեսային (նայած որ ձևն է գերակշռում) տերիտորիալ արտադրական վարչություն-
ներ և գյուղատնտեսության կոմիտեներ: Նպատակահարմար համարվեց կենտրոնում
ստեղծելու Գյուղատնտեսության միութենական կոմիտե, ինչպես նաև կոլտնտեսա-
յին-սովխոզային միջշրջանային տերիտորիալ արտադրական վարչություններում
ունենալ միութենական ռեսպուբլիկաների Կոմպարտիաների Կենտկոմների կամ
պարտիայի երկրկոմների ու մարզկոմների պարտկազմակերպիչներ:

Ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման և Կենտկոմի պլենումի որոշման մեջ հան-
գամանորեն շարադրված են տերիտորիալ արտադրական վարչությունների, նրանց
պարտկազմակերպիչների և գյուղատնտեսական կոմիտեների խնդիրներն ու անե-
լիքները, որոնք մեծ են ու պատասխանատու: Միջշրջանային արտադրական վար-
չությունները պետք է զբաղվեն պլանավորմամբ, հաշվառմամբ ու հաշվետվությամբ
և, որ գլխավորն է, անմիջական ազդեցություն գործեն իրենց սպասարկած յուրա-
քանչյուր կոլտնտեսության ու սովխոզի արտադրության կազմակերպման վրա,
զբաղվեն կադրերի ընտրության ու դաստիարակության, գիտության նվաճումների,
առաջավորների փորձի տարածման ու արմատավորման կոնկրետ հարցերով:

Գյուղատնտեսության կառավարման նոր սիստեմին անցնելիս, արտադրության,

ֆինանսական, էկոնոմիկայի վիճակի և տնտեսության ճիշտ վարման համար անմի-
ջականորեն պատասխանատու է կոլտնտեսության վարչությունը կամ սովխոզի դի-
րեկտորը: Դրա համար անհրաժեշտ է այդ տեղամասերն ուղարկել արտադրության
տաղանդավոր կազմակերպիչների, որոնք իրենց հարուստ փորձով ու գիտելիքնե-
րով կապահովեն առաջադրված խնդիրների կատարումը: Գործի շահը պահանջում
է, որպեսզի կոլտնտեսային և սովխոզային արտադրության մեջ աշխատանքի անց-
նեն նաև գյուղատնտեսության այն մասնագետները, որոնք ներկայումս աշխատում
են ժողովրդական տնտեսության այլ ճյուղերում:

ՍՄԿՊ Կենտկոմի Մարտյան պլենումը կոնկրետ միջոցառումներ նշեց կոլտըն-
տեսությունների ու սովխոզների նյութատեխնիկական բազան ամրապնդելու, գյու-
ղատնտեսության համար կատարելագործված մեքենաների ու գործիքների, հան-
քային պարարտանյութերի արտադրությունն ավելացնելու, ինչպես նաև եղած գյու-
ղատնտեսական տեխնիկան խնամքով ու արդյունավետ օգտագործելու, գիտահե-
տազոտական հիմնարկների աշխատանքը բարելավելու, գիտության նվաճումներն
ու առաջավոր փորձը լայնորեն ներդնելու, ետ մնացող կոլտնտեսություններն ու
սովխոզները առաջավորներին հասցնելու համար և այլն:

Պլենումը վերստին ընդգծեց գյուղատնտեսական մթերքների արտադրությունն
ավելացնելու գործում կոլտնտեսականների, սովխոզների բանվորների, մասնագետ-
ների նյութական շահագրգռվածության սկզբունքի հետևողական կենսագործման
հատուկ նշանակությունը: Խնդիր դրվեց հասնել այն բանին, որ բոլոր կոլտնտե-
սություններում խստիվ կիրառվի աշխատանքի վարձատրման հաշվին ամենամսյա
ավանսներ տալու սահմանված կարգը, լայնորեն արմատավորվի աշխատանքի
լրացուցիչ վարձատրությունը կոլտնտեսություններում և աշխատանքի ակորդային-
պրեմիալ վարձատրությունը՝ սովխոզներում:

ՍՄԿՊ Կենտկոմի Մարտյան պլենումի մշակած միջոցառումներն ապահովելու
են սոցիալիստական գյուղատնտեսության բոլոր ճյուղերի նոր վերելքը: Այդ մի-
ջոցառումները գյուղի բոլոր աշխատավորներին պարտավորեցնում են պայքարի
դուրս գալ և ամենօրյա ստեղծագործական աշխատանքով գործի դնել եղած հա-
րուստ ռեզերվները, վճռականորեն բարձրացնել գյուղատնտեսական կուլտուրաների
բերքատվությունը և անասնաբուծության մթերատվությունը, բազմապատկել նյու-
թական բարիքների արտադրությունը:

Ոգեշնչված կոմունիզմի վեհ գաղափարներով՝ Սովետական Հայաստանի կո-
մունիստներն ու բոլոր աշխատավորները կանեն ամեն ինչ, որպեսզի պատվով կա-
տարեն ՍՄԿՊ XXII համագումարի և Կենտրոնական Կոմիտեի Մարտյան պլենումի
որոշումները: Նրանք ուժ ու եռանդ չեն խնայի ռեսպուբլիկայի գյուղատնտեսության,
ամբողջ ժողովրդական տնտեսության պլանային առաջադրանքները կատարելու և
գերակատարելու, կոմունիզմի կառուցման գործում իրենց արժանի լուման ներդնե-
լու համար:

---

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՄՏԱԾՈՂՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՆ


**Պ. ԿՈՊՆԻՆ**

Կիևի համալսարանի դիալեկտիկական և պատմական
մատերիալիզմի ամբիոնի վարիչ, փիլիսոփայական
գիտությունների դոկտոր, պրոֆեսոր


### ՄՏԱԾՈՂՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՓՈԽԱԴԱՐՁ ԿԱՊԸ

*ՍՄԿՊ XXII համագումարում ընդունված Սովետական Միության Կոմու-
նիստական պարտիայի Ծրագրում դրված է ՍՍՌՄ-ում երկու տասնամյակի
ընթացքում կոմունիզմի նյութատեխնիկական բազա ստեղծելու խնդիրը: Մեր
պարտիայի գլխավոր գծի հիմքը կազմող այդ հիմնական տնտեսական խնդրի
իրագործումը կպահանջի՝ սոցիալիստական արդյունաբերության ինտենսիվ
զարգացում, արմատական փոփոխություն նրա բոլոր ճյուղերում, խոշոր տե-
ղաշարժեր նրա ստրուկտուրայում: Ընդ որում հատուկ նշանակություն է տրվում
արդյունաբերության նոր ճյուղերին, որոնցից նշանակալից չափով կախված է
տեխնիկական առաջադիմությունը:*

*Որպեսզի ապահովենք աշխատանքի ամենաբարձր արտադրողականու-
թյունը, որը Վ. Ի. Լենինի արտահայտությամբ, ամենագլխավորն է նոր, կո-
մունիստական հասարակարգի հաղթանակի համար՝ հնի, կապիտալիստականի
նկատմամբ, անհրաժեշտ է մեր արտադրությունը զինել ամենակատարելա-
գործված տեխնիկայով:*

*Ժամանակակից մեքենաների, հաստոցների և ապարատների ստեղծումը
կապահովի արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության,
տրանսպորտի և այլնի կոմպլեքսային մեքենայացումը: Սոցիալիստական ար-
տադրության հետագա զարգացման մեջ մեծ դեր է հատկացվում ավտո-
մատացմանը: «Քսանամյակի ընթացքում,— ասվում է ՍՄԿՊ Ծրագրում,—
լայնորեն կկիրառվի արտադրության կոմպլեքսային ավ-
տոմատացումը՝ ավելի մեծ չափով անցնելով ավտոմատ ցեխերի ու ձեռնար-
կությունների»: Այդ կապակցությամբ դրվում է կիբեռնետիկայի, էլեկտրոնա-
յին հաշվող-լուծող և կառավարող սարքերի լայն կիրառման հարցը:*

*Արտադրության տեխնիկայի հետագա զարգացումը և կատարելագործու-
մը զգալի չափով պայմանավորված է մարդկային մտածողության զարգաց-
մամբ: Չէ՞ որ տեխնիկան զարգանում է գիտության նվաճումների հիման վրա:
Բնության նոր, հիմնական օրինաչափությունների հայտնագործումը միշտ էլ
հանգեցրել է արտադրության տեխնիկական վերազինման, մասնավորապես*

էներգիայի նոր տեսակների օգտագործման։ Այդ կապակցությամբ գիտության
և գիտական հայտնագործությունների դերն արտադրության զարգացման
մեջ անընդհատ աճում է, փոփոխվում է հենց գիտության վերաբերմունքը դե-
պի արտադրությունը, «գիտությունը ավելի ու ավելի է դառնում անմիջական
արտադրողական ուժ, իսկ արտադրությունը՝ ժամանակակից գիտության տեխ-
նոլոգիական կիրառում» (Ն. Ս. Խրուշչով. ՍՄԿՊ Ծրագրի մասին)։

Արտադրության վերածվելը մարդկային մտքի ժամանակակից նվաճում-
ների տեխնոլոգիական կիրառման, մտածողության և տեխնիկայի բարդ փոխ-
հարաբերության մի կողմն է։ Երբ ստեղծվեցին էլեկտրոնային հաշվող մեքե-
նաներ և այլ նման սարքեր, որոնք կատարում են մարդու մտավոր աշխատան-
քի որոշ մասը, բացահայտվեց մտածողության և տեխնիկայի միջև եղած փոխ-
հարաբերության նոր կողմը, հատկապես ծառացավ հենց իր՝ մտածողության
«տեխնոլոգիայի» հարցը։

Կիբեռնետիկայի ծագումը դրեց բազմաթիվ փիլիսոփայական, բնագիտա-
կան և տեխնիկական պրոբլեմներ։ Ընդ որում իսկական գիտական խնդիրների
հետ զուգընթաց, որոնք անհրաժեշտ է լուծել, սխոլաստիկ միտքը առաջ քա-
շեց նաև բազմաթիվ կեղծ պրոբլեմներ։ Օրինակ, շատերը լուրջ կերպով սկսե-
ցին քննարկել այն հարցը, թե հնարավո՞ր է արդյոք ստեղծել արհեստական
կենդանի էակներ, որոնք բազմանալու, պրոգրեսիվ էվոլյուցիայի ընդունակ լի-
նեն և ունենան բարձրաստիճան էմոցիաներ, կամք ու մտածողություն ընդհուպ
մինչև մտածողության ամենանուրբ այլատեսակությունները։ Գրականության
մեջ տարբեր հեղինակների կողմից առաջ են քաշվում «թեր» և «դեմ» փաս-
տարկներ, հաճախ վիճող կողմերը իրար մեղադրում են փիլիսոփայական ղան-
ցանքների մեջ։ Նման հնարավորությունը բացառողներին իդեալիստներ և սո-
լիպսիստներ են անվանում, իսկ ընդունողներին՝ վուլգար մատերիալիստներ
ու մեխանիստներ։ Եվ թվում է թե փրկություն չկա, պետք է կամ իդեալիստ
դառնալ, կամ վուլգար մատերիալիստ։ Եվ այդ իրադրությունն առաջանում է
ոչ ճիշտ, աբստրակտ հարցադրման հետևանքով, որը չի բխում ո՛չ տեխնիկայի
զարգացման պահանջներից, ո՛չ էլ մարդկային մտածողության զարգացման
պատմությունից։ Եվ այսպես, անբան միտքը, որը հակված է դեպի ռեֆլեք-
սիան, կարող է մարդու բանականությունը փակուղու առաջ կանգնեցնել, հարց-
նելով նրան՝ թե ինչո՞ւ այդ բանը չի կարող լինել այլ, ֆանտաստիկ պայման-
ներում։ Ընդ որում նրա համար կարևոր է ստեղծել ձևական, վերացական հնա-
րավորություն, որը ոչ մի փաստարկով չի կարելի հերքել, բայց այն ոչ մի ար-
ժեք չունի, ոչ մի բանի ու ոչ ոքի չի պարտավորեցնում։

Կիբեռնետիկայի զարգացման ընթացքում առաջադրվող գիտա-փիլիսոփա-
յական և գործնական բնույթի բարդ հարցերի լուծումը, որպես առաջնահերթ
խնդիր, առաջ է քաշում մտածողություն հասկացության բովանդակության
բացահայտումը՝ մարդու և տեխնիկայի հետ ունեցած նրա փոխհարաբերու-
թյան մեջ։

## ՄԱՐԴԸ ՈՐՊԵՍ ՄՏԱԾՈՂՈՒԹՅԱՆ ՍՈՒԲՅԵԿՏ

Մտածողության կատեգորիան մատերիայի կատեգորիայի հետ միասին
դիալեկտիկական մատերիալիզմի հիմնական հասկացությունների թվին է
պատկանում. Նրա ճիշտ ըմբռնումից է կախված ինչպես իր՝ փիլիսոփայության,



այնպես էլ բնական գիտությունների բազմաթիվ արմատական պրոբլեմների
լուծումը։ Խնդիրը ոչ թե գիտության զանազան ճյուղերից մտածողության վե-
րաբերյալ ամփոփված տվյալներ ստանալն է, այլ մտածողության այն փիլի-
սոփայական հասկացության մշակումը, որը բացահայտում է մտածողության
բնույթը մատերիայի հետ ունեցած հարաբերության ընթացքում։ Մտածողու-
թյան փիլիսոփայական հասկացությունը մի մեթոդ է մտածողության տարբեր
կողմերը հատուկ գիտությունների միջոցով ուսումնասիրելու համար։

Մտածողության բնույթը որոշելը դեռ չի նշանակում միայն պատասխա-
նել այն հարցին՝ նյութական է այն, թե՞ իդեալական։ Մտածողությունը բազ-
մակողմանի պրոցես է, նրա բնորոշումը որպես իդեալական կերպարի, բա-
ցահայտում է միայն մի կողմը՝ մտածողության արդյունքի հարաբերությունն
այն առարկային, որն արտացոլված է նրանում։ Երբ մենք մտածողությունը
վերլուծում ենք իմացաբանական տեսանկյունից, ապա ոչ մի մարքսիստի մոտ
կասկած չի մնում, որ իմացական պատկերը, որ տալիս է մեզ մտածողությու-
նը, հարաբերում է նրանում արտացոլված առարկային այնպես, ինչպես իդեա-
լականը՝ նյութականին։ Նյութականն ու իդեալականը կազմում են հակա-
դրությունների նույնություն։ Նրանց հակադրությունը իմացաբանության սահ-
մաններում բացարձակ է, որովհետև առարկայի պատկերը, որպես իդեալա-
կան բան, երբեք չի կարող ունենալ նրանում արտացոլված առարկայի հատ-
կությունները, նա կարող է միայն առավել կամ պակաս ճշտությամբ և ամ-
բողջությամբ արտացոլել այդ հատկությունները։ Սակայն «...ճնկայական
սխալ կլիներ այդ սահմաններից դուրս գործողություն կատարելը մատերիայի
և ոգու, ֆիզիկականի և հոգեկանի հակադրության նկատմամբ, որպես բացար-
ձակ հակադրության» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 14, էջ 326)։ Բնական գիտություն-
ների, մասնավորապես բարձր նյարդային գործունեության ֆիզիոլոգիայի և
կիբեռնետիկայի զարգացումը ցույց է տալիս իմացաբանության սահմաններից
դուրս ֆիզիկականի և հոգեկանի հակադրման հարաբերականությունը, զար-
գացման պրոցեսում ֆիզիկականի անցումը հոգեկանի, նրանց նյութական
միասնությունը։

Մտածողության էության փիլիսոփայական ըմբռնման համար վիթխարի
նշանակություն է ստանում մտածող սուբյեկտի էության սահմանումը։ Մտա-
ծողությունը ծագում է սուբյեկտի և օբյեկտի փոխազդեցության հետևանքով։

Սխալ է, երբ սուբյեկտը նույնացնում են իդեալականի հետ, իսկ սուբյեկ-
տի և օբյեկտի փոխազդեցությունը իդեալականի և նյութականի փոխհարաբե-
րության հետ։ Իդեալիզմը սուբյեկտը հանգեցնում է մտածողության «ես»-ին։
Մարքսիզմին նախորդող մատերիալիզմը, մասնավորապես Ֆոյերբախյանը,
իրավացիորեն գտնում էր, որ մտածողությունը ոչ թե սուբյեկտ է, այլ պրե-
դիկատ՝ սուբյեկտի հատկություն։ Վերջնականը նյութական էակն է, մարդը՝
որպես բնության մասնիկ։ Բայց մատերիալիզմն այդ ձևը չէր հասկանում մար-
դու՝ որպես մտածողության սուբյեկտի առանձնահատկությունները, նրա հա-
սարակական բնույթը։

Դիալեկտիկական մատերիալիզմը սուբյեկտ ասելով հասկանում է մար-
դուն ոչ միայն նրա մարմնով, արյունով, ուղեղով, այլև արտադրության բոլոր
գործիքներով, սարքերով, ուրիշ մարդկանց հետ ունեցած հասարակական հա-
րաբերություններով։ Ուստի, որպես իմացության և պրակտիկ գործունեության
իսկական օբյեկտ, մարդը հանդես է գալիս ոչ թե իբրև անհատ, այլ իր հասա-

րակական զարգացման այս կամ այն աստիճանի վրա գտնվող մարդկություն։
Իհարկե, մարդկությունն իբրև համընդհանրություն գոյություն ունի միայն
առանձինի (առանձին մարդկանց) միջոցով, բայց և առանձինը (յուրաքան-
չյուր մարդ) իր մեջ պարունակում է համընդհանուրը, որը ռեալ կերպով գո-
յություն ունի առանձինի մեջ։ Մտածողությունը հատուկ է սուբյեկտին իբրև
հասարակական էակի։

Բնական առումով մտածողությունը հանդես է գալիս իբրև բարձրակազմ
մատերիայի՝ ուղեղի հատկություն։ Հոգեկան և ֆիզիոլոգիական կատեգորիա-
ները արտացոլում են մտածողության հարաբերությունը ուղեղի հետ, հոգե-
կանը ֆիզիոլոգիականի հատկությունն է (մտածողությունը՝ ուղեղի ֆունկ-
ցիան է)։ Ինչպես հայտնի է, հատկությունը դա առարկայի որակի դրսևորումն
է այլ առարկաների հետ ունեցած հարաբերության մեջ՝ նրանց փոխազդեցու-
թյան պրոցեսում։ Ուղեղը արտաքին աշխարհի առարկաների փոխազդեցության
ընթացքում դրսևորում է իր հատկությունները, որոնցից մեկը մտածողությունն
է, որը որակապես տարբերվում է նրա մյուս բոլոր հատկություններից։

Մտածողությունն իբրև ուղեղի հատկություն, նրա բոլոր հատկություննե-
րի նման գոյություն ունի ռեալ կերպով, միտքն իրեն ծնող ուղեղի նկատմամբ
չի հանդիսանում նրա որևէ հատկության պատկերը, այլ նրա սոսկ հատկու-
թյունն է։ Դիալեկտիկական մատերիալիզմի մոնիզմն այն է, որ ընդունում է
միայն շարժվող մատերիայի և նրա բազմապիսի հատկությունների ռեալ գո-
յությունը։ Մտածողությունը հատկություն է, որը հատուկ է մատերիայի շարժ-
ման ձևերից մեկին։ Այդ հատկության սպեցիֆիկ առանձնահատկությունն ու-
ղեղի՝ արտաքին աշխարհի առարկաների հետ եղած փոխազդեցության ընթաց-
քում այդ առարկաներն արտացոլելու ընդունակության մեջ է, իդեալականը
նյութականի պատկերով ստեղծելու մեջ է։

Մտածողությունն իբրև մատերիայի հատկություն ընդհանուր շատ բան
ունի նրա մյուս հատկությունների հետ։ Սովորաբար ընդգծվում է մատերիայի
այդ հատկության որակական յուրահատկությունն ի տարբերություն մյուս
հատկությունների, և դա ճիշտ է, սակայն չպետք է մոռանալ մատերիայի բո-
լոր հատկությունների ընդհանրության մասին, որի վրա հիմնվում է աշխարհի
նյութական միասնության սկզբունքը։

Մտածողությունը, ինչպես և ամեն մի այլ հատկություն, ծագում է նյու-
թական փոխազդեցության հետևանքով, որից դուրս մատերիայի ոչ մի հատ-
կություն ու վիճակ գոյություն չունի։ Ֆ. Էնգելսը գրել է. «ՓՈԽՆԵՐԳՈՐԾՈՒ-
ԹՅՈՒՆ — ահա այն առաջին բանը, որ մեր առջև հանդես է գալիս, երբ մենք
շարժվող մատերիան՝ ամբողջությամբ վերցրած՝ քննության ենք առնում այժմ-
յան բնագիտության տեսակետից... Այսպես է բնագիտության միջոցով հաս-
տատվում այն, ինչ ասում է Հեգելը (որտե՞ղ), թե փոխներգործությունը իրերի
իսկական causa finalis-ն (վերջնական պատճառն) է» (Ֆ. Էնգելս, Բնության
դիալեկտիկա, Հայպետհրատ, էջ 237, 1957)։ Փոխազդեցության մեջ մտնող
(սուբյեկտի և օբյեկտի) սիստեմի որակական յուրահատկությամբ է որոշվում
մտածողության՝ իբրև մատերիայի հատկության սպեցիֆիկան, բայց այդ փոխ-
ազդեցությունը շատ էական ընդհանուր բաներ ունի նյութական ամեն մի փոխ-
ազդեցության հետ։ Այդ ընդհանուրը Վ. Ի. Լենինն առանձնացրել է և բնորոշել
որպես արտացոլման ընդունակություն, որն ընկած է «մատերիայի բուն շենքի
հիմքում»։



Մտածողության ընդհանրությունն արտացոլման ընդունակության հետ,
որը հանդիսանում է մատերիայի բոլոր տեսակների և ձևերի հատկությունը,
օբյեկտիվ հիմք է ծառայում մտածողության պրոցեսի մոդելացման համար։
Ոչ մի կասկած չի կարող լինել ուղեղի ֆիզիկական մոդելների կառուցման
հնարավորության և նպատակահարմարության մասին։ Էլեկտրոնային ուղեղի
գործունեության ուսումնասիրությունն ունի ոչ միայն բնագիտական և տեխնի-
կական, այլև փիլիսոփայական նշանակություն։ Դա անհրաժեշտ փաստական
նյութ է տալիս հաստատելու Վ. Ի. Լենինի այն միտքը, թե մատերիայի բուն
շենքի հիմքում ընկած արտացոլման ընդունակությունը նման է զգայությանը,
որը պարզ արտահայտված ձևով կապված է բարձրակազմ, օրգանական մատե-
րիայի գործունեության հետ։ Առաջ քաշելով այդ դրույթը, Վ. Ի. Լենինը գրում
է. «...իսկ դեռևս պետք է հետազոտել ու հետազոտել, թե ի՞նչ կերպ է կապ-
վում իբր թե բոլորովին չզգացող մատերիան՝ միևնույն ատոմներից (կամ էլեկ-
տրոններից) բաղկացած և միևնույն ժամանակ զգալու պարզ արտահայտված
ունակություն ունեցող մատերիայի հետ։ Մատերիալիզմը պարզ է դնում դեռևս
չլուծված հարցը և դրանով մղում է դեպի նրա լուծումը, մղում է դեպի հե-
տագա էքսպերիմենտալ հետազոտություններ» (Երկեր, հ. 14, էջ 45)։

Կիբեռնետիկան բարձր նյարդային գործունեության մոդելավորման միջո-
ցով որոշակի առաջընթաց քայլ է կատարում մատերիալիզմի կողմից դրված
պրոբլեմի լուծման ուղղությամբ, նա ազգակցություն է սահմանում ամբողջ
մատերիային հատուկ արտացոլման և զգայության, նույնիսկ մտածողության
միջև։ Կիբեռնետիկական հետազոտությունների արդյունքները ցույց են տա-
լիս, որ մեքենան վերարտադրում է պայմանական ռեֆլեքսների նման մի բան,
ուստի անօրգանական մատերիայի արտացոլման ընդունակությունը, որը տրա-
մաբանական ենթադրություն էր Վ. Ի. Լենինի մոտ, էքսպերիմենտալ հետազո-
տության ենթակա գիտական փաստ է դառնում։ Գիտությունը դեռևս արել է
միայն առաջին քայլերը, բայց արդեն հիմա տեսնում ենք այն վիթխարի հե-
ռանկարները, որ նրան սպասում են այդ ճանապարհին։

Որոշ ֆիզիոլոգներ հանդես են գալիս մարդկային և «էլեկտրոնային ուղե-
ղի» պայմանական-ռեֆլեկտորային գործառնության միջև միասնություն սահ-
մանելու դեմ, դրանում մեխանիցիզմ տեսնելով։ Սակայն այն մտածողը, որը
բաժանում է Վ. Ի. Լենինի դրույթները մատերիայի ամեն մի ձևի մեջ եղած ար-
տացոլման ընդունակության մասին, պետք է գիտության այդ փաստն ընդունի
որպես դիալեկտիկական մատերիալիզմի տրիումֆ։ Մատերիալիստական դիր-
քեր գրավող ֆիզիոլոգիայի համար մտածողության և մատերիայի մյուս հատ-
կությունների միջև եղած ազգակցությունը պետք է հանդես գա իբրև ինքն-
ըստինքյան հասկանալի բան, որը բխում է մատերիալիստական դիալեկտիկա-
յի երկու հիմնական սկզբունքներից (աշխարհի նյութական միասնությունից և
զարգացումից)։ Մտածողությունն ամբողջ մատերիային հատուկ արտացոլման
ընդունակության զարգացման բարձր աստիճանն է։

Սակայն մտածողության և մատերիայի մյուս հատկությունների միջև ե-
ղած ազգակցության, նմանության ընդգծումը գործի մի կողմն է, որի բացար-
ձակացումը իսկապես կարող է հանգեցնել մեխանիցիզմին, իսկ նրա միջոցով էլ
իդեալիզմին։ Պակաս կարևոր չէ մյուս կողմը՝ մտածողության իբրև մատերիա-
յի հատկության որակական յուրահատկությունը, որի մասին ոչ մի դեպքում
չպետք է մոռանալ, երբ խոսքը մարդկային և էլեկտրոնային ուղեղի համե-

մատության մասին է։ Ուղեղի ֆիզիկական մոդել ստեղծելու միջոցով մտածողությունը կարելի է ուսումնասիրել այն չափով և այն աստիճանի, ինչ չափով որ նա նման է մատերիայի մյուս հատկություններին։

Մտածողության իսկական պրոցեսի և նրա ֆիզիկական մոդելի միջև գոյություն ունի այնպիսի հեռավորություն, ինչպիսին կա մատերիայի շարժման հասարակական և ֆիզիկական ձևերի միջև։ Որպեսզի մտածի, մատերիան պետք է ապրի ոչ միայն բիոլոգիապես, այլև սոցիալապես։ Ոչ մի նյութ, որն ունի թեկուզ ամենաբարդ բիոլոգիական կառուցվածք, չի կարող լինել պրակտիկ գործունեության և մտածողության սուբյեկտ։ Մտածողությունը ծագում է միայն այն ժամանակ, երբ բիոլոգիական էակը դառնում է սոցիալական էակ, նոր տեսակի հարաբերության մեջ է մտնում բնության հետ (վերափոխում է այն) և իր նման այլ էակների հետ։

Հետևաբար ուղեղի ֆիզիկական մոդելների ստեղծման միջոցով մտածողության պրոցեսն ուսումնասիրելը խիստ արժեքավոր է, բայց միայն մի տեսակետից՝ սահմանել այն ընդհանուրը, ինչ մտածողությունն ունի արտացոլման ընդունակության հետ, որն ընկած է մատերիայի բուն շենքի հիմքում։ Բայց այդ ուսումնասիրությունը կանգ է առնում այնտեղ, որտեղ ըստ էության, սկսվում է միտքը՝ որպես սուբյեկտի և օբյեկտի փոխազդեցության արդյունք։ Սուբյեկտի և օբյեկտի փոխազդեցության դիալեկտիկան մտածողության առանձնահատկությունների, որակական յուրահատկությունների ըմբռնման հիմքն է։ Ինչո՞ւ մարդկությունը հասարակական զարգացման մի աստիճանի վրա այս կերպ էր մտածում, այդ աստիճանի վրա ճշգրիտ և լրիվ էր արտացոլում իրականությունը, իսկ այլ աստիճանի վրա նա ուրիշ բովանդակություն ուներ։ Այս հարցի պատասխանը չի կարելի ստանալ մարդկային ուղեղի կառուցվածքի վերլուծության միջոցով, ուղեղի նեյրոնների քանակի և որակի փոփոխությունների հայտաբերման միջոցով, այն գտնվում է միանգամայն այլ տեղ, քանի որ մտածողությունը մարդու հոգեկան գործունեության սպեցիֆիկ ձևն է, որի հետևանքով էլ գոյանում են հասկացությունները, թեորիաները, գաղափարները։

Կարլ Մարքսը մտածողությունն անվանում էր հոգևոր արտադրություն, որը «սկզբնապես անմիջապես միահյուսված է մարդկային նյութական գործունեության և նյութական փոխհարաբերության մեջ» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Երկեր, հ. 3, էջ 24)։ Մտածողության՝ իբրև հոգևոր գործունեության պրոցեսի խնդիրն է՝ հասնել նոր արդյունքների, ստեղծել այնպիսի իմացական պատկեր, որը խոր և բազմակողմանի է արտացոլում առարկան։ Պրակտիկայի և իմացության պրոցեսում սուբյեկտի և օբյեկտի փոխհարաբերության դիալեկտիկայի իմացումը՝ մտածողության էության, նրան դեպի օբյեկտիվ ճշմարտությունը տանող շարժման օրինաչափությունների ըմբռնման բանալին է։ Մտածողությունը ոչ թե անջատում է սուբյեկտը օբյեկտից (մարդուն բնությունից), այլ, ստեղծելով օբյեկտիվ աշխարհի սուբյեկտիվ պատկեր, միացնում է նրանց։

Մտածողության սուբյեկտիվությունը նախ և առաջ այն է, որ մտածողությունը մշտապես պատկանում է մարդուն իբրև սուբյեկտի։ Չկա օբյեկտիվ մտածողություն, որը կապված չլինի սուբյեկտի, մարդու գործունեության հետ։ Օբյեկտիվ մտածողությունը, որը գոյություն է ունեցել մինչև մարդը և անկախ նրանից՝ ֆիկցիա է, որ հորինել է օբյեկտիվ իդեալիզմը։ Իդեալիստական փիլիսոփայության այդ սպեկուլյացիայի գաղտնիքն այն է, որ նա մտածողությու-



նը կտրում է նրա կրողից (սուբյեկտից) և օբյեկտիվ աղբյուրից (բնությունից), մտածողությունը դարձնելով ինչ-որ ուրույն, բացարձակ բան։

Այնուհետև, մտածողության արդյունքը ոչ թե հենց առարկայի ստեղծումն է նրա բոլոր հատկություններով որպես այդպիսինի, այլ առարկայի իդեալական պատկերի ստեղծումն է։ Մտածողության մեջ մենք մշտապես գործ ունենք ոչ թե անմիջական առարկայի, այլ նրա պատկերի հետ։

Վերջապես, մտածողության մեջ օբյեկտը արտացոլվում է ամբողջության ադեկվատության, նրա էության մեջ ներթափանցելու խորության տարբեր աստիճաններով։ Մտածողությունը չի բացառում առարկայի արտացոլման միակողմանիությունը, մտքի կտրվածությունը իրականությունից, բուն իսկ առարկայի պատկերի աղճատումը։ Թե ինչ ձևով է գոյանում առարկան մտածողության մեջ, դա կախված է սուբյեկտից, մասնավորապես հասարակության մեջ գրաված նրա դիրքից։ Ինչպես նշում է Վ. Ի. Լենինը՝ «Տրամաբանության մեջ սուբյեկտի և օբյեկտի հարաբերությունը քննարկելիս պետք է նկատի առնել նաև կոնկրետ սուբյեկտի կեցության (=մարդու կյանքը) ընդհանուր նախադրյալները օբյեկտիվ իրադրության մեջ» (Երկեր, հ. 38, էջ 194)։

Հասարակական հարաբերությունների հասունության աստիճանը որոշում է տվյալ դարաշրջանի մտածողության բնույթը։ Հասարակական կյանքի, նրա հակասությունների վերլուծությունից անջատ հնարավոր չէ հասկանալ, թե ինչու օբյեկտիվ աշխարհը արտացոլվում է այս կերպ, այս ձևով և այս աստիճանի ամբողջությամբ ու խորությամբ։

## «ՄԵՔԵՆԱՅԱԿԱՆ» ՄՏԱԾՈՂՈՒԹՅՈՒՆԸ — ՄՏԱԾՈՂՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՄԻԱՍՆՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՁԵՎՆ Է

Կիբեռնետիկայի և տեխնիկայի զարգացման հետևանքով ծագեց նոր երևույթ, որը կոչվում է «մեքենայական» մտածողություն։ Փիլիսոփաները, սոցիոլոգները և բնագետներն այդ երևույթը տարբեր կերպ սկսեցին մեկնաբանել։ Իդեալիզմն ու մեխանիցիզմը «մեքենայական» մտածողության փաստի գոյությունը փորձեցին օգտագործել իրենց հիմնավորումների համար, աղավաղելով նրա էությունը, բացարձակացնելով նրա առանձին մոմենտները։ Մարքսիստական փիլիսոփայությունը չի կարող անցնել այդ երևույթի կողքով, նա պետք է նրան տա իր մեկնաբանությունը, հենվելով բնության, հասարակության և մարդկային մտածողության զարգացման իրական փաստերի և օրինաչափությունների վրա։

Այդ երևույթի էությունը ըմբռնելու համար անհրաժեշտ է վերլուծել դրա ծագումն ու զարգացումը, պարզել այն հասարակական, այդ թվում նաև տեխնիկական, պահանջները, որոնք ծնել են այն։

Իհարկե «մեքենայական մտածողություն», «մտածող մեքենաներ» տերմիններն անհաջող են, կարող են շփոթություն մտցնել դատողության մեջ։ Դրանք գիտական շրջանառության մեջ մտցված են կիբեռնետիկայի զարգացման կապակցությամբ էլեկտրոնային հաշվող և նման այլ մեքենաների մեջ կատարվող գործողությունների նշանակությունը ցույց տալու համար։ Կիբեռնետիկայի տերմինոլոգիան դեռևս բավականաչափ հարուստ չէ, ուստի ստիպված է գործածել այն տերմինները, որոնց բառացի նշանակությունը չի համապատասխանում կիբեռնետիկական հասկացությունների բովանդակությանը։ Այն, ինչ

կատարում է մեքենան, իհարկե, մտածողություն չէ, և դա հասկանում են ար-
դեն շատերը, այդ թվում և արտասահմանյան մտածողները, որոնք մարքսիզ-
մից հեռու են կանգնած։
Այն հարցը, թե մտածո՞ւմ է արդյոք մեքենան, կարող է ծագել միայն այն
գլուխներում, որոնք կամ հակված են դեպի սպեկուլյացիան, կամ դեպի սենսա-
ցիաները թեորեայի ասպարեզում։ Իսկ իսկական գիտական պրոբլեմը միան-
գամայն այլ է՝ թե ինչպե՞ս է վերաբերվում «մեքենայական մտածողությունը»
իսկական մարդկային մտածողությանը, այն ի՞նչ տեղ է գրավում մարդու կող-
մից իրականության տեսական պրակտիկ յուրացման գործում, ի՞նչ նպատա-
կով և ինչի՞ հիման վրա է այն ծագում։
Սկզբից մենք արդեն պարզեցինք, որ մարդն է արտադրական գործունեու-
թյամբ զբաղվում, զգում ու մտածում, ստեղծագործելով գործիքներ, որոնք
հանդիսանում են պրակտիկ և տեսական գործունեության արդյունք։ Դիտողը
մարդու աչքն է, իսկ մտածողը՝ նրա ուղեղը։
Մտածողության միակ սուբյեկտը մարդն է, որը զինված է այն բոլոր մի-
ջոցներով, որ գտնվում են նրա տրամադրության տակ՝ նրա զարգացման տվյալ
մակարդակի վրա։ Սրա մեջ մտնում են, անկասկած, արտադրության նրա բո-
լոր գործիքները, մեքենաները, սարքերը, որոնց օգնությամբ մարդը ճանաչում
և վերափոխում է աշխարհը։ Էլեկտրոնային հաշվող մեքենաները տվյալ դեպ-
քում բացառություն չեն կազմում։ Արտադրության ամեն մի գործիք շարունա-
կում և ուժեղացնում է մարդու բնական օրգանները, որոնց հնարավորություն-
ները սահմանափակ են։ Էլեկտրոնային հաշվող մեքենաների սպեցիֆիկ ա-
ռանձնահատկությունն այն է, որ նրանք շարունակում և ուժեղացնում են մար-
դու ուղեղը, հանդիսանում են նրա ոչ թե ֆիզիկական, այլ մտավոր աշխատան-
քի գործիքները։ Հողը փորում է, դիտում է մարդը և ոչ թե էքսկավատորն ու
տելեսկոպը, մտածում է նույնպես միայն մարդը և ոչ թե էլեկտրոնային մե-
քենան։ Այնպես, ինչպես ժամանակակից ֆիզիկական աշխատանքի համար բը-
նորոշ է բարդ գործիքների, մեքենաների լայն օգտագործումը, այնպես էլ մտա-
վոր աշխատանքը քաղաքակրթության, բարձր գիտության և տեխնիկայի զար-
գացման պայմաններում հագեցվում է այնպիսի գործիքներով, որոնք անմիջա-
կանորեն (միջնորդավորված կերպով բոլոր գործիքներն էլ նպաստում են դրան)
օգնում են մարդուն մտածելու, այդ գործիքներին են հանձնվում որոշ ֆունկ-
ցիաներ, որոնք նախկինում մտածողության պրոցեսում մարդը կատարում էր
առանց դրանց։
Մեքենան օգնում է մարդուն և փոխարինում է նրա մտավոր աշխատան-
քին՝ մտահանգումների տրամաբանական պրոցեսում։ Ինչո՞ւ այդ պրոցեսը
կարելի է որոշ մասով մեքենայացնել։ Դա հիմնված է այն բանի վրա, որ մտա-
ծողությունը մշտապես տեղի է ունենում «խոսքի, զգայական այլ նշանների»,
զգայական հիմքի վրա։ Իդեալական նշանակությունը կապված է նյութականի
հետ։ Ընդ որում մտածողության պրոցեսում մենք կարող ենք զգայական նշան-
ները գործադրել որոշ օրենքներով, որոշ մոմենտներում, ուշադրություն չը-
դարձնելով նրանց իմաստի վրա։ Մեքենան չի գործառնում առարկաների ի-
դեալական պատկերներով, նա միայն գործ ունի զանազան տեսակի զգայական
նշանների հետ և գործառնություն է կատարում միայն նրանց նյութական բո-
վանդակության հետ, մեքենայի գործողության հետևանքը հանդիսանում է ո-
րոշ բծերի, նշանների, զանգերի և այլնի սիստեմը։ Իսկ այդ նշանների արդ-



յունքները մտածողության պրոցեսում մեկնաբանում, նրանց որոշակի նշանա-
կությունների հետ կապում է մարդը մեքենայի օգտագործմամբ։ Օրինակ, գիր-
քը, որը մտքեր է պարունակում և նրանց հաղորդակից է դարձնում այլ մարդ-
կանց, առանց մարդու գիրք չէ։ Դա նյութական մի առարկա է, որի վրա պատ-
կերված են զգայականորեն ընկալելի նշաններ, նա մտքեր պարունակող գիրք
է դառնում միայն մարդկային հասարակության մեջ, որտեղ այդ նշանները որո-
շակի իդեալական նշանակություն են ստանում։ Ճիշտ նույն կերպ, այն ար-
դյունքները, որ տալիս է էլեկտրոնային հաշվող մեքենան, ինքնըստինքյան
մտածողության երևույթներ չեն, դրանք այդպիսին են դառնում միայն այնքա-
նով, որքանով որ մտնում են հասարակական հարաբերությունների մեջ, շըն-
չավորվում են մարդու կողմից։
Հաշվող մեքենան միջնավորված է մտածողությամբ և հասարակական
պրակտիկայով, որովհետև նա մարդկանց գիտության և տեխնիկայի առաջա-
դիմության արդյունքն է. մեքենայի մեջ նյութականացվում են մարդկային մը-
տածողության արդյունքները։ Որքան կատարյալ է ինքը միտքը, այնքան ավե-
լի բարդ է մեքենան։ Երբ կառաջանան նոր գիտական թեորիաներ, կստեղծվեն
և նոր մեքենաներ, որոնք կկատարեն նոր ֆունկցիաներ, կդառնան մարդու
կողմից բնության և իր մտածողության պրոցեսի գաղտնարանները ներթա-
փանցելու ավելի նուրբ միջոցներ։ Սահմանափակել մեքենայական տեխնի-
կայի զարգացման առաջադիմությունը, որը վերարտադրում է մտածողության
պրոցեսի ինչ-որ մասը, կնշանակի սահման, վերջ դնել մարդու հասարակական
պրակտիկայի և նրա մտածողության զարգացմանը։



Ցավոք սրտի, «մեքենայական» մտածողության զարգացմանը սահման-
ներ դնելու նմանօրինակ փորձերի մենք դեռևս հանդիպում ենք ոչ միայն ար-
տասահմանյան, այլև մեր սովետական մամուլում։ Ընդ որում, այն հեղինակ-
ները, որոնք փորձում են այդպիսի սահմաններ գտնել, ելնում են մարդու և
նրա բանականության ուժը և հզորությունը ցույց տալու ցանկությունից, բայց
ըստ էության, նրանք նվաստացնում են մարդուն, նրա մտածողության և տեխ-
նիկայի զարգացման հնարավորությունները։ Չէ որ «մեքենայական» մտածո-
ղությունը ոչ թե ինչ-որ բան է, որը գտնվում է մարդուց դուրս, այլ մարդու,
նրա մտածողության ու տեխնիկայի զարգացման արդյունք է, նրանց միաս-
նության, սինթեզի նոր ձև, որը ինչպես մտածողության, այնպես էլ արտադրու-
թյան տեխնիկայի հետագա զարգացման գործիք է։ Չի կարելի «մեքենայա-
կան» մտածողությունը կտրել իրենից՝ մարդուց նրա մտքով ու տեխնիկայով
հանդերձ։

Երբ մարդու պրակտիկ գործունեության և մտածողության արդյունք հան-
դիսացող հաշվող մեքենան անջատվում է նրա անմիջական սուբյեկտից և
հակադրվում նրան՝ իբրև արտաքին, ինքնուրույն, օտար ուժ, առաջանում է
այն պատկերացումը, թե իբր մեքենան ինքն է գործում ու մտածում։ Մարդ-
կային աշխատանքի արդյունք հանդիսացող «մտածող մեքենայի» օտարումը
իրենից՝ մարդուց և այն ինքնուրույն սուբյեկտի վերածումը հանդիսանում է
մարդու մտածողությունն ավելի կատարյալ՝ «մեքենայական մտածողությամբ»
փոխարինելու, մարդու վրա մեքենայի կողմից իշխելու, առանց մարդու «մե-
քենայական հասարակության» և այլնի մասին ամեն տեսակի սպեկուլյացիա-
ների աղբյուր։ Բոլոր նմանօրինակ սպեկուլյացիաների սոցիալական աղբյուրն

այն է, որ դասակարգային հասարակարգում մարդն անջատվում է աշխատանքի առարկայից, նրա արդյունքներից և հենց արտադրության ակտից։

«Մեքենայական» մտածողության, նրա հնարավորությունների ու զարգացման հեռանկարների մասին եղած բազմաթիվ սխալ դատողությունները խարսխվում են մեքենան մարդուց և նրա մտածողությունից կտրելու ու նրանց հակադրելու մեթոդոլոգիական ոչ ճիշտ սկզբունքների վրա։ Նման մետաֆիզիկական հակադրությունը առաջանում է բուրժուական հասարակարգում այն բանի հետևանքով, որ բուրժուազիայի ձեռքում մեքենայական տեխնիկան օգտագործվում է մարդուն շահագործելու նպատակով, այն հանդես է գալիս որպես այդ հասարակարգին խորթ, թշնամի ուժ։ Մարդու և մեքենայի միջև իսկական հարաբերությունը, որը աղավաղված չէ բուրժուական արտադրահարաբերություններով, այն է, որ առանց մարդու չկա մեքենա, իսկ առանց մեքենայի ավելի ու ավելի լայն թափանցմանը մարդկային գործունեության բոլոր ոլորտները անհնարին է մարդկային հասարակության առաջադիմությունը։ Հաճախ հանդիպում ենք այսպիսի հարցի. կարո՞ղ է արդյոք մեքենան գերազանցել մարդուն նրա մտավոր գործունեության մեջ, կամ կարո՞ղ է արդյոք մեքենան իր ստեղծողից ավելի «խելացի» լինել։ Արդեն նման հարցադրման մեջ կա մարդուն և մեքենային իրար հակադրելու մետաֆիզիկական դրվածք։ Իրականում պետք է հարցը դնել այսպես. գերազանցո՞ւմ է արդյոք մեքենայով մարդը, դրանով չզինված մարդուն։ Եվ այստեղ մեր մեջ կասկած չի մնում, որ մեքենան ուժեղացնում է մարդուն նրա գործունեության բոլոր ոլորտներում, այդ թվում նաև մտավոր բնագավառում. ժամանակակից էլեկտրոնային հաշվող մեքենաներով զինված մարդը մտածում է ավելի արագ, ավելի ճշգրիտ և արդյունավետ, քան առանց այդ մեքենաների։ Այդ մեքենաները նրան հնարավորություն են տալիս մտածողության ասպարեզում այնպիսի արդյունքների հասնել, որոնց նա չէր կարող հանգել առանց դրանց։ Եթե մեքենան մարդուն չդարձներ ավելի ուժեղ և «խելացի», ապա այն նրան պետք չէր լինի։

Երբեմն մարդու հոգեկան գործունեության մեջ մեքենայի գործադրության սահմանը համարում են ստեղծագործությունը։ Իբր թե մեքենան կարող է ամեն ինչ անել, սակայն նա անընդունակ է ստեղծագործության։ Այս տեսակետը պաշտպանող հեղինակները դատում են մոտավորապես այսպես։ Մարդու մտածողության մեջ կարելի է առանձնացնել երկու ֆունկցիա՝ տրամաբանական (նրան երբեմն էլ անվանում են արտադրական) և ստեղծագործական։ Մտածողության տրամաբանական կամ արտադրական ֆունկցիան կարող է լրիվ կերպով փոխարինվել ավտոմատիկ կառուցվածքներով, իսկ ստեղծագործականը կամ ամենևին չի փոխարինված կամ թե փոխարինված է միայն մասամբ։ Բուրժուական մտածողների մոտ այդ ֆունկցիան կապվում է՝ ստեղծագործությունը իբրև սպոնտան պրոցես պատկերացնելու հետ, որը ոչ մի կայուն օրինաչափությամբ չի պայմանավորված (այստեղ ստեղծագործական ինտուիցիայի թագավորություն է)։

Իրականում մտածողության բաժանումը ստեղծագործական և տրամաբանական մասերի շատ պայմանական բան է, ստեղծագործությունը չի կարող լինել առանց տրամաբանության, իսկ տրամաբանությունն առանց ստեղծագործության։ Ցավոք սրտի ստեղծագործական պրոցեսը նվազ խորությամբ և մանրամասնությամբ է ուսումնասիրված, քան մտածողության ֆորմալ տրա-



մաբանության մեխանիզմը։ Գիտությունը դնում է մտածողի ստեղծագործական պրոցեսի ուսումնասիրության խնդիրը։ Մեզ մոտ կասկած չի կարող լինել, որ ստեղծագործական պրոցեսի որոշ օրինաչափությունների բացահայտումից հետո կարելի կլինի կառուցել մեքենաներ, որոնք մարդուն կօգնեն այդ գործունեության մեջ։ Ավելին, ժամանակակից էլեկտրոնային հաշվող մեքենաները արդեն հիմա շատ բաներում նպաստում են մարդու ստեղծագործական մտածողության զարգացմանը, իսկ մոտ ապագայում նրանք այդ բանը կանեն ավելի լավ և մեծ չափերով։

Չի կարելի հարցը դնել այսպես. կարո՞ղ են արդյոք մեքենաները ստեղծագործել առանց մարդու։ Առանց մարդու նրանք ոչ մի դեպքում չեն մտածում՝ ոչ ստեղծագործական, ոչ էլ տրամաբանական իմաստով։ Մեքենայի մեջ տեղի չի ունենում մեկ դատողությունը մյուսից բխեցնելու իրական տրամաբանական պրոցես, քանի որ այդ պրոցեսը կապված է ելակետային դրույթի իմաստի ըմբռնման և մտահանգումների վերջնական արդյունքների հետ։ Մեքենան պատճենավորում է նրա այն մասը, որը կապված է մտքերը իբրև զգայական նշաններ գործառնելու որոշակի օրենքներով, որոնց նյութական անալոգը կարելի է գտնել մեքենայի մեջ։

Ներկայումս ամեն տեսակի փորձերը՝ ապրիորի որոշելու թե մարդկային գործունեության որ բնագավառներում կարելի է օգտագործել մեքենաները, դրական ոչ մի արդյունքի չեն կարող հանգեցնել, չեն նպաստի մարդու մտածողության և նրա տեխնիկայի զարգացմանը։

«Մեքենայական» մտածողությունը, իբրև մարդու մտքի ու տեխնիկայի նոր սինթեզ, զարգացման անսահման հնարավորություններ ունի, բայց ոչ իբրև ինչ-որ ինքնուրույն մտածողություն, որը կտրված է մարդուց, այլ որպես բնության և հենց իր մտածողության, այդ թվում նաև նրա ստեղծագործական կողմերի գաղտնարանները ներթափանցելու հզոր գործիք։

## ՄՏԱԾՈՂՈՒԹՅԱՆ ԲԱԶՄԱԿՈՂՄԱՆԻ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆԸ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ԽՆԴԻՐ Է

Ժամանակակից գիտական մտածողությունը ունի մի շարք առանձնահատկություններ, որոնք նրան տարբերում են նախորդ դարաշրջանների մտածողությունից։ Այդ տարբերությունը նախ և առաջ նրա բովանդակության մեջ է։ Ավելի հասուն և զարգացած պրակտիկան ծնում է ավելի կայտառ մտածողություն, որն ընդունակ է ճիշտ, ադեկվատ և խոր կերպով արտացոլել արտաքին աշխարհի երևույթները։ Պրակտիկան մտածողության ոլորտն է քաշում նոր առարկաներ, կողմեր, օրինաչափություններ, որոնք առաջներում մարդկային իմացության օբյեկտ չէին։

Մտածողության բովանդակության մեջ պարունակված այդ փոփոխությունը հանգեցրեց նրանում եղած բազմաթիվ այլ, այդ թվում և ֆորմալ, կառուցվածքային վերափոխությունների։ Ժամանակակից մտածողությունը ավելի ու ավելի է հեռանում զգայական կոնկրետությունից, ավելի քիչ էմպիրիկ է դառնում, զուտ տեսական ձև է ընդունում, դառնում է հանրագումար բազմաթիվ այնպիսի աբստրակցիաների, որոնք հասնում են առարկայի զգայապես ընկալվող հատկություններից հեռու, բարձր աստիճանի հասնող վերացականության։ Եթե XVIII և XIX դարերի գիտական միտքը գերազանցապես էմպիրիկ

էր, ապա ներկայումս նա իսկական տեսական բնույթ է ստանում։ Սա— իհարկե, չի նշանակում, թե նա կորցնում է իր կապը փորձից և նրանից անկախ է դառնում։ Ընդհակառակը, ավելի սերտ է դառնում կապը փորձի հետ, բայց փոխվում է այդ կապի բնույթը։ Նախ, ինքը փորձը հիմա էականապես տարբերվում է այն փորձից, երբ գիտությունը նոր էր ծագում, նա ավելի ու ավելի է միջնորդավորվում նախորդ տեսական կառուցումներով, հանդիսանում է դրանց ամրապնդումը, նոր թեորիաների առաջքաշման տրամպլինը։ Երկրորդ, ոչ միայն փորձն է նոր գիտելիքի աղբյուրը, այլև մտածողությունը, որն իր զարգացման ներքին տրամաբանությամբ հանգում է այնպիսի արդյունքների, որոնք ոչ միայն նախկինում չկային փորձի մեջ, այլև սկզբունքորեն անմատչելի էին նրանում անմիջականորեն վերարտադրվելու համար։ Մտածողությունը փորձից առաջ է անցնում, որոշելով նրա զարգացման ուղիները։ Փորձի և մտածողության փոխազդեցությունը հասել է այն աստիճանին, որ աճել են մտածողության ակտիվությունը, հարաբերական ինքնուրույնությունը, մտածողությունը ավելի մեծ չափերով է ղեկավարում փորձին և գերազանցապես նրանից առաջ է անցնում։

Ժամանակակից մտածողության աճի ցուցանիշը նաև այն է, որ նա ավելի մեծ չափերով է զբաղվում ինքն իր, իր արդյունքների գիտակցումով։ Թեորիաների մասին թեորիաներ, գիտությունների մասին գիտություններ ստեղծելը մտածողության բարձր հասունության, իրականության ըմբռնման նրա վիթխարի հաջողությունների ցուցանիշն է։ Որքան շատ ստեղծվեն գիտական թեորիաներ հենց իրենց թեորիաների մասին, այնքան ավելի կատարյալ կլինի մեր մտածողությունը արտաքին նյութական աշխարհի իմացության գործում։ Ինքնագիտակցումը ինքնանպատակ չէ, այլ բնության և հասարակության օբյեկտիվ օրինաչափությունների հասու մտածողության զարգացման և կատարելագործման միջոց։

Վերջապես, ժամանակակից մտածողության առանձնահատկությունը նրա մեծ մոբիլությունն է, շարժունությունը, թեորիաների, հիպոթեզների արագափոխությունն է։ Գիտական թեորիան դեռ չծնված, արդեն մահանում, բացասվում, փոխարինվում է աբստրակցիայի նոր, ավելի կատարյալ սիստեմով։ Թեորիաների այս հոսունությունը վկայում է ոչ թե դրանց անկատարելությունը, այլ ժամանակակից գիտական մտածողության հասունությունը, որը չի բավարարվում ձեռք բերած արդյունքներով և արագորեն առաջ է շարժվում։

Մտածողության զարգացումն ընթանում է իրար հետ կապված երկու ուղիներով։ Նախ, իմացության արդյունքների, փորձնական տվյալների հիման վրա կատարվում է նոր հասկացությունների, թեորիաների կազմավորման պրոցեսը։ Դա գիտական մտածողության զարգացման գլխավոր գիծն է, որի նպատակն է բացահայտել օբյեկտիվ աշխարհի նոր օրինաչափությունները։ Երկրորդ, մտածողությունը ձգտում է ավելի խոր կերպով ճանաչել իր սեփական շարժման օրենքները, օգտագործելով այդ իր առաջընթացի համար։

Մտածողության ինքնագիտակցման ուղիներից մեկն արդեն ձեռք բերած գիտելիքների ֆորմալավորման եղանակների ու միջոցների ուսումնասիրությունն է, տրամաբանական ֆորմալիզմների կիրառումը գիտության տարբեր բնագավառներում, մտածողության առջև ծառացող խնդիրները ֆորմալիզմների միջոցներով լուծելու հնարավորությունների հետազոտությունը, ալգո-



րիթմների ստեղծումը, որոնք հնարավոր կլինի իրականացնել մեքենայի օգնությամբ։

Գիտական մտածողության զարգացման այս երկրորդ գիծը հանդես է գալիս հարաբերաբար ինքնուրույն ձևով, սակայն վերջին հաշվով, ենթակա է առաջինին և կախված է նրանից։ Այսպես, գիտական գիտելիքների ֆորմալավորումը հնարավորություն է տալիս ֆորմալ եղանակով լուծել առանձին խնդիրներ, մտածողության պրոցեսում կատարվող մի շարք ֆունկցիաներ հանձնելով մեքենային։ Դա արագացնում է մտածողության զարգացման պրոցեսը։ Մյուս կողմից գիտության մեջ նոր հասկացությունների, թեորիաների առաջացումը հնարավորություն է ստեղծում առաջ շարժվել նախորդ գիտելիքների ֆորմալացման ուղղությամբ։

Մտածողության զարգացումը, «մեքենայական» մտածողության ծագումը մտածողության մասին եղած գիտության առջև շատ խնդիրներ է դնում, մտածողության, նրա զարգացման օրինաչափությունների և գործողությունների ուսումնասիրությունը դարձնում է ոչ միայն փիլիսոփայական և գիտա-տեխնիկական, այլև ժողովրդատնտեսական կարևոր խնդիր։ Իսկապես, մտածողության պրոցեսի վերլուծության մեր հաջողությունները անմիջական ազդեցություն կունենան կյանքի շատ կողմերի վրա։ Նախ և առաջ մտածողության և նրա զարգացման հետ են կապված տեխնիկական առաջադիմությունը, արտադրության կոմպլեքսային ավտոմատացումն ու մեքենայացումը։

Մտածողության ուսումնասիրության հետագա խորացման անհրաժեշտությունը բխում է նաև սովետական կուլտուրայի, հատկապես կրթության զարգացման պահանջներից։ Ի՞նչ կերպ ավելի էֆեկտավոր և կարճ ժամանակում մարդու կուտակած փորձը փոխանցել երիտասարդ սերնդին։ Այդ հարցին պատասխանելու համար անհրաժեշտ է խորապես ուսումնասիրել հենց մտածողության պրոցեսը, որոշել նրա սիստեմավորման ուղիները, գտնել այնպիսի ձևեր, որոնք ավելի շատ ինֆորմացիաներ կբերեն, ավելի շատ տարողություն և խտություն կունենան։ Վերջապես, մտածողության ուսումնասիրությունը անհրաժեշտ է հենց իր՝ գիտության, նրա տարբեր բնագավառների առաջադիմության համար։ Վիճակագրությունը ցույց է տալիս, որ բոլոր երկրներում, հասարակության զարգացման մեջ գիտության դերի մեծացման հետ կապված, արագորեն աճում է գիտական աշխատողների թիվը։ Եթե պահպանվեին գոյություն ունեցող աճի տեմպերը, ապա դարավերջում երկրագնդի բոլոր մարդիկ կդառնային գիտական աշխատողներ։ Դա, իհարկե, հնարավոր չէ։ Ո՞րն է ելքը։ Ըստ երևույթին, անհրաժեշտ է գիտական աշխատողին ավելի լայնորեն զինել «խելացի» սարքերով ու մեքենաներով, մարդու աշխատանքի ֆունկցիաներն ավելի ինտենսիվ կերպով հանձնել մեքենային։ Իսկ այդ բանն անել հնարավոր չէ, եթե չզբաղվենք մտածողության բարդ պրոցեսի բոլոր կողմերի բազմակողմանի և խոր գիտական մշակմամբ։

Գ. Շչեդրովիցկու «Մտածության տեխնոլոգիան» («Իզվեստիա», 1 հոկտեմբերի 1961 թ.) հոդվածում ճիշտ է դրված մտածողության լայն ու խոր ուսումնասիրության անհրաժեշտության հարցը։ Անվիճելի է, որ մտածողության հետազոտությունն անհրաժեշտ է և՛ ինժեներին, և՛ մանկավարժին, և՛ գիտնականին։ Բայց հազիվ թե կարելի լինի համաձայնել հեղինակի հետ, որ այդ խնդիրը պետք է իրականացնի այն գիտությունը, որին նա անվանում է մտածողության տեխնոլոգիա կամ օպերացիոնալ բովանդակալի տրամաբանու-

թյուն։ Արդի պայմաններում մեկ գիտությունը չի կարող ընդգրկել մտածողության պրոցեսի բոլոր կողմերը։ Փիլիսոփայությունը մտածողությունն ուսումնասիրում է կեցության և գիտակցության փոխհարաբերության, դեպի ճշմարտությունը մտածողության շարժվելու օրենքների ու ձևերի տեսանկյունից, ֆորմալ տրամաբանությունն ուսումնասիրում է մտածողության ձևական ապարատը, հոգեբանությունը վերլուծում է մարդու մտածողության պրոցեսի ընթացքը՝ կապված հոգեբանական այլ երևույթների հետ, ֆիզիոլոգիան հետազոտում է մտածողության նյարդային սուբստրատը, կիբեռնետիկան մտածողությունը դիտում է ինֆորմացիոն պլանով (որպես ինֆորմացիայի ստացման, պահպանման և վերամշակման պրոցես), լեզվաբանությունը հետաքրքրվում է մտածողությամբ՝ լեզվի մեջ նրա արտահայտման ձևերի վերլուծության կապակցությամբ։ Այս գիտություններից և ոչ մեկը չի կարող փոխարինել մյուսին, նրանցից յուրաքանչյուրը բացահայտում է մտածողության պրոցեսի էական կողմերից մեկը, շատ կարևոր հայտագործություններն ստացվում են տարբեր գիտությունների խաչմերուկներում, երբ մի գիտության մեթոդներն ու արդյունքները օգտագործում են մյուս գիտության առարկան հետազոտելու համար։

Անհրաժեշտություն, նույնիսկ հնարավորություն չկա ստեղծելու ինչ-որ մի բացարիկ գիտություն մտածողության վերաբերյալ, բայց ներկայումս շատ կարևոր է կոորդինացնել համամիութենական մասշտաբով մտածողության հետազոտությունը տարբեր տեսանկյուններից։ Միանգամայն նպատակահարմար է մտածողության ուսումնասիրության մեջ առանձնացնել առավել կարևոր պրոբլեմները, որոնց լուծումը անհրաժեշտ է մեր ժողովրդական տնտեսության (տեխնիկայի, կուլտուրայի, գիտության) զարգացման համար։ Դրանով իսկ մտածողության վերաբերյալ գիտությունները կբավարարեն պրակտիկայի պահանջները և իրենց ավանդը կմուծեն կոմունիստական հասարակարգի կառուցման, ՍՄԿԿ XXII համագումարի ընդունած վսեմ Ծրագրի կենսագործման մեջ։

„Экономическая газета“ 1961 г., № 16

---

# ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՎՃՌԱԿԱՆ ԳՈՐԾՈՆԸ

Ա. ԼՅՈՒԼԻԿՅԱՆ

Կոմունիզմն այժմ մարդկության ամենանվիրական երազանքների խորհրդանիշն է և ունի միլիարդավոր համախոհներ՝ հողագնդի բոլոր մայրցամաքներում, նրա ամենահեռավոր անկյուններում անգամ։ Բայց կոմունիզմի բարձունքները միանգամից չեն նվաճվել, իրենք իրենց չեն եկել։ Դեռ անցյալ դարի կեսերին կոմունիզմը մի ուրվական էր միայն Եվրոպայում։ Մեծ առաջընթաց ապրող կապիտալիզմի ընդերքում ծնված պրոլետարների բանակի աճին համընթաց, այն օրավուր աճեց, հզորացավ և վերջին հարյուրամյակում մարդկությունն ականատես եղավ ընչազուրկ պրոլետարիատի քաղաքական ցնցող ելույթներին և ռևոլյուցիոն ընդվզումներին։ Բանվոր դասակարգի առաջավոր ջոկատներին հարկ է եղել տիտանական աշխատանք տանել, դժվարին ուղիներ անցնել, մինչև որ մարդկությունը հասավ այն դրությանը, երբ աշխարհի հսկայական տարածություններում իրականանում են աշխատավոր մարդկանց երազանքները։

Սոցիալիզմը մտերմացնում է ժողովուրդներին, ամենասերտ ու լայն համագործակցությամբ այն ամրապնդում է ժողովուրդների կապերը, ծաղկեցնում այդ երկրների տնտեսությունը, անխորտակ դարձնում նրանց միաձույլ դաշինքը՝ սոցիալիստական երկրների համաշխարհային լագերը։

***

Այդ լագերը ծնվեց իբրև պատմական անխուսափելիություն, երկրորդ համաշխարհային պատերազմի փլատակների վրա։ Ֆաշիստական Գերմանիայի և միլիտարիստական Ճապոնիայի ջախջախմամբ, այն ահավոր պատերազմում, որտեղ ամենավճռական դերը խաղաց Սովետական Միությունը, Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրներում բարենպաստ պայմաններ ստեղծվեցին կապիտալիստների և կալվածատերերի իշխանության տապալման համար։ Սովետական Բանակի փառահեղ հաղթանակներն օգնեցին սոցիալիզմի կառուցման ուղի դուրս գալ Կենտրոնական ու Հարավ-արևելյան Եվրոպայի և Հարավ-արևելյան Ասիայի մի խումբ երկրների, որոնք Սովետական Միության և Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկայի ժողովուրդների հետ միասին կազմեցին սոցիալիստական լագերը։

ՍՄԿԿ Ծրագիրը նշում է, որ «Եվրոպայի և Ասիայի երկրներում սոցիալիստական ռևոլյուցիաները նոր, հզոր հարված հասցրին իմպերիալիզմի դիրքերին։ Հատկապես մեծ նշանակություն ունեցավ ռևոլյուցիայի հաղթանակը

Չինաստանում։ Եվրոպայի և Ասիայի երկրներում տեղի ունեցած ռևոլյուցիաները 1917 թվականի հոկտեմբերից հետո համաշխարհային պատմության ամենախոշոր իրադարձություններն են»։

Ռևոլյուցիոն այդ մեծագույն իրադարձություններն ամենավճռական ձևով փոխեցին աշխարհի ժամանակակից քարտեզը։ Իմպերիալիզմն անվերադարձորեն կորցրեց ժողովուրդների մեծ մասի վրա ունեցած իր տիրապետությունը։ Մարդկության մեծագույն մի բանակ կանգնեց սոցիալիզմի մայրուղու վրա, մի այլ հզոր բանակ էլ՝ ազատվելով գաղութային զազրելի լծից, նվաճեց իր ազգային անկախությունը։

1962 թվականի շեմքին սոցիալիզմի ուղին բռնած ժողովուրդների և նրանց ազատ հայրենիքների բաժինը կազմում է աշխարհի բնակելի տարածության 26 և բնակչության 36 տոկոսը։ Նախկին գաղութային երկրների մեծ մասը թոթափել է գաղութակալության լուծը և գաղութային, կիսագաղութային ու կախյալ երկրներն այսօր կազմում են երկրագնդի բնակելի տարածության միայն 10,5, բնակչության՝ մոտ երեք տոկոսը։

«Երևան եկավ հասարակության քաղաքական կազմակերպման նոր ձև՝ ժողովրդական դեմոկրատիա՝ պրոլետարիատի դիկտատուրայի ձևերից մեկը։ Այն արտացոլեց սոցիալիստական ռևոլյուցիայի զարգացման յուրօրինակությունը իմպերիալիզմի թուլացման և սոցիալիզմի օգտին ուժերի հարաբերակցության փոփոխման պայմաններում։ Նրանում իրենց արտացոլումը գտան նաև առանձին երկրների պատմական և ազգային առանձնահատկությունները։ Եվ այնուհետև... «ստեղծվեց սոցիալիզմի համաշխարհային սիստեմը՝ սոցիալական, տնտեսական ու քաղաքական համագործակցությունն ազատ, սուվերեն ժողովուրդների, որոնք ընթանում են սոցիալիզմի և կոմունիզմի ուղիով, միավորված են շահերի ու նպատակների ընդհանրությամբ, միջազգային սոցիալիստական համերաշխության սերտ կապերով» (ՍՄԿԿ Ծրագիր)։

Մեր ժամանակների գլխավոր առանձնահատկությունն այն է, որ համաշխարհային սոցիալիստական սիստեմը դառնում է մարդկային հասարակության զարգացման վճռական գործոնը։

Պատմական իրականության այդ հիմնական հատկանիշը բխում է աշխարհում սոցիալիզմի համար բարենպաստ ուժերի նոր հարաբերակցությունից։ Այն իրեն զգացնել է տալիս մարդկային հասարակության զարգացման բոլոր բնագավառներում, անդրադառնում է բոլոր գործերի վրա ինչպես համաշխարհային մասշտաբով, այնպես էլ յուրաքանչյուր առանձին վերցրած երկրում։ Այն իր ամենազորեղ անդրադարձումն է գտնում աշխատանքի և կապիտալի միջև տեղի ունեցած դասակարգային պայքարում՝ կապիտալիստական երկրներում, ժողովրդա-ազատագրական պայքարում՝ գաղութային և կախյալ երկրներում։ Այլ կերպ ասած, սոցիալիստական համաշխարհային լագերն ամենուրեք իր կնիքն է դնում մարդկության բոլոր գործերի վրա։ Այն վճռականորեն մասնակցում է բոլոր երկրների և ժողովուրդների բախտի որոշմանը։

Այն փաստը, որ սոցիալիստական երկրների լագերը պատմական այդպիսի կարճ ժամանակամիջոցում դարձավ համաշխարհային քաղաքական և տնտեսական որոշիչ ուժ, մեկ անգամ ևս հաստատում է այն գաղափարը, որ դա «կոնյունկտուրային» երևույթ, կամ պատմական «զիգզագ չէ», ինչպես փորձում են միամիտ մարդկանց համոզել կապիտալի սպասարկուները, այլ ժամանակակից մարդկային հասարակության զարգացման օրինաչափ արդյունք։



Մեր օրերում սոցիալիզմի համաշխարհային սիստեմը թևակոխել է իր զարգացման նոր ժամանակաշրջանը։ Սոցիալիզմը վճռական հաղթանակներ է տարել ողջ սիստեմի մասշտաբով։ Սովետական Միությունը հաջողությամբ իրականացնում է կոմունիզմի ծավալուն շինարարությունը։ Սոցիալիստական լագերի մյուս երկրները դնում են սոցիալիզմի հիմքերը, իսկ, օրինակ, Չեխոսլովակիայի Սոցիալիստական Ռեսպուբլիկան ձեռնամուխ է եղել սոցիալիստական հասարակարգի ծավալուն շինարարությանը։ Այդ երկրների հաջողություններն ամբողջովին հաստատում են այն տեսակետը, որ յուրաքանչյուր երկրում, ինչպես նշված է պարտիայի նոր Ծրագրում, անկախ նրա տնտեսական զարգացման մակարդակից, տերիտորիայից և բնակչության թվից իսկական առաջընթաց հնարավոր է ապահովել միայն սոցիալիզմի ուղու վրա։

***

Սոցիալիզմի հզոր կենսատու ուժը և նրա ներգործությունը կապիտալիզմի վրա իր ամենամեծ արտահայտությունն է գտել այն արդյունքներում, որ ձեռք է բերել սոցիալիզմի համաշխարհային սիստեմը՝ կապիտալիստական սիստեմի հետ խաղաղ մրցության մեջ։ Սոցիալիզմի երկրներն արդյունաբերական արտադրության զարգացման տեմպերով իրենց ձեռքում են պահում առաջնությունը։ Նրանք առաջին տեղում են նաև գիտության ու տեխնիկայի զարգացման ասպարեզում։ Դիմենք կոնկրետ փաստերի։

Սովետական Միությունը հսկայական հաղթանակներ է ձեռք բերում կոմունիզմի ծավալուն շինարարության մեջ։ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը ոչ միայն հաջողությամբ կատարվում, այլև զգալի չափով գերակատարվում է։ ՍՍՌՄ արդյունաբերության համախառն արտադրանքը 1961 թվականին, 1919 թվականի համեմատությամբ, ավելացել է ավելի քան 44 անգամ, արտադրամիջոցների արտադրությունը՝ 100 անգամ, մեքենաների արտադրությունը՝ ավելի քան 300 անգամ։ Վերջին 15 տարիների ընթացքում Սովետական Միությունը ավելի քան վեց անգամ գերազանցեց Ամերիկայի Միացյալ Նահանգների արդյունաբերական արտադրանքի աճի տարեկան միջին տեմպերը։

Սովետական Միությունը հաստատուն քայլերով մոտենում է Կոմունիստական պարտիայի ծրագրած պատմական խնդիրների լուծմանը՝ համախառն արտադրանքի ընդհանուր ծավալով և բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի քանակով աշխարհում առաջին տեղը նվաճելուն։ Սովետական Միությունն արդեն կուլտուրայի զարգացման և մասնագետ կադրերի պատրաստման ասպարեզներում ձեռք բերած մակարդակով աշխարհում առաջին տեղն է գրավում։ Տիեզերքի ուսումնասիրման ասպարեզում սովետական գիտնականների փայլուն նվաճումները ողջ աշխարհին ցույց տվեցին, որ ժամանակակից գիտության և տեխնիկայի կարևորագույն բնագավառներում առաջնությունը պատկանում է Սովետական Միությանը։

1951—1959 թվականների ընթացքում սոցիալիստական լագերի երկրների արդյունաբերական արտադրանքի աճի միջին տարեկան տեմպերը մոտ երեք անգամ բարձր էին կապիտալիստական երկրների արտադրության աճի տեմպերից։ Այսօր բուրժուական շատ տնտեսագետներ և փիլիսոփաներ վիճում են ոչ այն մասին, թե կհասնի՞ արդյոք սոցիալիզմի աշխարհը կապիտալիզմի աշ-

խարհին տնտեսության զարգացման ասպարեզում, այլ միայն այն մասին, թե պատմական ինչպիսի՞ ժամանակաշրջանում, ե՞րբ այդ բանը տեղի կունենա։ Ահա փաստերը։ Եթե 1937 թվականի արդյունաբերական արտադրանքի մակարդակն ընդունենք 100, ապա ըստ տարիների երկու հակադիր լագերների արդյունաբերական արտադրանքի աճի պատկերը կլինի հետևյալը.

| Տարիները | Սոցիալիզմի երկրները | Կապիտալիզմի երկրները |
|---|---|---|
| 1937 | 100 | 100 |
| 1955 | 362 | 199 |
| 1960 | 681 | 244 |

Ինչպես տեսնում ենք, սոցիալիստական երկրները 1960 թվականին արդյունաբերական արտադրանքի ծավալը 1937 թվականի համեմատությամբ ավելացրել են 6,8 անգամ, մինչդեռ կապիտալիստական երկրները երկու և կեսից էլ պակաս անգամ։ Սոցիալիզմի երկրների բաժինը համաշխարհային արդյունաբերական արտադրանքի մեջ, որ 1955 թվականին կազմում էր 27 տոկոս, բարձրացել է և 1960 թվականին հասել մոտավորապես 36 տոկոսի։ Ահա մի քանի թվեր։

Արդյունաբերության հիմնական նյութերի արտադրանքի թողարկումը

| Երկրներ | Էլեկտրաէներգիա (մլրդ կվտ. ժ.) | | Ածուխ (մլն. տ.) | | Պողպատ (մլն. տ.) | | Չուգուն (մլն. տ.) | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| | 1937 | 1960 | 1937 | 1960 | 1937 | 1960 | 1937 | 1960 |
| Սոցիալիստական ամբողջ լագերը | 87,1 | 462,0 | 426,6 | 1427,3 | 25,27 | 105.0 | 20,2 | 83,0 |
| այդ թվում՝ | | | | | | | | |
| Ս Ս Ռ Մ | 48.3 | 292,0 | 165,9 | 513,0 | 18,3 | 65.3 | 14,9 | 46,8 |
| Չ Ժ Ռ | 5.96 | 46,5 | 62 | 425,0 | 0,9 | 18.4 | 1,8 | 21,7 |
| Լեհաստան | 3.63 | 29.3 | 36 | 113,7 | 1,47 | 6,6 | 0.72 | 4,5 |
| Չ Ս Ս Ռ | 4.12 | 24,4 | 35 | 84,3 | 2,33 | 6,8 | 1,67 | 4,7 |
| Գ Դ Ռ | 14.0 | 40,3 | 105 | 225,4 | 1.2 | 3.3 | 0.2 | 2,0 |
| Հունգարիա | 1.4 | 7,6 | 9,3 | 26,5 | 0.65 | 1.9 | 0.33 | 1,2 |
| Ռումինիա | 2,13 | 7,6 | 2,8 | 8.2 | 0,29 | 1,8 | 0,13 | 1,0 |
| Բուլղարիա | 0,27 | 4,6 | 2,2 | 17,1 | 0,2 | 0,3 | — | 0,2 |
| Կ Ժ Դ Ռ | 8,14 | 9,1 | 5,7 | 10,6 | 0,15 | 0,6 | 0,48 | 0,9 |

Եթե նկատի ունենանք, որ սոցիալիստական լագերի բոլոր երկրներն էլ երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին զգալիորեն տուժել են ֆաշիստական Գերմանիայի և միլիտարիստական Ճապոնիայի օկուպացման ու ռազմական գործողությունների հետևանքով, ապա պարզ կդառնա, որ նրանց տնտեսական այս հզոր վերելքը փաստորեն իրականացվել է վերջին 10—12 տարիների ընթացքում։ Նման թռիչք հնարավոր էր միայն սոցիալիզմի առավելությունների շնորհիվ։

***

Ինչպես նշված է ՍՄԿՊ Ծրագրում, «...ժողովրդական դեմոկրատիայի երկրներում տիրապետում են սոցիալիստական արտադրական հարաբերությունները, վերացված են կապիտալիզմի վերականգնման սոցիալ-տնտեսական հնա-



րավորությունները... Սոցիալիստական սիստեմի երկրները կուտակել են հարյուր միլիոնավոր մարդկանց կյանքի վերափոխման հարուստ կոլեկտիվ փորձ, նոր և յուրահատուկ շատ բան են մտցրել հասարակության քաղաքական և տնտեսական կազմակերպման ձևերի մեջ։ Այդ փորձը միջազգային ռևոլյուցիոն շարժման արժեքավոր սեփականությունն է։

Պրակտիկայով հաստատվել և մարքս-լենինյան բոլոր պարտիաների կողմից ճանաչվել է, որ սոցիալիստական ռևոլյուցիայի, սոցիալիստական շինարարության պրոցեսները հիմնվում են սոցիալիզմի ուղին թևակոխող բոլոր երկրներին հատուկ մի շարք գլխավոր օրինաչափությունների վրա»։

Իբրև առաջին օրինաչափություն ՍՄԿՊ Ծրագրում նշված է, որ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը հիմնվում է երկրների տնտեսական ու քաղաքական հարաբերությունների նոր տիպի վրա։ Նրանք բոլորն էլ ունեն նույնատիպ տնտեսական հիմք՝ արտադրամիջոցների հանրային սեփականություն, միատիպ պետական կարգ՝ ժողովրդի իշխանություն՝ բանվոր դասակարգի գլխավորությամբ, միասնական գաղափարախոսություն՝ մարքսիզմ-լենինիզմը, միասնական մեծ նպատակ՝ կոմունիզմը։ Սոցիալ-տնտեսական և քաղաքական այդ ընդհանրությունն օբյեկտիվ հիմք է ստեղծում սոցիալիստական լագերի երկրների միջև ամուր և բարեկամական հարաբերությունների հաստատման համար։ Լիակատար հավասարության, անկախության և սուվերենության փոխադարձ հարգում, եղբայրական օգնություն և համագործակցություն՝ ահա այն հիմնական գծերը, որոնցից հյուսվում են հարաբերությունները սոցիալիստական երկրների համագործակցության մեջ։ Երկրների այդ նոր հարաբերությունների մեջ ոչ ոք չունի և չի էլ կարող ունենալ ինչ-որ արտոնյալ վիճակ, կամ հատուկ իրավունք։

«Համաշխարհային սոցիալիստական սիստեմի փորձը,— արձանագրված է Կոմունիստական պարտիայի Ծրագրում,— հաստատեց կապիտալիզմից անջատվող երկրների ամենասերտ դաշինքի, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման գործում նրանց ջանքերի միավորման անհրաժեշտությունը։ Սոցիալիզմի՝ մեկուսացված, սոցիալիստական երկրների համաշխարհային համագործակցությունից անջատ կառուցման կուրսը սնանկ է տեսականորեն, քանի որ հակասում է սոցիալիստական հասարակարգի զարգացման օբյեկտիվ օրենքներին։ Այն վնասակար է տնտեսական տեսակետից, քանի որ տանում է դեպի հասարակական աշխատանքի շռայլում, արտադրության աճի տեմպերի նվազում և կապիտալիստական աշխարհից երկրի կախում։ Այդ կուրսը ռեակցիոն և վտանգավոր է քաղաքական տեսակետից, քանի որ ոչ թե համախմբում, այլ իրարից բաժանում է ժողովուրդներին իմպերիալիստական ուժերի միացյալ ճակատի հանդեպ, նպաստում է բուրժուա-նացիոնալիստական տենդենցներին և վերջին հաշվով կարող է հասցնել սոցիալիստական նվաճումների կորստյան»։

Այդ վիճակի առաջ են կանգնած այսօր Հարավսլավիայի ժողովուրդները, որոնց ղեկավարներն իրենց ռևիզիոնիստական քաղաքականությամբ երկիրը հակադրեցին սոցիալիզմի լագերին, միջազգային բանվորական ռևոլյուցիոն շարժմանը և ներկայումս ստեղծել են այդ երկրի ռևոլյուցիոն նվաճումների կորստյան ամենառեալ սպառնալիքը։

Այսօր կոմունիստական շարժումը վճռականապես դատապարտում է Ալբանիայի Աշխատանքի պարտիայի ղեկավարների հեռացումը մարքսիզմ-լե-

նինիզմի սկզբունքներից, դատապարտում նրանց պրովոկացիոն, նացիոնալիստական գործողությունները, որոնց նպատակն է խարխլել սոցիալիստական լագերի համախմբվածությունը, Աշխատանքի պարտիան հակադրել եղբայրական մյուս պարտիաներին, հետևաբար, ուղղված են համաշխարհային կոմունիստական շարժման միասնության ու համախմբվածության դեմ։ «Սովետական մարդիկ հերոսական ալբանական ժողովրդի հանդեպ տածել են ու տածում են ամենաջերմ ու բարեկամական զգացմունքներ,— ասված է «Պրավդայի» «Վտանգավոր ուղու վրա» խմբագրական հոդվածում։— Մենք ցավում և ափսոսում ենք, որ ժողովուրդն է ստիպված հատուցելու ալբանական ղեկավարների այժմյան հակալենինյան կուրսի համար։ Կգա ժամանակ, երբ ալբանական կոմունիստները, ալբանական ժողովուրդը կասեն իրենց խոսքը, և այն ժամանակ ալբանական ղեկավարները ստիպված կլինեն պատասխան տալ այն վնասի համար, որ հասցրել են իրենց երկրին, իրենց ժողովրդին, Ալբանիայում սոցիալիզմի կառուցման գործին»։

* * *

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ստեղծումով խնդիր դրվեց՝ մի միասնական ընտանիքում խմբավորել բոլորովին տարբեր տրադիցիաներով, հաճախ հակասական խմբավորումներում սերված տենդենցներով, յուրահատուկ ազգային սովորույթներով ժողովուրդների, որոնք կապիտալիզմից ժառանգել էին ելևէջներով անցած ազգային անտագոնիզմ։

«Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության, իսկ ապա սոցիալիզմի համաշխարհային սիստեմի առաջացումը ժողովուրդների բազմակողմանի մերձեցման պատմական պրոցեսի սկիզբն է,—նշված է ՍՄԿՊ Ծրագրում։— Սոցիալիստական պետությունների եղբայրական ընտանիքում դասակարգային հակամարտությունների անհետացումով անհետանում են նաև ազգերի հակամարտությունները... Համաշխարհային սոցիալիստական համագործակցության ժողովուրդների պրակտիկայով հաստատված է, որ նրանց եղբայրական միասնությունն ու համագործակցությունը համապատասխանում են յուրաքանչյուր երկրի ազգային բարձրագույն շահերին»։

Այս տեսակետից հետաքրքրական է ծանոթանալ սոցիալիստական լագերի մի շարք երկրներում ինտերնացիոնալիզմի գաղափարախոսության ձեռք բերած նվաճումներին։ Գաղտնիք չէ, որ Արևելյան և Հարավ-արևելյան Եվրոպայի այն երկրներում, որտեղ, այսօր հաստատված է սոցիալիստական ժողովուրդների միաձույլ համագործակցությունը, նախկինում եղել են ազգամիջյան ընդհարումներ և գժտություններ։

Հիշենք Բալկանները, որ դարձել էին ազգային գժտության և թշնամանքի երկրամաս։ Տասնամյակներ շարունակ իմպերիալիստական խոշոր գիշատիչներն այստեղ իրենց ազդեցությունն ապահովելու համար, իրար դեմ էին լարում ժողովուրդներին, բաժանում և վերաբաժանում էին այդ երկրների տերիտորիաները, նրանց շպրտելով մերթ այս, մերթ այն կողմնակողմը։ Ո՞վ կարող էր նորմալ համարել չեխերի և սլովակների փոխհարաբերությունը՝ բուրժուական Չեխոսլովակիայում, ուկրաինական և բելոռուս ազգային փոքրամասնությունների պրոբլեմը՝ պանական Լեհաստանում, հունգարացիների վիճակը՝ Ռումինիայում և այլ ու այլ գորդյան հանգույցներ, որոնք այդպես էլ անլուծելի



կմնային, եթե չլինեին ժողովրդա-դեմոկրատական ռևոլյուցիաները, եթե չստեղծվեր սոցիալիզմի համաշխարհային սիստեմը։

Այդպիսին էր վիճակն այն երկրներում, ուր ֆաշիզմի ջախջախումից հետո սոցիալիզմը ձեռնամուխ եղավ ազգային հակասությունների վերացմանը, մարդասիրական նոր, մեծ գաղափարներով ժողովուրդների համախմբմանը։ Սոցիալիստական երկրների կոմունիստական, բանվորական պարտիաներն այդ ճանապարհին մեծ հաջողություններ ձեռք բերին առաջին իսկ քայլերից։ Կապիտալիստական լծի տապալումը հնարավորություն տվեց, որ այդ ժողովուրդները ո՛չ միայն արագորեն առաջ անցնեն տնտեսական և կուլտուրական զարգացման ասպարեզում, այլև սկսեն ազգերի միջև անկեղծ բարեկամության և փոխադարձ օգնության հիման վրա խարսխված հարաբերությունների հաստատման մեծ գործը։

Հասարակության սոցիալիստական վերափոխման հիման վրա դրվել են սոցիալիստական լագերի երկրների ժողովուրդների բարոյա-քաղաքական միասնության հիմքերը։ Այստեղ վճռական նշանակություն ունեն սոցիալիստական արտադրական հարաբերությունների ծնունդն ու ամրապնդումը։ Այդ գործում իրոք որ ձեռք են բերվել պատմական մեծագույն հաղթանակներ։ Սոցիալիստական սեկտորի բաժինն ազգային եկամտի մեջ ներկայումս կազմում է. Լեհաստանում՝ ավելի քան 70, Հունգարիայում ու Ռումինիայում՝ ավելի քան 80 տոկոս, ԳԴՌ-ում 85 տոկոսից ավելի, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայում, Չեխոսլովակյան ՍՌ-ում, Կորեական ԺԴՌ-ում, Բուլղարական ԺՌ-ում՝ 93-ից մինչև 99,9 տոկոս։ Սոցիալիստական սեկտորը գրեթե ամբողջությամբ տիրապետում է ժողովրդական դեմոկրատիայի երկրների արդյունաբերության և առևտրի մեջ։ Այն տիրապետող է նաև այդ երկրների գյուղատնտեսության ճյուղերի մեծ մասում։

Սոցիալիստական լագերի երկրների տնտեսական վերելքը ո՛չ միայն քանակական է, այլև որակական։ Այլևս չկան ծայրամասային կցորդներ տարբեր ժողովուրդներով բնակեցված երկրներում։ Վերցնենք օրինակ, Չեխոսլովակյան Սոցիալիստական Ռեսպուբլիկան։ Այստեղ 1960 թվականին արդյունաբերության համախառն արտադրանքը 3,7 անգամ գերազանցել է 1948 թվականի մակարդակը։ Իսկ չեխերի և սլովակների ազգային նոր, սոցիալիստական հարաբերությունների կիրառման շնորհիվ այդ նույն ժամանակաշրջանում Սլովակիայի արդյունաբերության համախառն արտադրանքն ավելացել է արդեն ավելի քան 5 անգամ։

Փոխվել է նաև առանձին երկրների արդյունաբերության զարգացման մակարդակը։ Նախկինում տնտեսապես հետամնաց երկրները սոցիալիստական ուղին բռնելուց հետո, ամենակարճ ժամանակամիջոցում դարձել են տնտեսապես առաջավոր երկրներ։ Վերանում են արդյունաբերական տեսակետից զարգացած և տնտեսապես հետամնաց երկրների արդյունաբերական մակարդակների միջև եղած տարբերությունները։

Փաստերն ակնառու են։ Եթե նախապատերազմյան 1937—39 թվականներին արդյունաբերության բաժինն արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության ընդհանուր ծավալի մեջ համեմատենք ներկայիս մակարդակի հետ, ապա կստացվի հետևյալ պատկերը։

Արդյունաբերական արտադրանքի բաժինը ժողովրդական տնտեսության ընդհանուր ծավալի մեջ (տոկոսներով).

| Երկրներ | 1937 - 39 թթ. մակարդակը | 1958 59 թթ. մակարդակը |
|---|---|---|
| Չեխոսլովակիա | 57 | 85,9 |
| Լեհաստան | 31,2 | 71,9* |
| Հունգարիա | 42 | 71 |
| Ռումինիա | 40,5 | 66,9 |
| Չինաստան | 30,1** | 67,6 |
| Կորեական ԺԴՌ | 28 | 76 |
| Գ Դ Ռ | 51,2 | 65,7*** |
| Բուլղարիա | 24,8 | 70,6 |
| Վիետնամի ԴՌ | 10 | 37,1 |

Տնտեսական առաջընթացի նման մեկ այլ օրինակ պատմությանն անհայտ է։ Այդպիսի թռիչք հնարավոր եղավ միայն սոցիալիստական արտադրական հարաբերությունների շնորհիվ։ Ինչ խոսք, որ հետպատերազմյան ծանր օրերին երիտասարդ ժողովրդական պետություններին անգնահատելի ծառայություն մատուցեց Սովետական Միությունը, որը հումք էր մատակարարում նրանց զարգացող արդյունաբերությանը, վարկով արդյունաբերական կոմպլեքսային օբյեկտներ էր տալիս նրանց՝ չտեսնված ձեռնտու պայմաններով, տնտեսական-տեխնիկական և գիտական ամենաբազմազան կոնսուլտացիա և օգնություն էր ցույց տալիս, արտադրանքի բազում տեսակների համար շուկա էր տրամադրում, հատկապես մեքենաների և սարքավորումների համար՝ Չեխոսլովակիայից և ԳԴՌ-ից, ինչպես նաև արտահանության տրադիցիոն ապրանքների համար՝ Լեհաստանից, Չինաստանից, Ռումինիայից և սոցիալիստական մյուս երկրներից։

***

Երբ տնտեսական և հասարակական զարգացման ձեռք բերված մակարդակը հնարավորություն ընձեռեց ձեռնարկել ազգային տնտեսությունների բազմամյա պլանների մշակմանը, այնժամ պայմաններ ստեղծվեցին երկկողմանի համագործակցությունները լրացնելու տնտեսական համագործակցության բազմակողմանի ձևերով։ Այսպես, օրինակ, տնտեսական համագործակցության ամենաբազմազան ձևերի կիրառման հատկապես նպաստավոր պայմաններ գոյություն ունեն Լեհաստանի ու ԳԴՌ-ի և Լեհաստանի ու Չեխոսլովակիայի միջև։ Այդ երկրների միջև տնտեսական համագործակցության զարգացումը կարող է հետագայում հանգեցնել, այսպես ասած, առանձին, կոմպլեքսային միջազգային տնտեսական շրջանի ստեղծման։

Տնտեսական պլանների բազմակողմանի կոորդինացման հետ մեկտեղ վերջին տարիներին զարգացան և ամրապնդվեցին սոցիալիստական բոլոր երկրների արագորեն առաջադիմող տնտեսական ու գիտատեխնիկական երկկողմանի համագործակցությունները։ Փորձը ցույց է տալիս, որ դրանք օգտակար և ճիշտ ձևեր են։ Այլ կերպ ասած, ամեն մի երկրի ներսում ձևավորված նոր արտադրական հարաբերություններին համապատասխանեցվում են նոր, սոցիալիստական հարաբերություններ՝ ողջ սիստեմի մասշտաբով։

Այդ բխում է սոցիալիստական զարգացման օբյեկտիվ օրինաչափություններից և սոցիալիստական պետությունների ու նրանց առաջնորդող մարքս-լենինյան պարտիաների գիտակցական ձգտումից՝ միավորել սեփական ուժերը, ընդարձակել և խորացնել համագործակցության բոլոր ձևերն ու եղանակները։ Պրոլետարական համերաշխությունը, որը միավորում է բանվոր դասակարգին կապիտալիստական կարգերի դեմ նրա մղած պայքարում, վերածվում է սոցիալիստական համերաշխության, որը բխում է սոցիալիստական երկրների ու ժողովուրդների շահերի ընդհանրությունից, նրանց միավորումից։

* 1960 թ. մակարդակը։
** 1949 թ. մակարդակը։
*** 1960 թ. մակարդակը



Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կենսունակությունն է արտացոլում հումքային ու տնտեսական ռեսուրսների օգտագործման ասպարեզում սոցիալիստական երկրների միջազգային համագործակցությունը։

Սոցիալիստական համաշխարհային սիստեմի ներսում տնտեսական հարաբերությունները ազատ են անտագոնիստական հակասություններից։ Այստեղ աշխատանքի բաժանումը տեղի է ունենում պլանավորված ձևով, իրավահավասար, սուվերեն, բարեկամական երկրների կամավոր համաձայնագրերի հիման վրա։ Այստեղ չեն կարող տեղի ունենալ այնպիսի երևույթներ, ինչպես աշխատանքի կապիտալիստական բաժանման ժամանակ, երբ մրցակցությունը, ոչ էքվիվալենտային փոխանակությունը, շահ ստանալու նպատակով կապիտալի արտահանումը, պարտնյորի թուլության օգտագործումը, նրա վզին իր քաղաքական պայմանները և կապալառուական տոկոսները փաթաթելու ձգտումներն են որոշում «կողմերի» դիրքերը։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXII համագումարն ամբողջությամբ ընթացավ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի հետագա հզորացման ու ամրապնդման ոգով՝ առաջիկա մեկ-երկու տասնամյակներում կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի հիմքերը կառուցելու ոգով։ Սոցիալիզմը մեր օրերում արդեն այնպիսի համաշխարհային ուժ է, որ առանց նրա գործոն մասնակցության հնարավոր չէ պատկերացնել քիչ թե շատ էական քայլ միջազգային կյանքում։

Այդ Սովետական Միության կողմից գլխավորվող սոցիալիզմի համաշխարհային սիստեմի առկայությունն է, որ զսպաշապիկ է հագցնում ամերիկյան և արևմտագերմանական ռազմամոլ իմպերիալիստներին՝ թույլ չտալով նրանց նոր համաշխարհային պատերազմ սանձազերծել, այդ մեր միաձույլ սիստեմի առկայությունն է, որ հնարավոր է դարձնում նախկին գաղութային և կախյալ երկրների տնտեսական ու քաղաքական վերելքը, նրանց ակտիվ մասնակցությունը միջազգային քաղաքական գործերին։ Սոցիալիզմի լագերի գոյությունը հնարավոր դարձրեց, որ ԱՄՆ-ի ամենամոտ հարևանության պայմաններում սոցիալիզմի կառուցման ուղին բռնեց հերոսական Կուբան, որի օրինակին վաղ թե ուշ կհետևեն Լատինա-ամերիկյան շատ երկրներ։

Համաշխարհային սոցիալիստական սիստեմը վստահորեն ընթանում է առաջ դեպի վճռական հաղթանակ կապիտալիզմի հետ տնտեսական մրցության մեջ, ղեկավարվելով տարբեր հասարակարգեր ունեցող երկրների խաղաղ գոյակցության սկզբունքներով։ Արդեն մոտակա ժամանակաշրջանում սոցիալիզմի համաշխարհային սիստեմը կգերազանցի համաշխարհային կապիտալիստական սիստեմին արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության ընդհանուր ծավալով։

Նոր աշխարհի հոյակապ շենքը, որը կառուցվում է ազատ ժողովուրդների հերոսական աշխատանքով Եվրոպայի և Ասիայի հսկայական տարածություններում, նոր հասարակարգի նախատիպն է, համայն մարդկության ապագան։

# ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՆԲԱԺԱՆԵԼԻ ՖՈՆԴԵՐԸ

Գ. ԴԱՎԹՅԱՆ

Կոլտնտեսային կարգի հետագա զարգացման, հանրային արտադրության անընդհատ վերելքի, սոցիալիստական սեփականության երկու ձևերի աստիճանական մերձեցման ու հետագա միաձուլման գործում վճռական նշանակություն ունեն անբաժանելի ֆոնդերը։

Կոլտնտեսային արտադրության զարգացումն ուղեկցվում է սոցիալիստական արտադրահարաբերությունների կատարելագործմամբ, սոցիալիստական սեփականության երկու ձևերի՝ համաժողովրդական ու կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականության աստիճանական մերձեցմամբ և միաձուլմամբ՝ մեկ միասնական կոմունիստական սեփականության մեջ։ Համաժողովրդական և կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականության միջև կան որոշակի տարբերություններ։ Հիմնական տարբերությունն այն է, որ համաժողովրդական սեփականությունն ունի հանրայնացման բարձր, իսկ կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականությունը՝ համեմատաբար ցածր մակարդակ։ Սեփականության այդ երկու ձևերի տարբերության վերացումը պահանջում է աստիճանաբար բարձրացնել կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականության հանրայնացման մակարդակը, այն հասցնել համաժողովրդական սեփականության մակարդակին։ Դրա հիմնական ուղիներից մեկը անբաժանելի ֆոնդերի անշեղ աճն է։ Այդ ֆոնդերը կոլտնտեսային սեփականության հետագա զարգացման տնտեսական հիմքերից մեկն են, կոլտնտեսային կարգերի կենսական ուժի և ամրության, հանրային հարստության աճի և կոլտնտեսականների նյութական բարեկեցության բարձրացման կարևորագույն աղբյուրը։

Անբաժանելի ֆոնդերը անընդհատ աճող սոցիալիստական կուտակման ֆոնդեր են, որոնք երբեք չեն կորցնում իրենց հասարակական բնույթը. դրանք կոլտնտեսային սեփականության մեջ կազմում են հատուկ կատեգորիա, որն ավելի մոտ է պետական, համաժողովրդական սեփականությանը։ Այդ ֆոնդերն ունեն ընդհանուր կարևոր գծեր պետական-համաժողովրդական սեփականության հետ։ Կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերի մեջ մտնող արտադրության հիմնական միջոցներն իրենց կարևորությամբ, բնույթով, սոցիալիստական վերարտադրության մեջ խաղացած դերով համարյա չեն տարբերվում պետական սոցիալիստական ձեռնարկությունների արտադրության հիմնական միջոցներից, որոնք հանդիսանում են պետական, համաժողովրդական սեփականություն։ Կոլտնտեսությունների արտադրական հիմնական միջոցների մի մասը՝ բազմամյա տնկարկները, ջրային տնտեսության կառուցումները և այլն, որոնք կազմում են անբաժանելի ֆոնդերի արժեքի կեսից ավելին, անխզելի-



րեն կապված են հողի օգտագործման հետ, որը նրանց տալիս է համաժողովրդական սեփականության բնույթ։ Անբաժանելի ֆոնդերն իրենց բնույթով արդեն այժմ մոտենում են պետական, համաժողովրդական սեփականությանը, բայց նրանից տարբերվում են միայն հանրայնացման աստիճանով։

Անբաժանելի ֆոնդերը դեռևս ունեն հանրայնացման ցածր մակարդակ, որովհետև հանրայնացված չեն ամբողջ հասարակության մասշտաբով. դրանք կոլտնտեսային սեփականություն են, որոնց տնօրինողը՝ սեփականատերը, դեռևս հանդիսանում են կոլտնտեսությունները։ Մեր կարծիքով սխալ է որոշ տնտեսագետների այն կարծիքը, թե այդ ֆոնդերի տերը ոչ թե կոլտնտեսություններն են, այլ ամբողջ ժողովուրդը։ Ճիշտ է, փոխվել է անբաժանելի ֆոնդերի բնույթը, կառուցվածքով ու հասարակական բնույթով դրանք ավելի են մոտեցել համաժողովրդական արտադրական ֆոնդերին, ձեռք են բերել համաժողովրդական նշանակություն, բայց և այնպես այդ ֆոնդերը հանդիսանում են կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականություն։ Եթե այդ ֆոնդերն իրոք լինեին ամբողջ ժողովրդի սեփականությունը, ապա այժմ չէր առաջանա սոցիալիստական սեփականության երկու ձևերի աստիճանական մերձեցման ու միաձուլման պրոբլեմը։

Կոլտնտեսությունների հանրային տնտեսության հետագա ընդլայնման, կոլտնտեսային սեփականության հանրայնացման մակարդակի բարձրացման կարևորագույն միջոցառումներից է անբաժանելի ֆոնդերի հետագա աճը։ Այդ ֆոնդերի ավելացմամբ շահագրգռված են ո՛չ միայն կոլտնտեսությունները, այլև ամբողջ հասարակությունը։ Կոլտնտեսությունների հանրային տնտեսության զարգացումը, նրանց անբաժանելի ֆոնդերի աճը արդյունք են կոլտնտեսականների կոլեկտիվ աշխատանքի և պետության նյութական մեծ աջակցության։ Կոլտնտեսությունների հանրային հարստությունը ստեղծում են կոլտնտեսականները սովետական ողջ ժողովրդի օգնությամբ։

Անբաժանելի ֆոնդերի գոյացմանն ու հետագա ավելացմանն ակտիվ մասնակցել է Սովետական պետությունը։ Նա արտոնյալ պայմաններով բաց է թողել երկարատև վարկեր, տրամադրել է սերմացու, պարեն և այլն, որոնց մեծ մասը հետագայում դուրս է գրվել պետության կողմից։

Սովետական պետությունը կոլտնտեսություններին ցույց է տվել նաև նյութատեխնիկական մեծ օգնություն, ապահովել է գյուղատնտեսությունը որակյալ կադրերով (որոնց պատրաստման վրա ծախսվում են միլիոնավոր ռուբլիներ)։ Նրանք իրենց աշխատանքով նպաստում են կոլտնտեսային սեփականության ամրապնդմանը, անբաժանելի ֆոնդերի ավելացմանը։

Անբաժանելի ֆոնդերի ավելացման գործում վճռական նշանակություն ունեցավ կոլտնտեսությունների արտադրա-տեխնիկական բազայի ուժեղացումը։ Սոցիալիստական արդյունաբերությունը գյուղատնտեսությունն ապահովում է անհրաժեշտ տեխնիկական միջոցներով՝ տրակտորներով, կոմբայններով, ավտոմեքենաներով, գյուղատնտեսական այլ մեքենաներով ու գործիքներով, որի շնորհիվ մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունն այժմ ունի տեխնիկական զինվածության բարձր մակարդակ։

Սովետական իշխանության տարիներին գյուղատնտեսության մեջ արմատապես փոխվել է էներգառեսուրսների հզորությունը, մեծ չափով ավելացել է մեխանիկական շարժիչների տեսակարար կշիռը։ 1959 թվականին այն կազմել է գյուղատնտեսության էներգետիկ հզորության մոտ 96 տոկոսը։

Պետության անմիջական օգնությամբ կոլտնտեսություններն անընդհատ ավելացնում են իրենց սեփական կուտակումները։ Եթե կոլտնտեսությունների կազմակերպման սկզբնական շրջանում անբաժանելի ֆոնդերի ընդհանուր գումարի ավելացումը կախված էր գյուղացիական տնտեսությունների կոլեկտիվացման քանակական աճից և կարևոր նշանակություն ուներ գյուղացիական գույքի հանրայնացումը (բանող և մթերատու անասունները, կոլտնտեսականների մուտքի վճարները և այլն), ապա հետագայում այդ ֆոնդերի աճի գլխավոր աղբյուրը հանդիսացան կոլտնտեսությունների սեփական կուտակումները և պետության օգնությունը։

Ներկայումս անբաժանելի ֆոնդերի աճի հիմնական աղբյուրներն են՝ կոլտնտեսությունների ընդհանուր դրամական եկամուտներից տարեկան կատարվող մասհանումները, կոլտնտեսականների կոլեկտիվ աշխատանքային ներդրումները (շինարարության և արտադրության որոշ միջոցների արտադրման մեջ), անասնագլխաքանակի բնական աճից գոյացած միջոցները և այլն։

Եթե սկզբնական շրջանում ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների մեծ մասը մանր, նյութապես թույլ տնտեսություններ էին, որի պատճառով հնարավոր չէր բազմակողմանիորեն զարգացնել հանրային արտադրությունը, ամբողջովին օգտագործել արտադրության հիմնական միջոցները և բարձրացնել կոլտնտեսային արտադրության ու հիմնական միջոցների հանրայնացման մակարդակը, ապա այժմ դրանց նշանակալի մասը դարձել է խոշոր, տնտեսապես ամուր, ժամանակակից տեխնիկայով զինված տնտեսություն։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների խոշորացման շնորհիվ 1959 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, մեկ կոլտնտեսության ցանքատարածություններն ավելացել են 27,5, խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը՝ 32,3 տոկոսով, որից կովերինը՝ 39,2, մանր եղջերավոր անասուններինը՝ 2,1, խոզերինը՝ մոտ 3 անգամ, իսկ դրամական եկամուտները ավելացել են 6,2, անբաժանելի ֆոնդերը՝ 9,1 անգամ։

Պարտիայի ու պետության կողմից կոլտնտեսային կարգերի հետագա զարգացման համեմատ կենսագործվող միջոցառումները նոր պայմաններ են ստեղծել կոլտնտեսությունների հանրային տնտեսության հետագա զարգացման համար։ Բարձրացել է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, ավելացել հանրային անասունների գլխաքանակը։ Բարձրացել է գյուղատնտեսության ապրանքայնությունը, հետևապես և՝ դրամական եկամուտները։

Կոլտնտեսությունների էկոնոմիկայի ամրապնդմանը զուգընթաց անընդհատ մեծանում են նաև անբաժանելի ֆոնդերը։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների դրամական եկամուտների և անբաժանելի ֆոնդերի աճը.

| | 1950 թ. | 1959 թ. |
|---|---|---|
| 1. Կոլտնտեսությունների դրամական եկամուտները (մլն. ռ.)[1] | 421.7 | 1059.6 |
| 2. Հատկացումներ անբաժանելի ֆոնդերին (մլն. ռուբլով) | 67.8 | 218.8 |
| 3. Անբաժանելի ֆոնդեր (մլն. ռ. տարվա վերջում) | 819.5 | 1863 0 |
| 4. Միջին հաշվով մեկ կոլտնտեսությանն ընկնում է՝ | | |
| ա) դրամական եկամուտներ (հազ. ռ.) | 631.2 | 1350 |
| բ) անբաժանելի ֆոնդեր (հազ. ռ.) | 1227 0 | 2373,2 |

[1] Ինչպես այստեղ, այնպես էլ հետագայում հիմք է ընդունվել գների հին մասշտաբը։



Աղյուսակից երևում է, որ ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների դրամական եկամուտները 1959 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, ավելացել են մոտ 2,5, իսկ անբաժանելի ֆոնդերը մոտ 3,5 անգամ։ Ավելացել են կոլտնտեսությունների ընդհանուր դրամական եկամուտներից անբաժանելի ֆոնդերին հատկացվող գումարները։ Եթե ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները 1950 թվականին անբաժանելի ֆոնդերին հատկացնում էին իրենց դրամական եկամուտների 16, ապա 1959 թվականին հատկացրել են 20,7 տոկոսը։

Ավելացել են ռեսպուբլիկայի մեկ կոլտնտեսությանն ընկնող դրամական եկամուտներն ու անբաժանելի ֆոնդերը։ Եթե 1953 թվականին մեկ կոլտնտեսությանն ընկնում էր միջին հաշվով 851 հազար ռուբլի դրամական եկամուտ և 1611 հազար ռուբլի անբաժանելի ֆոնդ, ապա 1959 թվականին, համապատասխանաբար՝ 1350 և 2373,2 հազար ռուբլի։ Մինչև ՄՏԿ-ների վերակազմումն անբաժանելի ֆոնդերի լրացման համար մասհանումները կատարում էին հաստատված նորմայով (գյուղատնտեսական արտելի օրինակելի կանոնադրությամբ նախատեսված է ոչ պակաս, քան 15 և ոչ ավելի, քան 20 տոկոս). այժմ կյանքը ցույց է տալիս, որ չի կարելի բոլոր կոլտնտեսությունների համար սահմանել մասհանումների միասնական նորմաներ, անհրաժեշտ է դիֆերենցիացիա կատարել։

Անբաժանելի ֆոնդերի լրացման համար մասհանումներ պետք է անել՝ հաշվի առնելով տնտեսության էկոնոմիկայի մակարդակը և հանրային տնտեսության նյութա-տեխնիկական բազայի ամրապնդման պահանջները։ Այժմ, երբ կոլտնտեսություններն ունեն և շարունակում են ձեռք բերել իրենց անհրաժեշտ գյուղատնտեսական մեքենաներ, շարժիչներ ու սարքավորումներ, որոնց նորոգման և պահպանման համար պահանջվում է կառուցել ու սարքավորել նորոգման արհեստանոցներ և ծածկեր, բարելավել անասնապահական կառույցները և այլն, անհրաժեշտ է, որ կոլտնտեսությունները ժողովների որոշմամբ ավելացնեն անբաժանելի ֆոնդերի համար կատարվող մասհանումները։ Դա չպետք է տեղի ունենա աշխօրերի արժեքի նվազեցման հաշվին։

Անբաժանելի ֆոնդերի հետագա ավելացման համար մեծ նշանակություն ունեն նրանց հաշվառման ճիշտ կազմակերպումն ու կառուցվածքի ուսումնասիրությունը։ Անբաժանելի ֆոնդերը կազմված են հանրային հարստության նյութական էլեմենտներից և դրամական միջոցներից, որոնք գտնվում են կապիտալ ներդրումների հաշվում։ Անբաժանելի ֆոնդերի առարկայացված նյութական տարրերը հանդիսանում են գլխավորապես արտադրության հիմնական միջոցները՝ բանող և մթերատու անասուններն ու թռչունները, տրակտորները, շարժիչները, գյուղատնտեսական այլ մեքենաներն ու գործիքները, ինվենտարը և սարքավորումները, տրանսպորտային միջոցները, արտադրական ու կուլտուր-կենցաղային նշանակություն ունեցող շենքերն ու կառույցները և բազմամյա տնկիները։ Այդ արտադրամիջոցների ամբողջ արժեքը մտնում է անբաժանելի ֆոնդերի մեջ։ Անբաժանելի ֆոնդերի մեծ մասը կազմում են արտադրության հիմնական միջոցները։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերի ընդհանուր գումարի մեջ արտադրության հիմնական միջոցների արժեքը կազմում էր 1940 թվականին՝ 81,3, 1950 թվականին՝ 84,7, 1959 թվականին՝ 87 տոկոս։ Մնացած բաժինը կազմում են դրամական միջոցները, տնկանյութի և շինարարա-

կան նյութերի մնացորդները, ինչպես նաև անասունների ծնից ստացվող աճը և բտման տակ գտնվող անասունները։

Անբաժանելի ֆոնդերի դրամական միջոցներն արտադրության հիմնական միջոցների ընդլայնված վերարտադրության գլխավոր աղբյուրն են։

ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի 1956 թվականի մարտի 6-ին ընդունած որոշման համաձայն ավելի է մեծացել անբաժանելի ֆոնդերի դրամական միջոցների նշանակությունը։ Այնտեղ նշված է, որ կոլտնտեսությունները կապիտալ ներդրումների գծով երկարատև վարկերն առաջին հերթին պետք է մարեն ընդհանուր դրամական եկամուտներից՝ վճարումները կատարելով անբաժանելի ֆոնդերի հաշվին։ Կոլտնտեսություններին խորհուրդ է տրված՝ ընդհանուր ժողովի որոշմամբ բազմամյա տնկիների մշակման, անասնաբուծական և այլ շենքերի ու կառուցումների վրա ծախսված աշխօրերի վարձատրությունը կատարել անբաժանելի ֆոնդերի դրամական միջոցների հաշվին, հաստատված ելքի-մուտքի նախահաշվի համապատասխան։

Պետք է նշել, որ գյուղատնտեսական արտելի օրինակելի կանոնադրության, հաշվառման հրահանգներում և կոլտնտեսությունների հաշվետվություններում չկա սպառիչ ցուցում անբաժանելի ֆոնդերի ձևավորման և կառուցվածքի մասին։ Անհրաժեշտ է ճիշտ սահմանել անբաժանելի ֆոնդերի կառուցվածքը և գոյացման աղբյուրները։ Մեր կարծիքով լավ կլիներ ճշտել անբաժանելի ֆոնդեր հասկացության բնորոշումը, այսինքն՝ դրանց մեջ ընդգրկել կոլտնտեսությունների բոլոր անբաժանելի միջոցները, անկախ այն բանից՝ նրանք գտնվում են արտադրության հիմնակա՞ն, թե՞ շրջանառու ֆոնդերի մեջ։ Այդ համապատասխանում է անբաժանելի ֆոնդերի տնտեսական բնույթին և գործնական նշանակություն ունի հանրային տնտեսության ամրապնդման գործում։

Որոշ տնտեսագետներ գտնում են, որ այդ էական նշանակություն չունի։ Իսկ մեր կարծիքով անբաժանելի ֆոնդի նյութական տարրերի ճիշտ բնորոշումն ունի սկզբունքային նշանակություն։

Արտադրության հիմնական միջոցները արտադրության մեջ ունեցած իրենց դերով ու նշանակությամբ, վերարտադրության բնույթով խիստ տարբերվում են շրջանառու արտադրական (սերմ և ֆուրաժային) ֆոնդերից։ Չնայած դրան, եթե մենք ելնում ենք անբաժանելի ֆոնդերի բնորոշումից, այսինքն՝ անբաժանելիության հատկանիշից, ապա սերմ և ֆուրաժային ֆոնդերը նույնպես անբաժանելի են, օգտագործվում են հանրային տնտեսության մեջ, չեն բաշխվում ըստ աշխօրերի՝ որպես եկամուտ։ Ուրեմն, ճիշտ կլիներ անբաժանելի ֆոնդերի մեջ մտցնել շրջանառու արտադրական սերմ և ֆուրաժային ֆոնդերը. այդպիսով զգալի չափով կբարձրանա անբաժան ֆոնդերի ընդհանուր գումարը։ Անհրաժեշտ է կարգավորել շրջանառու ֆոնդերի վերականգնման համար անհրաժեշտ նորմատիվները, որովհետև անբաժանելի ֆոնդերի միակողմանի կուտակման միջոցով հնարավոր չէ հասնել նշանակալից հաջողությունների։

Այս հարցը շատ կարևոր է, որովհետև արտադրության պրոցեսում որոշակի փոխհարաբերություններ գոյություն ունեն արտադրության հիմնական ու շրջանառու ֆոնդերի միջև։ Երբ անհրաժեշտ չափով չեն վերականգնվում շրջանառու ֆոնդերը, խախտվում է արտադրության նորմալ պրոցեսը։ Որպեսզի ռացիոնալ օգտագործվեն արտադրության հիմնական միջոցները՝ գյուղատնտեսական տեխնիկան, ինվենտարն ու սարքավորումները, բանող ու մթերատու անասունները, տրանսպորտային միջոցները, արտադրական շենքերն ու կառուցումները և այլն, անհրաժեշտ է ունենալ բավարար քանակությամբ լիարժեք սերմ, անասնակեր, վառելանյութ, քսանյութ, պարարտանյութ, որովհետև առանց շրջանառու միջոցների հնարավոր չէ ամբողջովին օգտագործել արտադրության հիմնական միջոցները։ Այսպիսով, անբաժանելի ֆոնդերի մեջ պետք է մտնեն արտադրության հիմնական միջոցների բալանսային արժեքը, կապիտալ ներդրումների ու կապիտալ նորոգման համար նախատեսված դրամական միջոցները և սեփական շրջանառու ֆոնդերի անբաժանելի միջոցների արժեքը։



Կոլտնտեսությունների արտադրության հիմնական միջոցների ընդլայնման և կատարելագործման կարևորագույն աղբյուրը հանդիսանում են անբաժանելի ֆոնդերի դրամական միջոցները (որոնք հիմնականում գոյանում են դրամական եկամուտներից տարեկան կատարվող մասհանումներից)։ Կոլտնտեսությունները պետք է հատուկ ուշադրություն դարձնեն անբաժանելի ֆոնդերի անշեղ աճին, որը կոլտնտեսությունների հանրային արտադրության անընդհատ վերելքի, արտադրության հիմնական միջոցների կատարելագործման ու ավելացման, աշխատատար պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման գլխավոր աղբյուրներից մեկն է։ Անբաժանելի ֆոնդերի աճի հետ մեկտեղ կոլտնտեսությունների արտադրության հիմնական միջոցների կառուցվածքում տեղի են ունենում խոր որակական փոփոխություններ։ ՄՏԿ-ների վերակազմումից հետո (1958 թ.) ո՛չ միայն ավելացել են կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերը, այլև արմատապես փոխվել է նրանց արտադրության հիմնական միջոցների կառուցվածքը։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների հիմնական ֆոնդերի կառուցվածքը (տոկոսով) *

| Տարեթիվը | Բանող անասուն | Մթերատու անասուն. Թռչուն և մեղու | Գ/տ. մեքենաներ, գործիքներ և շարժիչներ | Ինվենտար և սարքավորում | Տրանսպորտային միջոցներ | Արտադրական շենքեր և կառուցումներ | Բազմամյա տնկիներ | Կուլտուր-կենցաղային նշանակություն ունեցող շենքեր և ինվենտար | Ընդամենը |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1940 | 13,8 | 21,0 | 4,6 | 5,6 | 6,8 | 35,8 | 6,2 | 6,2 | 100 |
| 1953 | 5,0 | 15,6 | 4,4 | 8,9 | 7,3 | 58,8 | — | — | 100 |
| 1957 | 2,7 | 14,1 | 3,7 | 7,5 | 8,1 | 50,7 | 3,9 | 9,3 | 100 |
| 1959 | 4,7 | 24,4 | 8,3 | 5,9 | 6,7 | 38,2 | 3,0 | 8,8 | 100 |

Կոլտնտեսությունների կազմակերպման սկզբնական շրջանում արտադրության հիմնական միջոցների մեջ մեծ տեսակարար կշիռ ունեին արտադրական հնամաշ շենքերը, հասարակ գործիքները, ձիաքարշ մեքենաները, կենդանի քարշող ուժը և այլն։ Այդ ժամանակ կոլտնտեսություններում աշխատանքը հիմնականում կատարվում էր ձեռքով, կենդանի քարշող ուժի միջոցով։ Այսպես՝ 1940 թվականին գյուղատնտեսության էներգառեսուրսների 22,3 տոկոսը կազմում էր կենդանի քարշող ուժը։ 1953 թվականին կենդանի քարշող ուժը կազմեց ընդամենը 8,3, 1958 թվականին՝ 4,3 տոկոս, իսկ մեխանիկական քար-

* 1953 թվականի արտադրական շենքերի ու կառուցումների, կուլտուր-կենցաղային նշանակություն ունեցող շենքերի և բազմամյա տնկումների տվյալները արտահայտված են միասին։

*շող ուժը 1953 թվականին՝ 91,7, 1958 թվականին՝ 95,7 տոկոս։ Մինչև 1958*
*թվականը կոլտնտեսային աշխատանքների մեքենայացումը, նրանց տեխնի-*
*կական սպասարկումը կատարում էին ՄՏԿ-ները, որովհետև գյուղատնտեսա-*
*կան տեխնիկան կենտրոնացված էր այնտեղ։*

*Աղյուսակից երևում է, որ ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների արտա-*
*դրության հիմնական ֆոնդերի կազմում տեղի են ունեցել որակական զգալի*
*փոփոխություններ։ Այդ ֆոնդերի արժեքի մեջ մեծ չափով պակասել է բանող*
*անասունների տեսակարար կշիռը։ 1959 թվականին այն կազմել է 4,7, 1940*
*թվականի 13,8 տոկոսի դիմաց։*

*ՄՏԿ-ների վերակազմումից հետո, երբ գյուղատնտեսական տեխնիկան*
*վաճառվեց կոլտնտեսություններին, նրանց արտադրության հիմնական միջոց-*
*ների կազմում մեծ չափով մեծացավ տրակտորների, կոմբայնների, գյուղա-*
*տնտեսական այլ բարդ մեքենաների ու գործիքների տեսակարար կշիռը։ 1959*
*թվականին այն կազմում էր 8,3, 1940 թվականի 4,6 և 1957 թվականի՝ 3,7 տո-*
*կոսի դիմաց։*

*Գյուղատնտեսական տեխնիկայի վաճառքից հետո կոլտնտեսությունները*
*դարձան արտադրության բոլոր հիմնական միջոցների սեփականատերերը, բա-*
*ցի հողից, որը համաժողովրդական սեփականություն է և տրված է կոլտնտե-*
*սություններին անվճար, անժամկետ օգտագործման։*

*Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ դեռևս ցածր է տրակտոր-*
*ների և գյուղատնտեսական մեքենաների տեսակարար կշիռը։ Անհրաժեշտ է,*
*որ կոլտնտեսություններն անբաժանելի ֆոնդերի դրամական միջոցներն առա-*
*ջին հերթին գործադրեն տրակտորներ, գյուղատնտեսական այլ մեքենաներ ու*
*սարքավորումներ ձեռք բերելու, արտադրական կառուցումների վրա, այսինքն՝*
*հիմնական ֆոնդերի այն էլեմենտների, որոնք կոլտնտեսային արտադրության*
*նյութատեխնիկական բազայի ամրապնդման համար վճռական նշանակություն*
*ունեն։*

*ՍՄԿԿ նոր Ծրագրում ասված է. «Կոլտնտեսությունների զարգացման*
*զուգընթաց կաճեն նրանց հիմնական ֆոնդերը, որոնցում գերակշռող տեղ*
*կգրավեն ժամանակակից տեխնիկական միջոցները»։ Գյուղատնտեսությունը*
*տեխնիկական զինվածության և արտադրության կազմակերպման տեսակետից*
*կմոտենա արդյունաբերության մակարդակին, կոլտնտեսականի աշխատանքն*
*իր բնույթով կմոտենա բանվորի աշխատանքին։ Արտադրական պրոցեսների*
*կոմպլեքսային մեքենայացումը պայմաններ կստեղծի, որպեսզի նվազագույն*
*ծախսումներով, միավոր ժամանակամիջոցում արտադրվեն ավելի շատ գյու-*
*ղատնտեսական մթերքներ, որն, անշուշտ, կնպաստի կոլտնտեսությունների*
*դրամական եկամուտների, հետևապես և անբաժանելի ֆոնդերի ավելացմանը։*

---

# «ՔՐԻՍՏՈՆԵԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ» ՌԵԱԿՑԻՈՆ ԷՈՒԹՅՈՒՆԸ

## *Թ. ԻՍԱՅԱՆ*

Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

*Աշխարհն այսօր բաժանված է երկու հակամարտ լագերների՝ սոցիալիս-*
*տականի և կապիտալիստականի, որոնց նպատակներն ու գործունեությունը*
*հիմնավորում, պրակտիկորեն մշակում և պրոպագանդում են բազմաթիվ բնա-*
*գավառների նրանց գաղափարախոսները։ ՍՄԿԿ նոր Ծրագիրը նշում է տարբեր*
*գաղափարախոսությունների միջև եղած կատաղի պայքարը։ Կոմունիզմի գա-*
*ղափարների դեմ իմպերիալիզմի մղած քաղաքական ու իդեոլոգիական պայքա-*
*րում կարևոր զենք է հակակոմունիզմը։ Մարդկության առաջընթացին խոչըն-*
*դոտող այդ ամենառեակցիոն գործունեության մեջ իր առյուծի բաժինն ունի*
*ռեակցիոն կղերամտությունը՝ Վատիկանի իր շտաբից ղեկավարվող կաթոլի-*
*ցիզմի գլխավորությամբ։ «Նա չի սահմանափակվում եկեղեցու և նրա ճյուղա-*
*վորված ապարատի օգտագործումով։ Նա այժմ ունի իր խոշոր քաղաքական*
*պարտիաները, որոնք կանգնած են իշխանության գլուխ կապիտալիստական*
*շատ երկրներում,— ասված է ՍՄԿԿ Ծրագրում...— Մոնոպոլիստներն առատա-*
*ձեռն կերպով ֆինանսավորում են կղերական պարտիաներին ու կազմակեր-*
*պություններին, որոնք շահագործում են աշխատավորների կրոնական զգաց-*
*մունքները, նրանց սնոտիապաշտությունները և նախապաշարմունքները»։ Իր*
*նպատակին հասնելու համար կղերականությունը կանգ չի առնում ոչ մի բանի*
*առաջ։ Նա եկեղեցու հին զինանոցից լույս աշխարհ է հանում շահագործողների*
*կողմից փորձված, սակայն վաղուց սնանկացած «տեսությունները»։*

*Ռեակցիոն կղերականությունը հատկապես մեծ հույսեր է կապում «տե-*
*սությունների» թվին պատկանող, այսպես կոչված՝ «քրիստոնեական սոցիա-*
*լիզմի» հետ։ Բացառիկ մենաշնորհներ ձեռք բերած, արտաքուստ աշխարհիկ*
*իշխանություններից կախում չունեցող «քրիստոնեական սոցիալիստները»*
*այժմ կրկին առաջավոր դիրքեր են գրավել հակակոմունիզմի ռեակցիայի լա-*
*գերում, իմպերիալիզմի քաղաքական և գաղափարական զինանոցում։*

***

*«Քրիստոնեական սոցիալիզմի» հիմնական բովանդակությունը, ինչպես*
*միշտ, հակակոմունիզմն է, գիտական կոմունիզմի վեհ գաղափարների արա-*
*տավորումը, բուրժուական իրավակարգի շահագործողական բնույթի քողար-*
*կումը, բուրժուական հասարակարգի պաշտպանումը։ Նրա գաղափարախոս-*

Ներն այսօր ոչ միայն չեն սահմանափակվում կոմունիզմի դեմ պայքարի բացարձակ կոչերով, այլև գաղափարական զենք են հանդիսանում բոլոր այն կազմակերպությունների ու խմբավորումների համար, որոնք պատրաստակամություն են հայտնում «խաչակրաց արշավանք» սկսելու կոմունիզմի, սոցիալիստական երկրների դեմ։ Նման կազմակերպություններից կարելի է հիշատակել ֆրանսիական, այսպես կոչված, «ազգային կաթոլիկների» միությունը, որի էությունը բնութագրելու համար բավական է բերել մի հատված նրա պարագլուխներից մեկի՝ Ժորժ Սոժի «Սոցիալիստական հոգեբանության ուսումնասիրման բարձր կենտրոնի» ժողովում վերջերս ունեցած ելույթից։

Ֆրանսիական «Էքսպրես» հանդեսի տեսաբան Կլոդ Կրիֆը այդ ժողովը մեկնաբանում է որպես կոմունիզմի դեմ արշավանք սկսելու համար «ազգային կաթոլիկներին» համախմբելու միջոցառում։ Ելույթ ունենալով այդ ժողովում, Սոժը հայտարարել է. «Մեզ սպասում է ոչ թե սովորական, այլ համարյա գերբնական պայքար, մենք պարտավոր ենք պայքարի մեջ մտնել և պատասխանել մեզ ուղղված մարտահրավերին։ Մոբիլիզացնելով մեր ուժերը ընդդեմ կոմունիզմի, որը ժխտում է մարդուն, ժխտում է բնությունը, բացասում է աստծուն,— մենք կպաշտպանենք քաղաքակրթության քրիստոնեական արժանիքները, որոնց ապավենն ու ժառանգորդը մենք ենք։ Ես ձեզ կոչ եմ անում,— ասել է նա,— պայքարել աղոթքով ու զոհաբերությամբ, ինչպես նաև բացահայտ ու կազմակերպված գործողությունների դիմել... Մենք խաչակիրներ ենք...»։

Ներկայումս «քրիստոնեական սոցիալիզմի» ջատագովներից ոմանք առաջ են քաշում նույնիսկ հակակոմունիզմի միասնական ճակատ ստեղծելու զանազան ծրագրեր։ Նրանք գտնում են, որ կոմունիզմի դեմ քրիստոնյաների հետ մեկտեղ պայքարի պետք է ելնեն նաև այլ դավանանքի պատկանող կրոնական կազմակերպություններ։ Վերջերս Մանիլայում (Ֆիլիպիններ) կայացած Ասիայի կաթոլիկ եկեղեցիների պարագլուխների հավաքույթում քննության առնվեցին «բամբուկե վարագույրից» այն կողմ գտնվող հավատացյալների «ճակատագիրը», ինչպես նաև Արևելքի երկրների ու Վատիկանի միջև համագործակցության կոնկրետ պլանների մշակումը, «աթեիստական կոմունիզմի դեմ սրբազան պատերազմ» մղելու, կաթոլիկների ու իսլամի համատեղ ճակատ ստեղծելու և այլ հարցեր։ «Վատիկանը,— գրում է հռոմեական «Էսպրեսս» ամսագիրը,— քրիստոնյաների ու արաբների միջև հակակոմունիստական պակտը միշտ էլ դիտել է որպես իր քաղաքականության հիմնական էլեմենտը»։

Բանն, իհարկե, բոլորովին էլ Վատիկանի քաղաքականության ու ամբիցիայի մեջ չէ։ Ամենևին էլ պատահական չէ, որ ԱՄՆ-ի պետական դեպարտամենտը, Ֆրանսիայի, Բելգիայի ու Հոլանդիայի արտաքին գործերի մինիստրությունները և նրանց հետ միասին Բոննի դիվանագիտական գերատեսչությունը ամեն կերպ աջակցում են Պապի պլաններին։ Կաթոլիկ եկեղեցին ու նրա կողմից ֆինանսավորվող «քրիստոնեական սոցիալիզմի» ողջ բանակն իմպերիալիստներին առաջարկում են ճիշտ այն, ինչի կարիք որ նրանք զգում են, այն է՝ «գաղափարական» հիմնավորում տալ նրանց ագրեսիվ քաղաքականությանը։

Եթե «քրիստոնեական սոցիալիզմի» ջատագովներից ոմանք ակտիվ գործունեություն են ձեռնարկել հակակոմունիստական ընդհանուր ճակատ ստեղծելու գործում, իսկ մի քանիսն էլ «խաչակրաց արշավանքի» են կոչում, ապա նրանց ճնշող մեծամասնության կողմից, որն ավելի համեստ է, կոմունիզմի



դեմ բացեիբաց պայքարը, էլ չենք խոսում «խաչակրաց արշավանք» ձեռնարկելու մասին, գնահատվում է որպես անիրագործելի իրականություն։

Վերջին հարյուրամյակում մարդկությանը հրամցվեցին բազմաթիվ քաղաքական դոկտրինաներ ու հասարակական իդեալներ, որոնք, իբր, կոչված էին կապիտալիստական հասարակարգը ազատելու սոցիալական արատներից ու աշխատավոր մարդու համար ստեղծելու խաղաղ ու ապահով կյանք։ Անցան տարիներ, սակայն կապիտալիզմի արատներին ո՛չ միայն վերջ չտրվեց, այլև դրանք ընդունեցին ավելի այլանդակ բնույթ, իսկ աշխատավոր մարդը կապիտալի աշխարհում շարունակում է ապրել աղքատության մեջ, գործազրկության սարսափը սրտում։

Պրակտիկայում իրեն արդարացրեց միայն գիտական կոմունիզմի մարքս-լենինյան տեսությունը։ Այս մեծ ուսմունքի հիմնադիրներ Մարքսն ու Էնգելսը «Կոմունիստական պարտիայի մանիֆեստը» հանճարեղ աշխատության մեջ ողջ աշխարհին ազդարարեցին կապիտալիզմի անխուսափելի վախճանը և կոմունիզմի հաղթանակը։

Զարգացնելով մարքսիզմը, անմահ Լենինը, նրա ստեղծած Սովետական Միության Կոմունիստական պարտիան, գլխավորելով հաղթական սոցիալիստական ռևոլյուցիան, մեր երկրի բանվոր դասակարգին, աշխատավոր մասսաներին առաջնորդեցին դեպի սոցիալիզմի հաղթանակը։ Մարդկությունը տեսավ, որ կարելի է ապրել և այլ կերպ՝ առանց շահագործողների, այնպիսի պայմաններում, երբ հասարակությունն այլևս բաժանված չի լինի հակամարտ ուժերի՝ շահագործողների ու իրավազուրկ աշխատավորների։

Սոցիալիզմը, որի մասին երազում էին մարդկանց շատ սերունդներ, և որի հետ կապված է միջազգային բանվորական շարժման ամբողջ պատմությունը, լիովին ու վերջնականապես հաղթանակեց մեր երկրում։ Եվ, եթե մինչև վերջերս կոմունիզմը մեզ պատկերվում էր որպես հոյակապ, սակայն հեռավոր հնարավորություն, ապա այժմ մեզ հայտնի են կոմունիզմին հասնելու կոնկրետ ուղիները։ Մեր պարտիան երկու տասնամյակ է նախատեսում կոմունիստական հասարակարգը հիմնականում կառուցելու համար։ Կոմունիզմն այսօր մարդկության ճնշող մեծամասնության համար խաղաղության ու դեմոկրատիայի, ժողովուրդների միջև հավասարության ու բարեկամության, աշխատավորության երջանկության փարոսն է։ Այս չեն կարող աչքաթող անել ոչ «քրիստոնեական սոցիալիզմի» գաղափարախոսները, ոչ էլ կոմունիզմի գաղափարական այլ թշնամիներ։ Նրանք չեն կարող իրենց աչքերը փակել այն փաստի առաջ, որ կոմունիզմն այսօր «ուրվականից» վեր է ածվել մարդկային հասարակության զարգացման վճռական գործոնի, որի վերափոխիչ գաղափարները հարաճուն ազդեցություն են գործում ո՛չ միայն կապիտալիստական, գաղութային ու կախյալ երկրների բանվորների, գյուղացիների, առաջավոր ինտելիգենցիայի մտքի ու սրտի վրա, այլև հավատացյալների, շարքային հոգևորականի ու ծխականի վրա, որոնց հետ մեծ հույսեր են կապում «քրիստոնեական սոցիալիզմի» գաղափարախոսները։ Ուստի և նրանցից շատերը ստիպված են խոստովանելու, որ գիտական կոմունիզմը մի այնպիսի աշխարհհայացք է ու հասարակական շարժում, որի արմատները գտնվում են ժամանակակից հասարակական հարաբերությունների ոլորտում, որ կոմունիզմն այլևս չի կարելի թերագնահատել կամ ապրիորի դատապարտել։ Այս առումով հատկանշական է կաթոլիկ քահանա Ու. Կավալկանտիի «Մարքսիզմի հավիտենական բնույթը»

դասախոսությունը, որ նա վերջերս կարդացել է Բրազիլիայի Ալագոասի նահանգի համալսարանի փիլիսոփայական ֆակուլտետում։ «Մենք,— հայտարարել է նա,— չենք կարող մոռացության տալ, որ մարքսիզմն այսօր գիտությունն ու մարդու գործունեությունը կապակցող մի այնպիսի իրողություն է, որի մոտով չի կարելի անտարբեր անցնել։ Մարքսիզմի հատկանշական գիծն այն է, որ նա ուշագրավ իրողություն է... Մարքսիզմը ոչ թե անցողիկ է, այլ մշտնջենական, այն չի կարելի արհամարհել, ելնելով միայն այն բանից, թե այն աթեիստական ուսմունք է, քանի որ մարքսիզմը գաղափարական ուժ է ու մարդկության մեծամասնության կյանքի կոնցեպցիան։ Եթե մարքսիզմը լիներ ոչ ճիշտ ուսմունք կամ իրականության մեջ արմատներ չունենար, ապա վաղուց իր դարն ապրած պետք է լիներ»։

Հայացքների նման շրջադարձը խոր արմատներ ունի իրականության մեջ։ Գիտական մտքի ու տեխնիկայի ներկայիս աննախընթաց առաջադիմության պայմաններում, երբ ամբողջ աշխարհի մարդկությունն ականատես է դառնում, թե ինչպես մեր օրերում կոմունիզմը հեռավոր երազանքից դառնում է ռեալ իրականություն, հավատացյալ մարդու գիտակցությունը, որի սնոտիապաշտությունների ու նախապաշարմունքների հետ իրենց հույսերն են կապում «քրիստոնեական սոցիալիստները», կանգնում է ծանր փորձության առաջ։ Մի կողմից՝ ժամանակակից կապիտալիզմի ստեղծած պայմանները, որոնք շարունակում են սպառնալ մարդու կյանքին ու նրա գոյությանն ընդհանրապես, մյուս կողմից՝ գիտության վիթխարի հաջողությունները, պատմական փորձը, հասարակական պրակտիկան, որոնցից հավատացյալ մարդն այլևս չի կարող երես դարձնել, օբյեկտիվորեն նրան մղում են դեպի անկրոնություն։ Հատկանշական է նաև այն, որ կապիտալիստական շատ երկրներում, ուր կղերականությունը դեռևս պահպանում է իր ղեկավար դիրքերը, ստիպված ավելի ու ավելի զիջումներ են արվում հավատացյալին։

Եթե միջին դարերում որևէ կրոնական դոգմայի մերժում կամ ծիսակատարություն անտեսում, դատապարտվում էր որպես հերետիկոսություն, ապա այժմ հավատացյալից պահանջվում է ոչ այնքան կրոնական ծիսակատարությունների խստիվ կատարում, որքան հավատի առկայություն ընդհանրապես, և մասնավորապես հավատ դեպի «քրիստոնեական սոցիալիզմի» գաղափարները։ Ակներև է, որ իշխող դասակարգերի ու նրանց հետ սերտորեն կապված կղերականության նմանօրինակ զիջումները ամենևին էլ կրոնական հանդուրժողականության արտահայտություն չեն, այդ բանին նրանց դրդում են պատմական պայմանները, որոնք աշխատավոր լայն մասսաների մեջ օբյեկտիվորեն սերմանում են անկրոնականություն և հավատացյալ մարդու համար այլևս անհնար են դարձնում զուտ կրոնական գիտակցությունը։

Սակայն կրոնի նկատմամբ հավատացյալ մարդու ցուցաբերած անտարբերությունը չէ, որ տագնապ է առաջացնում կրոնի գաղափարախոսների շրջանում։ Նրանց տագնապ է պատճառում այն հանգամանքը, որ կրոնի նկատմամբ հավատը կորցնելու հետ մեկտեղ նրանք, բնականաբար, անհավատ են դառնում «քրիստոնեական սոցիալիզմի» գաղափարների նկատմամբ, կոմունիզմի դեմ պայքարելու նրանց պլանների նկատմամբ։ Ահա այս պայմաններում «քրիստոնեական սոցիալիզմի» ավելի հեռատես ու հնարամիտ գաղափարախոսները փորձում են հարմարվել նոր պայմաններին, փոխել կոմունիզմի դեմ մղվող պայքարի ձևերն ու մեթոդները։ Այսպես, նրանցից ոմանք արդեն ոչ թե



ուղղակի ու բացեիբաց ժխտում են գիտական կոմունիզմը, այլ դիմում են ավելի նուրբ ձևերի։ Իրենց քննադատական դոկտրինային օբյեկտիվության բնույթ տալու համար նրանք խոսքով ընդունում են «կոմունիստական դոկտրինայի առանձին դրական մոմենտները»։ «Պետք է արձանագրել այն փաստը, որ պատմական մատերիալիզմը մեծ մասամբ անառարկելի փաստերի հավաքածու է,— գրում է կոմունիզմի «քրիստոնեական» մասնագետ, եպիսկոպոս Ա. Անսելը։ Ուստի,— շարունակում է նա,— եթե քրիստոնյաները ցանկանում են հաջողության հասնել հակակոմունիզմի բնագավառում, հարկավոր է խուսափել կոմունիզմի դեմ բաց ճակատով հանդես գալուց, նրա գաղափարները կասկածի տակ առնելուց։ Ընդհակառակը, երբեմն տեղին կլինի ընդունել կոմունիզմի գաղափարները, սակայն այդ դեպքում անհրաժեշտ է փորձ անել ցրելու դրանց նկատմամբ եղած վստահությունը։ Անհրաժեշտ է,— եզրակացնում է Անսելը,— դատողություններով ու փաստարկներով ցույց տալ, որ կոմունիզմն անզոր է երկրի վրա դրախտ ստեղծելու, չնայած որ խոստանում է այդ անել» (A. Ancel. Dogme et morale communistes, էջ 15)։

Անելով նման դատողություններ՝ նրանք ավելացնում են, որ գիտական կոմունիզմի ճշմարտություններն այնքան են հին, որքան և աստվածաշունչը, որ դրանք ամենևին էլ մարքսիստների հայտնագործությունները չեն։ Քրիստոնեությունը, հայտարարում են նրանք, նույնպես համընդհանուր հավասարության ու եղբայրության կողմնակից է, սակայն ի տարբերություն կոմունիզմի, քրիստոնեությունը այդ իդեալները ենթադրում է իրագործել ոչ թե կապիտալիստական հասարակության ռևոլյուցիոն սոցիալական վերափոխման, այլ բոլոր մարդկանց, անկախ նրանց դասակարգային պատկանելությունից, քրիստոնեական համընդհանուր եղբայրություն ներշնչելու միջոցով։ Այստեղից նրանք անում են այն եզրակացությունը, թե իբր դասակարգերի ու դասակարգային պայքարի մարքս-լենինյան ուսմունքը «հնացել» է, և չի համապատասխանում ներկա պայմաններին։ Հակամարտ դասակարգերի միջև այժմ իբր գոյություն ունի լիակատար ներդաշնակություն, ուստի և հարկ չկա դասակարգային պայքար մղելու, մանավանդ որ ինքը՝ կապիտալիզմը, վատն է եղել միայն անցյալում, իսկ այժմ այն կատարելապես փոխվել է։ «Անշուշտ կապիտալիզմը, ինչպիսին նա եղել է հարյուր կամ հիսուն տարի առաջ, վատն է,— գրում է «քրիստոնեական սոցիալիզմի տեսաբան» Լ. Սալերոն իր «Կաթոլիկությունը և կապիտալիզմը» գրքում,— սակայն այդպիսի կապիտալիզմ այլևս չկա» (L. Salleron. Les catholigues et le capitalisme, էջ 74)։ Կապիտալիստական հասարակությունն իբր ենթարկվել է փոփոխման, ձեռք է բերել նոր գծեր, դարձել է «ժողովրդական» և իր ընդերքից էլ սոցիալիզմ է ծնում, պահպանելով մասնավոր սեփականության ինստիտուտը, վերջինիս «դեմոկրատացման» պայմաններում։ Ավելին, այժմ «քրիստոնեական սոցիալիզմի» գաղափարախոսներն իրենց տեսությունը մոտեցրել են «ժողովրդական կապիտալիզմ» և «համընդհանուր բարօրության պետություն» դյուրավաճառ բուրժուական տեսություններին, չնայած որ չեն մերձեցվել վերջիններիս հետ, քանի որ նրանց ձեռնտու է իրենց ներկայացնել մի ինչ-որ «երրորդ ուժ», որը տարբերվում է թե՛ կապիտալիզմից և թե՛ կոմունիզմից։ Սակայն ինքը՝ դասակարգային պայքարի ու դասակարգային համերաշխության տրամաբանությունը, «քրիստոնեական սոցիալիզմի» գաղափարախոսներին համառորեն պարտադրում է որոշել իրենց տեղը այս կամ այն լագերում։ Այս պայմաններում, վերջնականապես չվարկաբեկվելու համար,

նրանք ստիպված են մանրել, զսպել իրենց կրքերը կապիտալիզմը գունազարդելու, բուրժուական շահագործողական կարգերը սրբագործելու հարցում։ Այսօր կապիտալիզմը այնքան է վարկաբեկել իրեն, որ հավատացյալների ու աշխատավոր մասսաների աչքում իրենց վերջնականապես չվարկաբեկելու համար «քրիստոնեական սոցիալիզմի» գաղափարախոսները հաճախ ստիպված դիմում են կապիտալիզմի քննադատությանը։ Ի՞նչ չի կարելի անել խորտակումից փրկվելու համար։ Այստեղ է ասված, որ նպատակը արդարացնում է միջոցը։

«Քրիստոնեական սոցիալիստների» «հակակապիտալիզմը» արտահայտվում է կապիտալիզմի մասնավոր «անկատարելությունների» դատապարտմամբ, որոնց հիմնական պատճառն, իբր, հանդիսանում է ունևոր դասի առանձին ներկայացուցիչների բարոյալքությունը, որոնք կուլ են գնացել «անսանձ ժլատությանը» և «էգոիզմին»։ «Քրիստոնեական սոցիալիստների» հակակապիտալիստական ողջ դարձվածաբանության համար որպես բնաբան կարելի է դնել Պիոս XI պապի հետևյալ բառերը. «Կապիտալիստական սիստեմը ներքուստ առողջ է, այն միմիայն աղավաղված է»։ Սակայն նրանց հակակապիտալիզմի դեմագոգիան հօդս է ցնդում, երբ այն բաղդատում ես այդ գաղափարախոսությամբ ղեկավարվող քաղաքական պարտիաների, միությունների և այլ կազմակերպությունների պրակտիկ գործունեության ու քաղաքականության հետ։ 1960 թվականի օգոստոսին Մյունխենում կայացավ կաթոլիկ հաղորդության եկեղեցու 37-րդ համաշխարհային կոնգրեսը։ Կոնգրեսին ներկա էին «քրիստոնեական-դեմոկրատական միության», «քրիստոնեական-սոցիալիստական միության» և այլ կղերական պարտիաների լիդերներ, պարտիաներ, որոնք կանգնած են իշխանության գլուխ մի շարք երկրներում (ԳԴՌ-ում, Իտալիայում, Բելգիայում, Իսպանիայում), կամ էլ կարևոր դեր են խաղում իրենց երկրի քաղաքական կյանքում. օրինակ, Ֆրանսիայում։ Կոնգրեսը ողջ աշխարհին և, առաջին հերթին՝ շարքային քրիստոնյաներին ցույց տվեց, որ կաթոլիկ եկեղեցու վերնախավը մերվել է Արևմուտքի ագրեսիվ խմբավորումների հետ։ Նրանք սրբագործում են մարդկության հանդեպ իմպերիալիստական ոտնձգությունները, պատրաստ են ակտիվ ծառայություն մատուցել դեմոկրատիայի ու խաղաղության ուժերի դեմ մղվող պայքարին։ «Քրիստոնեական սոցիալիզմի» գաղափարախոսների հակակապիտալիստական դեմագոգիան ժամանակակից իմպերիալիզմի սոցիալական տկարության յուրատեսակ քննադատությունն է աջից։ Սարսափելով պատմական զարգացման օբյեկտիվ տենդենցից, նրանք ձգտում են այն ետ դարձնել, որպես հասարակական իդեալ առաջ քաշելով վաղ քրիստոնյաների իդեալները, ամեն կերպ գունազարդելով դրանք։ Այս բանում նույնպես իր արտահայտությունն է գտնում «քրիստոնեական սոցիալիզմի» գաղափարախոսության հակապատմական, ռեակցիոն բնույթը։

Նույնքան կեղծ ու անհամոզեցուցիչ են «քրիստոնեական սոցիալիզմի» գաղափարախոսների փորձերը՝ սոցիալական անբարեկարգությունները, չարն ու անտագոնիզմը ներկայացնելու որպես մարդու բնույթին հատուկ արատների՝ էգոիզմի, սնապարծության, ծուլության և այլնի արդյունք։ Հանդես գալով պատմության ընթացքի մատերիալիստական ըմբռնման դեմ, նրանք ճառում են այն մասին, թե իբր ներքին ինքնակատարելագործման միջոցով միայն մարդը կկարողանա մեղքերից ազատվել ու ձեռնամուխ լինել արդար հասարակարգ հաստատելու գործին։ Ստացվում է, որ, իբր, բավական է կապիտալիստի ու բանվորի, շահագործողի ու շահագործվողի գիտակցությանը հասցնել քրիս-



տոնեական սիրո գաղափարները, որպեսզի կապիտալիստական հասարակարգում տիրի արդարություն ու համընդհանուր եղբայրություն։ Իսկ ի՞նչ եղանակով են «քրիստոնեական սոցիալիզմի» գաղափարախոսները փորձում համատեղել անհամատեղելին, հաշտեցնել երկու հակադիր փիլիսոփայական սկզբունքների վրա հիմնված գաղափարախոսությունները։ Այդ բանին նրանք փորձում են հասնել շատ հասարակ ձևով։ Քանի որ նրանք լուրջ կերպով մտադիր չեն համաձայնել կոմունիզմի հետ, այլ այդ անում են միմիայն հավատացյալներին թյուրիմացության մեջ գցելու համար, դիմում են ոչ այնքան բարդ պրիոմի։ Մի կողմից ֆալսիֆիկացման են ենթարկում կոմունիզմը, անտեսում գիտական կոմունիզմի այն դրույթները, որոնք մերժում են աշխարհի վերաբերյալ կրոնական տեսակետները, մյուս կողմից՝ գունազարդում կրոնը։ Շատ հաճախ էլ կամայականորեն մեկնաբանելով կրոնի բարոյա-էթիկական դրույթները, նրանք փորձում են ապացուցել վերջիններիս մոտիկությունը կոմունիստական բարոյականության սկզբունքներին։

Դժվար չէ նկատել, որ նման ճանապարհներով նրանք փորձում են քողարկել սոցիալ-քաղաքական, դասակարգային անտագոնիզմի իրական պատճառները։ Հենվելով կրոնական աշխարհայացքից բխող զուտ վերացական ու արտաժամանակային կատեգորիաների վրա, «քրիստոնեական սոցիալիզմի» գաղափարախոսներն առաջ են քաշում սոցիալական պրոբլեմների լուծման խաբուսիկ ուղիներ, ամեն կերպ թերագնահատելով ու անտեսելով անհատի ազատագրման ու զարգացման համար անհրաժեշտ նյութական, սոցիալ-տնտեսական պայմանները։ Թե ինչ արդյունքների են հասնում «քրիստոնեական սոցիալիզմի» գաղափարախոսները, անտեսելով այդ պայմանները, դժվար չէ հասկանալ մտաբերելով, այսպես կոչված, «բանվոր առաքյալների» կամ «բանվոր քահանաների» վերջերս ձախողված տխրահռչակ շարժումը Ֆրանսիայում, որով նրանք փորձում էին բանվորներին «զսպել», նրանց «վերակատարելագործման» ու «ինքնազոհաբերման» քարոզներով։ Որպեսզի այդ քարոզները արձագանք գտնեին բանվորների սրտում, «քրիստոնեական սոցիալիզմի» ավելի ճարպիկ ու խորամանկ գաղափարախոսները բնակություն հաստատեցին Փարիզի, Մարսելի և այլ քաղաքների բանվորական թաղամասերում՝ նրանց կենցաղը մոտիկից ուսումնասիրելու նպատակով։ Նրանցից շատերն էլ աշխատանքի տեղավորվեցին գործարաններում ու ֆաբրիկաներում որպես շարքային բանվորներ, նպատակ ունենալով ցրել այն կարծիքը, թե քահանաներն ապրում են բանվորների հաշվին ու ապացուցել, որ իրենք ևս ընդունակ են քրտինքով հաց վաստակելու։ Նրանց խորին համոզմամբ միայն այս ճանապարհով է հնարավոր «ինքնազոհաբերության» օրինակ հանդիսանալ։

Եվ ի՞նչ։ Շատ շուտով ինքը՝ Հովհան XXIII պապը կատեգորիկ կերպով կարգադրեց անհապաղ դադարեցնել «աստծո պարտիզանների» (այդպես էր բանվոր քահանաներին անվանակոչում բուրժուական մամուլը) շարժումը, և ահա թե ինչու։ Այդ շարժման ոգեշնչողներն ու ձեռնարկողները շուտով հասկացան, թե ինչ ճակատագրական սխալ են իրենք գործել, թույլ տալով քահանաներին շփվել բանվորների հետ։ Եպիսկոպոս Ա. Անսելը համոզվեց, որ «այդ առթիվ չպետք է պատրանքներ ունենալ։ Մատերիալիզմի ազդեցությունը բանվոր դասակարգի վրա այնքան ուժեղ է ու գործուն, որ նույնիսկ այնպիսի ավանդական սովորություններ, ինչպես՝ կնունքը, հաղորդությունը, ամուսնության ու հուղարկավորության եկեղեցական արարողությունները, սկսում են

ամենուրեք անհետանալ։ Խոսում են կրոնական վախի ու աստծո կարիքն զգա-
լու մասին,— շարունակում է Անսելը,— սակայն ով էլ որ լինի բանվորական
միջավայրում, ստիպված կլինի նկատել, որ ոչ «վախը», ոչ էլ այդ «կարիքը»
այլևս հատկանշական չեն մասսաներին» (A. Ancel. Dogme et morale commu-
nistes, էջ 59)։ «Բանվոր քահանաների» շարժման ոչ պակաս եռանդուն կազ-
մակերպիչներից մեկը՝ կարդինալ Սույուարտը խոստովանում է, որ ո՛չ միայն
բանվորները, այլև շատ դեպքում իրենք՝ քահանաները կապերը խզել են կրոնի
հետ, ամուսնացել են ու մասնակից դարձել բանվորների վիճակը բարելավելու
համար մղվող պայքարին։ Իսկ Թուլուզայի արքեպիսկոպոս կարդինալ Սալյե-
ժիին վրդովել է այն հանգամանքը, որ հավատացյալ բանվորները, փոխանակ
մարքսիստներին քրիստոնյա դարձնելու, իրենք դարձան մարքսիստներ։

Այս և նման այլ սոցիալական էքսպերիմենտների ձախողումը ամենևին էլ
չսառեցրեց նրա կազմակերպիչների եռանդն ու կրքերը։ Բանվոր դասակարգի
վրա հարձակումը շարունակվում է քրիստոնեական բազմաթիվ կազմակերպու-
թյունների ու միությունների, «սոցիալական շաբաթների», «սուրբ աթոռի» արհ-
միությունների օժանդակությամբ։ Ներթափանցելով բանվորական շրջանները,
նրանց ներկայացուցիչները բանվորներին դիմում են «մերձավորի նկատմամբ
սիրո», «եղբայրության», «արդարության», «հավասարության» քարոզներով,
ինչպես նաև նրանց համար նյութական ու բարոյական առատ բարիքների,
«անհատի բարգավաճման» ամենալավագույն պայմաններ ստեղծելու երաշ-
խիքներով։ Նման քարոզները զուգակցվում են անհատի պրոբլեմի մարքսիս-
տական անալիզի հերքմամբ, նրան նոր պայմաններին համապատասխան
քրիստոնեական մեկնաբանմամբ։ Անհատի սոցիալ-քաղաքականության ու սո-
ցիոլոգիայի հարցերին նվիրված «քրիստոնեական սոցիալիզմի» տեսաբաննե-
րի ուսումնասիրությունները, որոնք հրամցվում են բանվոր դասակարգին,
խարսխվում են ժամանակից ու տարածությունից դուրս, հասարակական,
արտադրական հարաբերություններից հեռու գտնվող, սակայն դրա փոխարեն
միստիկական «բնական իրավունքից», «աստվածային օրենքից» բխող մի
շարք առանձնահատկություններով օժտված անհատի պրոբլեմի թեոլոգիական
մեկնաբանումների վրա։ Քանի որ մարդը աստվածային արարչագործության
արդյունք է, դատում են նրանք, ապա նրա անձը նույնպես աստվածային է, նրա
վարքի օրենքները (բարոյականությունը) հավերժ են ու արմատակալված նրա
կրոնական հավատի մեջ։ Քանի որ մատերիալիզմը մերժում է մարդու աստ-
վածային ծագումը, հետևաբար այն վերացնում է անհատին, հավասարության
նշան է դնում մարդու և կենդանու միջև։ Քրիստոնեության հանրահայտ տեսա-
բան Ժ. Մարիտեն, կրկնելով կոմունիզմի թշնամիների տրադիցիոն հերյու-
րանքը, գրում է, որ կոմունիզմը «կոլեկտիվի» ազատագրումով հետին պլանի
վրա մղեց ու նույնիսկ ամբողջովին մոռացության տվեց անհատի մարդկային
արժանապատվությունը (J. Maritain. Confession de foi, էջ. 27—28)։ Սոցիա-
լիզմը, որ պրակտիկայում ստեղծել է անհատի հոգեկան ու ֆիզիկական բար-
գավաճման ամենալավ պայմանները, որն անսահման հնարավորություններ է
ստեղծել յուրաքանչյուր անհատի բոլոր ուժերի ու ձիրքերի գործադրման ու
զարգացման համար, մեղադրվում է անհատի իրավունքները մոռացության
տալու մեջ։

Կոմունիզմի հասցեին նման հերյուրանքներն ավելի հաճախ ու եռանդով են
տարածում «քրիստոնեական սոցիալիզմի» առավել ռեակցիոն գաղափարա-



խոսները։ Սակայն այս պարադոքսներն էլ ունեն իրենց տրամաբանությունը։
Իմպերիալիստական բուրժուազիան միշտ, և հատկապես այժմ, աչքի է ընկնում
իր մարդատյաց գաղափարախոսությանն ու պրակտիկ գործունեությանը ազա-
տության, հավասարության ու եղբայրության հումանիստական զգեստավորում
տալով։ Այժմ բուրժուական աշխարհում հատկապես հաճախ է օգտագործվում
«հումանիզմ» բառը։ Հանուն «հումանիզմի» ու նրա աթեիստ հակառակորդ-
ների դեմ պայքարի, վերածնվում է հիտլերյան վերմախտը, ագրեսիա է պատ-
րաստվում ազատասեր Կուբայի դեմ, տեռորի է ենթարկվում Ալժիրի ժողովուրդը։
Հանուն «հումանիզմի» փորձ է արվում արյան մեջ խեղդել Կոնգոյի երիտա-
սարդ ռեսպուբլիկան, օրհնվում են լրտեսները, դիվերսանտները, ապառազի-
նության մրցավազքի պաշտպանները։ Կարճ ասած, կապիտալիզմը որքան հա-
կահումանիստական է դառնում, որքան կոպիտ կերպով է նա ոտնահարում
ժողովուրդների անկախությունը և ճնշում մարդու ազատությունն ու կամքը,
այնքան բարձր են աղմկում նրա գաղափարախոսները «մարդասիրության»,
մարդու ու ժողովուրդների իրավունքները «պաշտպանելու» մասին։ Այստեղից
էլ բխում են հումանիզմի հասկացողությունը սոցիալ-քաղաքական իմաստից
զրկելու նրանց ճիգերը։ Այս հարցում ևս նրանք մեծ հույսեր են կապում «քրիս-
տոնեական սոցիալիզմի» գաղափարախոսների հետ։ Զրկելով անհատին սո-
ցիալական միջավայրից ու վերածելով նրան մի ինչ-որ անժամանակ ու
անտարածական աբստրակցիայի, «քրիստոնեական սոցիալիզմի» գաղափարա-
խոսները մարդուն ևս պատկերում են որպես վերացական ու միստիկական
հատկություններով օժտված էակ։ Անհատի կրոնական այս միստիֆիկացման
իմաստն այն է, որ դասակարգային պայքարի գաղափարը փոխարինվի «համ-
ընդհանուր սիրո», «արդարության» և այլ աբստրակտ հասկացողություններով։
Աշխատավորությանը ներշնչվում է, որ հասարակությունը ռևոլյուցիոն ճանա-
պարհով վերափոխելու ձգտումները մեղսագործություն են, որ երկրի վրա ար-
դարության կարելի է հասնել միայն ու միայն կրոնա-բարոյական վերածնու-
թյամբ և հասարակական-քաղաքական կյանքը քրիստոնեական բարոյականու-
թյան սկզբունքներին ենթարկելով։

Կյանքը լրիվ հերքեց ու հերքում է նման պնդումները։ Սոցիալիզմի հաղ-
թանակը մեր երկրում ապացուցում է «քրիստոնեական սոցիալիզմի» գաղա-
փարների, անհատի մասին կրոնական կոնցեպցիաների ողջ սնանկությունն ու
ռեակցիոն էությունը։ Միայն իշխանությունը բանվոր դասակարգի ձեռքն անց-
նելու, մասնավոր սեփականության ու կապիտալիստական շահագործման
ոչնչացման, արտադրության միջոցների հանրային սեփականության հաստատ-
ման շնորհիվ է, որ աշխատանքը ծանր պարհակից, ինչպիսին է նա կապիտա-
լիզմի օրոք, սոցիալիզմի օրոք դարձել է պատվի, արիության ու քաղաքացիա-
կան պարտքի գործ։ Ոչ թե քրիստոնեական բարոյականության սկզբունքներին
հետևելով, այլ պատմական սոցիալական նվաճումների՝ շահագործումից,
գործազրկությունից և աղքատությունից, սեռի, ծագման, ազգության, ռասայի
հատկանիշներով եղած խտրականությունից ազատագրվելու շնորհիվ է, որ
պայմաններ են ստեղծվում անհատի բազմակողմանի զարգացման համար։
Մարքսիզմը սովորեցնում է, որ անհատի իսկական ազատություն գոյություն
ունի միմիայն այնտեղ, ուր վերջ է տրվել մարդու կողմից մարդու շահագործ-
մանը, ուր չկա գործազրկություն ու աղքատություն։ Սոցիալիզմի հաղթանակը

*մեր երկրում վառ ապացույց է անհատի մասին մարքսիզմի դրույթների ճշմարտացիության ու նույն հարցում «քրիստոնեական սոցիալիզմի» գաղափարախոսության սնանկության։*

***

*Իմպերիալիզմը թևակոխել է իր մայրամուտի ու կործանման ժամանակաշրջանը, թևակոխել է ճգնաժամի նոր էտապը։ Կապիտալիզմի ճգնաժամի արտահայտություններից մեկն էլ հավատացյալ լայն մասսաների դժգոհության աճն է բուրժուազիային ակտիվ աջակցություն ցույց տալու, նրան պաշտպանության տակ առնելու՝ եկեղեցու քաղաքականության դեմ։ Հակառակ բանադրանքի ու պապական սպառնալիքների, օրեցօր աճում է հավատացյալների կատեգորիկ պահանջը՝ բանակցությունների մեջ մտնել կոմունիստների հետ, արգելել ջերմամիջուկային զենքը, պայքարել խաղաղության, սոցիալական առաջադիմության համար։ Հավատացյալներն ավելի ու ավելի են ներգրավվում համադեմոկրատական սոցիալիստական շարժումների ոլորտը։ Կապիտալիստական երկրների կոմունիստներն անշեղորեն կատարելով լենինյան պատգամներն այն մասին, թե կրոնի դեմ պայքարը ինքնանպատակ գործ չէ, որ «...ճնշված դասակարգի մղած այդ, իսկապես ռևոլյուցիոն, կռվի միասնականությունն ավելի կարևոր է մեզ համար, քան պրոլետարների կարծիքների միասնականությունը երկնային դրախտի մասին» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 10, էջ 97), — բոլոր հավատացյալ աշխատավորությանը կոչ են անում համատեղ պաշտպանել խաղաղությունը, առաջադիմությունը, ժողովուրդների միջև եղբայրությունը, լայն մասսաների արմատական շահերը, անդուլ պայքար մղել հանուն մարդկության դարավոր երազանքի՝ կոմունիստական հասարակարգի կառուցման, որտեղ կթագավորեն Խաղաղությունը, Աշխատանքը, Ազատությունը, Հավասարությունը, Եղբայրությունը։ «Մարդկությունը կապիտալիզմից կարող է անմիջականորեն անցնել միայն սոցիալիզմին... գրել է Վլադիմիր Իլյիչ Լենինը Մեծ Հոկտեմբերի նախօրյակին։ Կոմունիստները պետք է գիտենան,— ուսուցանում էր Լենինը, որ բոլոր դեպքերում ապագան պատկանում է իրենց...»։ Կոմունիզմի կառուցումը մեր երկրում կհաղթանակի մարդկային ստեղծագործ աշխատանքի ու բանականության շնորհիվ։ Որքան բարձր լինի հասարակության անդամների գիտակցությունը, որքան ավելի լրիվ ու ընդարձակ ծավալվի նրանց ստեղծագործական ակտիվությունը, այնքան ավելի արագ ու հաջող կկենսագործվի կոմունիզմի կառուցումը։ Որքան հաջող ընթանա գիտական, կոմունիստական, աթեիստական աշխարհայացքի համար սովետական մարդկանց պայքարը, այնքան հաջող կլինի ՍՄԿՊ պատմական XXII համագումարի որոշումների կենսագործումը։*

---

# Ա. Ի. ԳԵՐՑԵՆ

(Ծննդյան 150–ամյակի առթիվ)

## *Ա. ԲՋՆՈՒՆԻ*

> Կործերումս ճուռ, մենք անձնուրացորեն ընթանում էինք՝ գլուխներս բարձր պահած: Անկեղծ ու անվերապահ անձնատուր լինելով ամեն հրապույրի, մենք արձագանքում էինք յուրաքանչյուր կոչի: Թեև մեր ընտրած ուղին դժվարին էր, բայց երբեք չենք շեղվել դրանից. մենք ընթանում էինք վիրավոր, բեկված և բոլորի առջևից:
>
> Ա. Ի. ԳԵՐՑԵՆ

*Դեկաբրիստների ապստամբությունից հետո երկաթե գոտեկապերով ճզմըված Ռուսաստանը հեծում էր բռնապետական ռեժիմի ներքո։ Եֆրեյտորական մուշտրայի երկրպագու, սահմանափակ մտավոր կարողությունների տեր Նիկոլայ I-ը դեմոկրատական շարժման և ազատամտության հետապնդումն իր կյանքի նշանաբանն էր դարձրել։ Երկրում հաստատվել էր ռազմա-ոստիկանական դերիշխանություն։ Անարգել շառաչում էր կազակի մտրակը, լրիվ բեռնվածությամբ աշխատում տխրահռչակ III բաժանմունքը։ Լրտեսումն ու մատնությունները քաղաքացիական առաքինությունների շարքն էին դասվել, տանջանքը փոխարինել էր արդարադատությանը։ Դեկտեմբերի 14-ի առաջին զոհերից հետո հարյուրավոր մարդիկ՝ իրենց մտքերի ու համոզմունքների համար, տաժանավայր կամ աքսոր ուղարկվեցին։ Աչքի ընկնող շատ ազնվական ընտանիքներ հարված էին ստացել, թեև ահ ու սարսափից ազդված՝ համարձակություն չունեին բարձրաձայն ողբալու իրենց թանկագին կորուստը։ Սակայն Սիբիր աքսորված նահատակների հետևից որպես օրհնանք ու ողբ հնչեցին մեծ պոետի մարգարեական խոսքերը.*

«Հպարտ տարեցեք, ո՜վ աքսորյալներ,
Խավար հանքերում հեռու Սիբիրի,
Չի՛ կորչի իզուր աշխատանքը ձեր
Ու ձգտումները ձեր վեհ մտքերի»:

*Հիրավի դեկաբրիստների առատորեն թափած արյունն ապարդյուն չանցավ։ Նրանց վեհ մտքերի սերմերը փարթամ ծիլեր արձակեցին։*

*Թնդանոթների որոտը, որ դեկտեմբերի 14-ին ցնցել էր Ռուսաստանի մայրաքաղաքը, մի ամբողջ սերունդ արթնացրեց։ Այդ անձնվեր սերնդի փայլուն, տաղանդավոր ներկայացուցիչն էր ականավոր մտածող ու ռևոլյուցիոներ Գերցենը՝ ռուսական դեսպոտիզմի դեմ մղվող պայքարի խիզախ մարտիկը, որի ծննդյան հարյուր հիսուն տարին երախտագիտությամբ նշում է սովետական ժողովուրդը։*

*Գերցենը Ռուսաստանի ռևոլյուցիոն-դեմոկրատական շարժման պատմու-*

թյան շողշողուն գագաթներից մեկն է։ Նա իր ամբողջ կյանքում հավատարիմ էր ռուս ժողովրդի ազատագրման գործին և մինչև կյանքի վերջը մնաց որպես «անուղղելի սոցիալիստ», ինչպես մեկ անգամ անվանել էր ինքն իրեն։

***

Ալեքսանդր Իվանովիչ Գերցենը ծնվել է 1812 թվականի ապրիլի 6-ին (նոր տոմարով) ռուս հարուստ ազնվական Ի. Ա. Յակովլևի ընտանիքում։ Նրա ծնողների՝ Ի. Ա. Յակովլևի և Լ. Ի. Հաագի ամուսնությունը օրինականացված չէր և այս դրությունը, ինչպես ավելի ուշ նկատել է Ա. Ի. Գերցենը՝ անդրադառնալով իր մանկությանը, նպաստել էր ինքնուրույն և քննադատական վերաբերմունքին շրջապատի նկատմամբ։ Իհարկե, միայն այս կողմը բավական չէր լինի Գերցենին տիրող կարգերի գիտակցական և անհաշտ թշնամի դարձնելու համար, որովհետև հայրը՝ Ի. Ա. Յակովլևը, ըստ ամենայնի, հոգ էր տանում ժառանգի ազնվական պատշաճ դաստիարակության և փայլուն կարիերայի մասին։

Դիտունակ և զգայուն երեխա լինելով՝ Գերցենը վաղ հասակից նկատեց երկու մեկուսացած աշխարհների գոյության այն անհավասարությունը, որ առկա էր շրջապատող մարդկանց՝ ճորտ ծառաների և նրանց ազնվական տերերի միջև։ Ճորտ գյուղացիների կախյալ և ծանր վիճակն անհաղթահարելի ատելություն առաջացրեց Գերցենի մեջ ամեն մի ստրկության ու կամայականության հանդեպ։

Պատանի Գերցենի վրա առանձնապես մեծ տպավորություն թողեցին դեկաբրիստների անհաջող ապստամբությունը և դրա սոսկալի հետևանքները։ «Յասումի, դատաստանի պատմությունները,— հիշում է այս մասին Գերցենը,— Մոսկվայում տիրող սարսափը խիստ խոցեցին ինձ. իմ առաջ բացվում էր նոր աշխարհ, որը գնալով ավելի ու ավելի էր դառնում իմ ամբողջ բարոյական գոյության կենտրոնը. չգիտեմ, թե ինչպես եղավ այդ, բայց... զգում էի, որ ես այն կողմը չեմ՝ թնդանոթների ու հաղթանակների, բանտերի ու շղթաների կողմը։ Պեստելի և նրա ընկերների մահապատիժը վերջնականապես արթնացրեց իմ հոգին մանկական նիրհից» (Ա. Ի. Գերցեն, «Եղելություններ ու խոհեր», գիրք Ա, Հայպետհրատ, 1952 թ., էջ 65)։

Գերցենի գրական հետաքրքրությունը բխում էր նույն գաղափարական ակունքներից։ Արևմտաեվրոպական գրողներից՝ Գյոթեի, Շիլլերի, Վոլտերի, Բոմարշեի երկերը, իսկ ռուսական գրականությունից առանձնապես Պուշկինի և Ռիլեևի ազատասեր ոտանավորները համահնչուն էին նրա նվիրական ձգտումներին։ Գրական հերոսներ Կառլ Մոորը, Մարկիզ Պոզան, ինչպես նաև հանուն ժողովրդի ազատության իրենց կյանքը զոհած դեկաբրիստները վառ լուսարձակի նման ողողում էին երկու անբաժան ընկերների՝ Գերցենի և Օգարյովի պատանեկան երազանքները։

1829 թվականին Գերցենն ընդունվում է Մոսկվայի համալսարանի ֆիզիկո-մաթեմատիկական ֆակուլտետը։ Ուսուցման տարիները նրա քաղաքական հայացքների կազմավորման ժամանակաշրջանն են եղել։ 1830 թ. ռևոլյուցիոն դեպքերը Ֆրանսիայում և Բելգիայում, Լեհաստանի ապստամբությունը, այնուհետև սեն-սիմոնիստների գրքերն ու քարոզները, նրանց պրոցեսը անջնջելի տպավորություն են թողնում Գերցենի և Օգարյովի վրա։

Այս դեպքերի զարգացման ազդեցության ներքո երիտասարդական մշուշապատ ռևոլյուցիոն ռոմանտիզմն իր տեղը զիջում է սոցիալական-քաղաքական ռևոլյուցիոն աշխարհայացքին, որի հիմքում դրվեցին սեն-սիմոնիզմի գաղափարները։ Գերցենի և Օգարյովի շուրջը համախմբված համալսարանական քաղաքական խմբակի համար սեն-սիմոնիզմը հայտնություն էր, որն ազդարարում էր մարդկային նոր հարաբերությունների մի ամբողջ աշխարհ։ Չնայած իր թերություններին, սեն-սիմոնիստական սոցիալիստական քարոզը մարդկանց հավասարության մասին, կնոջ ազատագրման, մարմնի ռեաբիլիտացիայի մասին, ոգևորում էր խմբակի անդամներին՝ ատելություն կոփելով





կամայականության, ստրկության բոլոր ձևերի նկատմամբ։ Հասարակության վերափոխումը դարձավ նրանց քաղաքական դավանանքը։

Այսպես՝ վառ հույսերով լի Գերցենը կյանք է մտնում Մոսկվայի համալսարանն ավարտելուց հետո։ Ինքնուրույն կյանքի առաջին իսկ քայլերից Գերցենը բախվում է նիկոլաևյան բիրտ իրականության հետ։ Ժանդարմների աչքից չի վրիպում Գերցենի ռևոլյուցիոն աշխատանքը, 1834 թվականին նրան բանտարկում և աքսորում են սկզբում՝ Պերմ, իսկ այնուհետև՝ Վյատկա և Վլադիմիր։ Նույն վիճակին է արժանանում նաև Օգարյովը։ Միայն 1840 թվականին արդեն ամուսնացած Գերցենը վերադառնում է աքսորից՝ հարստացած դեսպոտական կարգերի ճանաչման դառը փորձով և ամբողջությամբ սուզվում հասարակական - քաղաքական կյանքի հորձանուտը։ Շուտով Գերցենը նորից աքսորվում է, այս անգամ Նովգորոդ, որտեղից նա Մոսկվա է վերադառնում 1842 թ.։ Համալսարանում և աքսորում անցկացրած տարիները, այնուհետև ետաքսորյան շրջանը ընդհուպ մինչև Ռուսաստանից հեռանալը՝ 1847 թ., ռևոլյուցիոներ Գերցենի հոգեկան ուժերի զարգացման արգասավոր շրջանն է հանդիսանում։

***

Գերցենի և Օգարյովի համալսարանական խմբակը՝ ի տարբերություն Ստանկևիչի խմբակից, ուներ գրեթե բացառապես քաղաքական ուղղություն։ Մինչդեռ Գերցենի շուրջը համախմբված երիտասարդները տոգորված էին Ռուսաստանը վերափոխելու գաղափարով և մտովին բարձրանում էին նահատակության Գողգոթան, Ստանկևիչը հրապուրել էր ընկերներին գերմանական իդեալիստական փիլիսոփայության անանցանելի թավուտներով, հանձին Հեգելի փիլիսոփայության։ Ի թիվս այլոց այդ խմբակի անդամ էր նաև Վ. Գ. Բելինսկին։

Մոլեռանդ հեգելականները գիշերներ էին լուսացնում՝ մեկնաբանություններ թխելով «Ֆենոմենոլոգիայի» և «Լոգիկայի» մշուշապատ կետերի շուրջը։ Հրապուրվելով Հեգելի փիլիսոփայությամբ, այդ խմբակի անդամները՝ «Իրավունքի փիլիսոփայության» հեղինակի հետևից գնալով հաշտություն էին քարոզում գոյություն ունեցող իրականության նկատմամբ համաձայն հեգելյան այն դրույթի, թե ինչ բանական է, այն իրական է, և ինչ իրական է, այն բանական է։

Դա արդեն անտանելի էր ռևոլյուցիոներ Գերցենի համար և նրանց միջև բորբոքվեցին ամենակատաղի վեճեր։ Հենց այդ վեճերն էլ ստիպեցին, որ Գերցենն ընդհուպ զբաղվի փիլիսոփայությամբ և մասնավորապես Հեգելի ուս-

մունքով։ Եվ ահա թե ինչպիսի եզրակացության հանգեց Գերցենը։ «Երբ ես վարժվեցի Հեգելի լեզվին,— պատմում է նա,— երբ տիրապետեցի նրա մեթոդը, ես սկսեցի տեսնել, որ Հեգելը շատ ավելի մոտ է մեր աշխարհայեցողությանը, քան նրա հետևորդների աշխարհայեցողությանը. այսպես է նա առաջին երկերում, այդպես էլ ամենուրեք, որտեղ նրա հանճարը կրծել է սանձը և սլացել առաջ, մոռանալով «Բրանդենբուրգյան դարբասները»։ Հեգելի փիլիսոփայությունը ռևոլյուցիայի ալգեբրան է, այն արտասովոր կերպով ազատում է մարդուն և քարը քարին չի թողնում քրիստոնեական աշխարհից, հնացած ավանդությունների աշխարհից» (Ա. Ի. Գերցեն, «Եղելություններ և խոհեր», գիրք Ա, էջ 404—405)։

Ըմբռնելով հեգելյան փիլիսոփայության գործուն ռևոլյուցիոն ոգին, Գերցենը՝ քննադատելով նիկոլաևյան իրականության արդարացման կողմնակիցներին, շատ նուրբ կերպով նկատում է, որ եթե երևան են գալիս ճորտատիրության դեմ պայքարող ուժեր, հետևաբար այդ պայքարը բանական է և արդարացված։

Գերցենի մատերիալիստական հայացքների զարգացման գործում խոշոր դեր է խաղացել Լ. Ֆոյերբախի «Քրիստոնեության էությունը» նշանավոր գիրքը, որի հետ նա ծանոթացավ աքսորում։ Այդ գիրքն արտասովոր տպավորություն թողեց աքսորականի վրա։ Ֆոյերբախի փիլիսոփայական գաղափարները օգնեցին Գերցենին, որ նա հաշիվները մաքրի հեգելյան փիլիսոփայության հետ և, հաղթահարելով վաղեմի կրոնական պատկերացումները, վճռականապես զարգացնի իր մատերիալիստական աշխարհայացքը։

Այդ շրջանում Գերցենը գրում է այնպիսի նշանավոր փիլիսոփայական աշխատություններ, ինչպիսիք են՝ «Դիլետանտիզմը գիտության մեջ» (1842—1843) և «Նամակներ բնության ուսումնասիրության մասին» (1844—1845), որոնք խոշոր ավանդ են Ռուսաստանի մատերիալիստական փիլիսոփայության զարգացման պատմության մեջ։ «Դիլետանտիզմը գիտության մեջ» աշխատությունը բացահայտում է Գերցենի աթեիստական-մատերիալիստական աշխարհայացքը, որ նա կռել-կոփել էր հեգելականության, «պաշտոնական ժողովրդայնության» և սլավյանոֆիլների գաղափարախոսության դեմ մղած պայքարում։ Այդ անողոք պայքարի դրոշմը զգացվում է ամբողջ շարադրության ընթացքում։

Հիմնական փիլիսոփայական ելակետը Գերցենի համար ռեալ բնությունն է և ոչ թե այնկողմնային աստվածային ուժը։ «Փաստական աշխարհը,— ասում է նա,— անշուշտ գիտության հիմքն է հանդիսանում։ Այն գիտությունը, որը չի հենվում բնության, փաստերի վրա՝ դիլետանտների հենց մշուշապատ գիտությունն է» (А. И. Герцен, Собр. соч. т. III, էջ 6)։

Ամբողջապես «գործունեությունից հյուսված» Գերցենը հզոր հարվածներ է հասցնում մշուշապատ իդեալիստական փիլիսոփայությանը, որը պարփակված իր անկենդան տրամաբանական աբստրակցիաների շրջանակներում, խուսափում էր մարդկանց անիծյալ հարցերին պատասխան տալուց։ Գերցենի կրծքում բաբախում էր բռնության և անարդարության դեմ պայքարող մարտիկի անվեհեր սիրտը և նա պահանջում էր, որ գիտությունը, նախ և առաջ նպաստի մարդկանց բարօրությանը։ Մարդը չի կարող հրաժարվել հասարակական գործողությանը մասնակցելուց, դա նրա պատմական կոչումն է, և փիլիսոփայությունը պետք է ելք գտնի դեպի մարդկանց գործողությունը։ Գերցենը նշում է, որ միայն գործողությունը կարող է լիապես բավարարել մարդուն։ Երբ Դանթեն մուտք գործեց այն վայրը, որտեղ ոչ լաց կա ոչ հառաչանք, երբ տեսավ դրախտի անարյուն մարդկանց, նա համոզվեց, որ այդ եթերային էակները օտար են իրեն և շտապեց վերադառնալ տանջանքի անցավոր աշխարհը։ «Գործողությունը թեորիայի և պրակտիկայի կենդանի միասնությունն է»,— կրկնում է Գերցենը Արիստոտելի խոսքերը։ Այդ կռահում էր նաև Հեգելը, բայց նա չի ուզում գժտվել իրականության հետ, չի խոստովանում բոլոր հետևանքները։ Գերցենը կծու հեգնանքով է խոսում հեգելյան փիլիսոփայության այն կողմնակիցների մասին, որոնք փորձում են ապացուցել, թե ներկայիս փիլիսո-



փայությունը աբսոլյուտ փիլիսոփայություն է, երբ ամեն ինչ արդեն ճշտորեն բացատրված է, հետևաբար, մարդկությունը հասել է կեցության աբսոլյուտ ձևին։

Ըստ Գերցենի, փիլիսոփայության բովանդակությունը մարդուն շրջապատող իրական կյանքն է։

«Նամակներ բնության ուսումնասիրության մասին» Գերցենի մյուս փիլիսոփայական աշխատությունը նույնպես շարադրված է հեղինակին հատուկ գրական փայլով և անզուգական սրամտությամբ։ Ճիշտ է, այս գրվածքում էլ Գերցենը հաճախ տուրք է տալիս հեգելյան տերմինաբանությանը, նույնիսկ որոշ դեպքերում առանձին հարցեր իդեալիստորեն է մեկնաբանում։ Սակայն փիլիսոփայության հիմնական պրոբլեմների՝ մտածողության և բնության փոխհարաբերության, բնության օբյեկտիվության, իմացության մեթոդի և այլնի հարցադրման ու լուծման, ինչպես նաև Բեկոնի, Լոկկի, Դեկարտի, Յումի, Հեգելի և այլ փիլիսոփաների ուսմունքների շարադրման ընթացքում Գերցենը հստակորեն պարզաբանում է իր մատերիալիստական հայացքները։ «...Մարդկանց ըմբռնողությունը,— պնդում է Գերցենը,— բնությունից դուրս չէ, այլ բնության ըմբռնումն է իր մասին..., մտածողության օրենքները կեցության գիտակցված օրենքներն են» (Նույն տեղը, էջ 111),— և այնուհետև. «...Գիտակցությունը ամենևին էլ կողմնակի բան չէ բնության համար, այլ նրա զարգացման բարձրագույն աստիճանը... Որտեղի՞ց և ինչպե՞ս,— հարցնում է Գերցենը,— կարող է ի հայտ գալ բնության համար կողմնակի և, հետևաբար, առարկային խորթ գիտակցությունը» (էջ 126—127)։

«Նամակներ բնության ուսումնասիրության մասին» գործում Գերցենը առանձնակի ուժով ընդգծում է փիլիսոփայության և բնագիտության սերտ կապի անհրաժեշտությունը։ Այն փիլիսոփայությունը, որը չի հենվում փորձնական գիտությունների արդյունքների վրա, կորցնում է իր գիտական բնույթը, խեղդվում իդեալիստական աբստրակցիաներում և, ընդհակառակը, հենց որ բնագետները փաստերի հավաքումից և նկարագրումից անցնում են ընդհանրացման և բացատրությունների բնագավառը, չեն կարող առաջ շարժվել առանց փիլիսոփայական կատեգորիաների օգնության։ Գերցենը արդարացի կերպով նկատում էր, որ մարդկանց բնախոսությամբ չի կարելի բացատրել սոցիալական կյանքը, բայց քննադատելով մետաֆիզիկական մատերիալիզմը՝ նա անկարող եղավ հասկանալու մարդկային հասարակության զարգացման շարժիչ ուժերը, մարդկանց արտադրական գործունեության վճռական նշանակությունը։

Չնայած իր պատմական սահմանափակվածությանը, Գերցենի մատերիալիստական աշխարհայացքը բարձր էր մինչմարքսյան մատերիալիզմի մնացած բոլոր տեսակետներից։ Գնահատելով Գերցենի կատարած դերը փիլիսոփայության բնագավառում, Վ. Ի. Լենինը գրել է. «XIX դարի 40-ական թվականների ճորտատիրական Ռուսաստանում նա կարողացավ հասնել այնպիսի բարձրության, որ կանգնեց իր ժամանակի մեծագույն մտածողների կողքին։ Նա յուրացրեց Հեգելի դիալեկտիկան։ Նա հասկացավ, որ այդ դիալեկտիկան «ռևոլյուցիայի ալգեբրան» է։ Ընթանալով Ֆոյերբախի հետքերով, նա Հեգելից ավելի առաջ անցավ, դեպի մատերիալիզմ։ «Բնության ուսումնասիրության վերաբերյալ նամակներ»-ից առաջինը՝ «Էմպիրիան և իդեալիզմ»-ը, որը գրված է 1844 թվականին, ցույց է տալիս մեզ մի մտածողի, որը մինչև իսկ այժմ մեկ գլխով բարձր է ժամանակակից անթիվ-անհամար բնախույզ-էմպիրիկներից և ներկայիս բյուր-բյուրավոր փիլիսոփաներից, իդեալիստներից ու կիսաիդեալիստներից։ Գերցենը ընդհուպ մոտեցավ դիալեկտիկական մատերիալիզմին և կանգ առավ պատմական մատերիալիզմի առաջ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 18, էջ 13)։

Այդ նույն շրջանում Իսկանդեր ծածկանվան տակ Գերցենի ստեղծած գրական-գեղարվեստական գործերը՝ «Ո՞վ է մեղավոր» վեպը (1845—46), «Գող կաչաղակ» (1846), «Բժիշկ Կրուպով» (1847) վիպակները մեծ արձագանք գտան հասարակական լայն խավերում։ Այս գործերի հիմնական թեման ճոր-

տատիրական կարգերի անողոք մերկացումն ու դատապարտումն է։ Մասնավորապես «Ո՞վ է մեղավոր» վեպը ջերմ ընդունելության արժանացավ թե՛ ընթերցողների, թե՛ ռևոլյուցիոն քննադատության կողմից։ Հանճարեղ քննադատ Բելինսկին, պատշաճը հատուցելով հեղինակի խոշոր տաղանդին, գրում էր, որ Գերցենը հատկապես ուժեղ է տաղանդի մտածողական կողմով և նախապես իմանում է, թե ինչ է ցանկանում։ Զարմանալի ճշգրտությամբ պատկերելով իրականությունը, նշում էր Բելինսկին, հեղինակը սեփական խոսքն է ասում, կատարում է իր դատը։ Այլ էր, իհարկե, ռեակցիոն քննադատության վերաբերմունքը։ Այս ուղղության քննադատները լուտանքներ էին թափում հեղինակի վրա և հենց մատնությամբ հանձնում հեղինակին ժանդարմների ձեռքը։

* * *

Արտասահման գնալու պահին (1847) Գերցենն արդեն համոզված ռևոլյուցիոներ, սոցիալիստ ու դեմոկրատ էր, և պայքարն ընդդեմ ինքնակալական-ճորտատիրական կարգերի՝ իր կյանքի բարձրագույն նպատակն էր համարում։ Մտերիմներից բաժանվելու դառնությունը մեղմանում էր այն վարդագույն սպասելիքներով, որ նա իր սրտի խորքում փայփայում էր Արևմուտքի հետ հանդիպում ունենալուց։ Նա սահմանը կտրում է՝ ուրախության ճիչը շրթներին, և օր առաջ շտապում է հասնել Փարիզ՝ ռևոլյուցիայի փառքով պսակված այդ համաշխարհային քաղաքը։ Այստեղ նա հանդիպում է իր հին ծանոթներին՝ Բակունինին, Սազոնովին, մտերմություն հաստատում այն ժամանակվա ռևոլյուցիոն շարժման աչքի ընկնող գործիչների հետ, գլխովին սուզվում փարիզյան կյանքի աղմկալի հորձանուտը։

Սակայն ուրախության առաջին օրերին հաջորդում է հիասթափության մռայլ շրջանը։ Մոտիկից դիտելով եվրոպական կյանքը, Գերցենը սարսափով նկատեց բուրժուազիայի տիրապետությունը բոլոր ասպարեզներում՝ զեխության կողքին անսահման աղքատություն, անառակության կողքին՝ կեղծավոր շողոքորթություն, մարդկային իրավունքների կոպիտ ոտնահարում, անվերջանալի տառապանքներ, աշխատավորության անսահման շահագործում ու կարիք, մի խոսքով՝ սոցիալական հակասությունների այնպիսի մի կծիկ, որն ապացուցում էր լուսավորչական քարոզների և սոցիալիստ-ուտոպիստների գաղափարների ծայրահեղ անզորությունը։ Վրա հասավ նաև 1848 թ. փետրվարյան ռևոլյուցիան, իսկ այնուհետև՝ ռևոլյուցիայի ծանր պարտությունը։ Գերցենն ականատես եղավ հաղթանակած բուրժուազիայի արյունալի օրգիաներին ու վայրի դատաստանին՝ պարտված բանվորների նկատմամբ։

Գերցենի հոգեկան ճգնաժամին ավելացավ նաև ընտանեկան ծանր դրամա. նավաբեկության հետևանքով ծովում խեղդվում են Գերցենի մայրն ու որդին, իսկ մի տարուց հետո՝ 1852 թվականին՝ մահանում է նաև նրա կինը՝ Նատալիան։ Ծանր հարվածներից ցնցված Գերցենը հոռետեսության մեջ է ընկնում։ «Ամեն ինչ փլվեց՝ ընդհանուրն ու մասնավորը,— գրում էր նա,— եվրոպական ռևոլյուցիան և ընտանեկան օջախը, աշխարհի ազատությունը և անձնական բախտավորությունը։ Քարը քարի վրա չմնաց անցյալ կյանքից»։

Տպավորությունների և ապրումների այս արտակարգ լարված շրջանը Գերցենն արտահայտել է «Նամակներ Ֆրանսիայից և Իտալիայից» (1847), «Այն ափից» (1849) իր հանրահայտ գրվածքներում։

«Նամակները» սկզբում ուրախ, անբռնազբոսիկ ոճով պատմում են Գերցենի բարեկամներին Եվրոպայի հետ ունեցած առաջին հանդիպման մասին։ Բայց շուտով խոսքի ոգևորված տոնը խամրում, աղոտանում է՝ «սկիզբ է առնում չարագուշակ մտորում և պաթոլոգիական վերլուծում»։ Ակնապիշ հետևելով ֆրանսիական կյանքի երևույթներին՝ Գերցենը հանգում է այն եզրակացության, որ սահմանադրական Ֆրանսիայի խաբուսիկ դեկորները միայն կարճ ժամանակով կարող են սքողել ներքին այն հիվանդությունը, որ խորապես մաշում է երկրի օրգանիզմը։ Խոսքը բուրժուական հասարակության հակասությունների մասին էր, որ մոլեգնում էին Գերցենի աչքի առաջ։ Նա վառ գույ-



ներով նկարագրում է գաղափարազուրկ, բարոյապես ապականված, ցենզային բուրժուազիայի գիշատիչ կերպարը, որին հակադրում է զրկվածների ու թշվառների անցենզային Փարիզը։ «Բուրժուազիան,— գրում էր Գերցենը,— ամենափայլուն կերպով թատերաբեմ իջավ հանձին խորամանկ, հնարագետ, շամպան գինու նման փշշացնող վարսավիրի ու ծառայապետի, մի խոսքով՝ հանձին Ֆիգարոյի, իսկ այժմ նա հանդես է գալիս որպես զզայացունց ֆաբրիկատեր, աղքատների հոլանավորող՝ ճնշվածների պաշտպան։ Բոմարշեի օրոք Ֆիգարոն օրենքից դուրս էր, այժմ Ֆիգարոն՝ օրենսդիր է։ Այն ժամանակ նա աղքատ ու ստորացված էր, քիչ-միչ թռցնում էր աղայի սեղանից և այդ պատճառով էլ համակրում սովյալներին, և նրա ծիծաղի մեջ մեծ քեն էր թաքնված։ Այժմ աստված նրան օրհնել է երկրային բոլոր պարգևներով, նա լխկել, ծանրացել է, ատում է սովյալներին և չի հավատում աղքատությանը, անվանելով դա ծուլություն և շրջմոլիկություն» (А. И. Герцен, Собр. соч. т. V, էջ 33)։

Խորաթափանց Գերցենը ըմբռնեց, որ բուրժուազիայի դրության մեջ կատարված փոփոխությունները կապված են այն ժամանակաշրջանի հետ, երբ բանվորները տիրականորեն հանդես եկան Փարիզի հրապարակներում ու փողոցներում։ Ընչաքաղց, շահասեր բուրժուազիան հրաժեշտ տվեց իր լիբերալ քարոզներին և սարսափից դրդված՝ հրով ու սրով, արյունով ու խարդախությամբ պաշտպանեց իր էգոիստական շահերը։

1848 թ. փետրվարին Ֆրանսիայում կատարված ռևոլյուցիայի լուրը Գերցենին հասավ Իտալիայում, ուր նա մեկնել էր Փարիզից։ Ոգևորված Գերցենն անմիջապես մեկնում է Փարիզ և ականատես լինում ռևոլյուցիոն դեպքերի հետագա զարգացմանը։ Փետրվարյան ռևոլյուցիայի պարտությունը կործանիչ հարված հասցրեց նրա պատրանքներին սոցիալիզմի վերահաս հաղթանակի վերաբերյալ։ Գերցենն այլևս չի տեսնում այն մարդկանց, ուժերին, որոնք կարող էին հարություն տալ Ֆրանսիային։ Զառամյալ Եվրոպան, եզրակացնում է Գերցենը, հոգևարքի մեջ է, «նա կմեռնի ստրկության և լճացման մեջ՝ բյուզանդական հիվանդությունից... նա կարող էր մեռնել և որպես ազատ երկիր, բայց անարժան եղավ» (Նույն տեղը, էջ 199)։

Իր ներքին հոգեվիճակն ու հիասթափությունը լուսավորչական, ուտոպիական համոզմունքների նկատմամբ Գերցենն առանձնապես ուժեղ արտահայտել է «Այն ափից» գրվածքում, որն իր բովանդակությամբ համահնչուն է «Նամակներ»-ին։ Այդ գրվածքի էջերից հառնում է խռովահույզ, կասկածներով տանջահար, հակասական՝ հաճախ հոռետես մտորումներով բեկված Գերցենը, որի կրծքից դուրս է թռչում նզովքի զայրացած ճիչը բուրժուազիայի դաժան հաշվեհարդարի առթիվ 1848 թ. պարտված ռևոլյուցիայի անզոր գերիների նկատմամբ։

«Այն ափից» գրվածքում Գերցենը հրաժեշտ է տալիս իր վաղեմի լուսավորչական, ուտոպիական սոցիալիստական հայացքներին և խարխափելով նոր ուղիներ է փնտրում զառամյալ, կործանման առաջ կանգնած աշխարհը վերանորոգելու համար։ Այժմ Գերցենը հաստատ համոզված է. Եվրոպան պետք է կործանվի, որովհետև շուրջը ամեն ինչ քայքայվում, ամեն ինչ երերվում է անորոշության մեջ, իսկ ամենամռայլ նախազգուշացումներն ի կատար են ածվում սարսափեցնող արագությամբ։ Վերահաս աղետի հանդեպ Գերցենն ափսոսալու ոչինչ չունի։ Գերցենը կծու հեգնանքով դիմակազերծ է անում հարյուրապատիկ անգամ գովաբանված բուրժուական դեմոկրատիան, նկատելով, որ ներկայացուցչական սիստեմը լոկ խորամանկորեն հնարված մի միջոց է՝ բառերի և անսպառ վեճերի վերածելու թե՛ հասարակական պահանջմունքները, թե գործելու պատրաստակամությունը։ Բայց Գերցենը միշտ էլ սոցիալիստ էր և որպես այդպիսին անընդհատ որոնումների մեջ էր՝ փնտրելով այն ուղին, որը տանում է դեպի սոցիալիզմի հաղթանակը։ Այսպիսի պահին, պեսիմիստական վհատությունից ազատագրվելով, Գերցենն իր հայացքը համակրանքով ուղղում էր պրոլետարիատի կողմը։ Հանճարեղ կանխատեսությամբ Գերցենը խոսում է այն ժամանակի մասին, երբ բանվորն ու գյուղացին միացնելով

իրենց ուժերը, միասնական պայքար կծավալեն հին կարգերը խորտակելու համար։ «Երբ նրանք իրար ձեռք մեկնեն,— ասում է Գերցենը,— դիմելով արտոնյալ դասերին,— այն ժամանակ դուք հրաժեշտ կտաք ձեր պարապ ժամանցին, ձեր պերճությունը, ձեր քաղաքակրթությունը...» (А. И. Герцен, Собр. соч., т. VI, էջ 57, տես նաև հ. V, էջ 205)։

Հունիսյան օրերի կրակոցները սպանեցին Գերցենի հավատը սոցիալիզմի մոտալուտ հաղթանակի վերաբերյալ։ Գերցենը չէր հասկանում 1848 թ. ռևոլյուցիայի բուրժուական բնույթը, նա չէր տիրապետում այն թեորիային, որը գիտականորեն հիմնավորում է հին կարգերի կործանման անհրաժեշտությունը, նա չէր գիտակցում պրոլետարիատի պատմական դերը, որովհետև զուրկ էր պատմական մատերիալիզմի հուսալի ուղեցույցից։ «Գերցենի հոգևոր կրախը,— ասում է Վ. Ի. Լենինը,— նրա խոր սկեպտիցիզմը և պեսիմիզմը 1848 թվականից հետո, սոցիալիզմի վերաբերմամբ բուրժուական պատրանքների կրախն էր։ Գերցենի հոգևոր դրաման ծնունդն ու արտացոլումն էր համաշխարհային պատմական այն դարաշրջանի, երբ բուրժուական դեմոկրատիայի ռևոլյուցիոնությունն արդեն մահանում էր (Եվրոպայում), իսկ սոցիալիստական պրոլետարիատի ռևոլյուցիոնությունը դեռևս չէր հասունացել» (Վ. Ի. Լենին, Երկեր հատ. 18, էջ 14)։ Ինչպես իրավացի կերպով նշում էր Լենինը, Գերցենի սկեպտիցիզմը անցման մի ձև էր բուրժուական դեմոկրատիզմի պատրանքներից «դեպի պրոլետարիատի դաժան, աննկուն, անպարտելի դասակարգային պայքարը»։

***

Վերջնականապես հիասթափվելով Արևմուտքի բուրժուական դեմոկրատիայից, Գերցենը տանջալից որոնումներով համակված՝ փորձում է կամուրջներ կառուցել «ընդհանրությունից դեպի իրական կյանքը, ձգտումից դեպի կիրառումը»։ Այլ խոսքով՝ նա պատասխան է փնտրում իր հարցին, թե որո՞նք են այն ուժերը, որ պետք է ապահովեն սոցիալիզմի իրականացումը, արդյոք գոյություն ունի՞ այն անհրաժեշտությունը, որը թույլ կտա մեզ եզրակացնելու, թե ապագան կկենսագործի մեր ծրագիրն ու իդեալները։ Չտեսնելով Արևմուտքում այդպիսի ուժեր և անհրաժեշտություն, Գերցենն իր հայացքն ուղղում է դեպի Ռուսաստան, ռուսական համայնքը։ «Հավատը Ռուսաստանի նկատմամբ փրկեց ինձ, երբ գտնվում էի բարոյական կործանման եզրին»,— գրել է հետագայում Գերցենը։

Ճշմարտացի լինելու համար պետք է ասենք, որ Գերցենի դարձը սկսվել էր դեռ մինչև 1848 թ. ռևոլյուցիայի պարտությունը։ Արդեն «Նամակներ»-ի մեջ կգտնենք այնպիսի տեղեր, որոնք նշում են ռուսական գյուղի, հետևաբար և համայնքի մեծ ապագան եվրոպական գյուղի համեմատությամբ։ Այդ նույն հավատը «միմիայն Ռուսաստանի և նրա սոցիալական սաղմերի նկատմամբ» Գերցենն արտահայտել է դեռ փետրվարյան ռևոլյուցիայի նախօրյակին, Բակունինի հետ ունեցած զրույցների ժամանակ։ Սակայն այժմ, երբ Գերցենի կարծիքով, Արևմուտքը լիովին ապացուցել է սոցիալական խնդիրները լուծելու իր անկարողությունը, Գերցենը բազմաթիվ հոդվածներում առաջ է քաշում այն տեսությունը, որը հետագայում «ռուսական» կամ նարոդնիկական սոցիալիզմ անունն ստացավ և որը հենվում է ռուսական գյուղացիական համայնքի և «ռուս գյուղացիության հոգեբանության» վրա։

Ռուսական համայնքի գովաբանությանը մենք կհանդիպենք «Ռուս ժողովուրդը և սոցիալիզմը», «Ռուսաստան», «Ռուս ճորտատիրություն», «Մկրտված սեփականություն», «Ռևոլյուցիոն գաղափարների զարգացման մասին Ռուսաստանում», «Հին աշխարհը և Ռուսաստանը», «Նամակներ գրված Վ. Լինտոնին» և այլ հոդվածներում, որոնց էջերում, իհարկե, արտահայտվել է սլավյանոֆիլական գաղափարների ազդեցությունը Գերցենի աշխարհհայացքի վրա։

Նպատակ դնելով ծանոթացնել եվրոպական հասարակությանը Ռուսաստանի պատմության ու կուլտուրային, Գերցենը, միևնույն ժամանակ, ժողովրդականացնում է գյուղական համայնքը և իր տեսակետները նրա զարգացման վերաբերյալ։ Ռուսաստանը, իր ամբողջ քաղաքական զարգացման ընթացքում, ամենածանր պայմաններում՝ մոսկովյան ցարերի և ինքնակալական կայսրերի դաժան լծի տակ կարողացել է պահպանել և հասցնել գյուղական համայնքը այն ժամանակաշրջանին, երբ եվրոպական հակահամայնական քաղաքակրթությունը փլուզում է ապրում և անկարող է իրականացնել սոցիալիզմի բեղմնավոր գաղափարը։ Ռուսական ժողովուրդն իր կենցաղով ավելի մոտ է սոցիալական նոր հասարակությանը։

«Հենց ռուսական համայնքն է, որ շնորհիվ իր տվյալների՝ ընդունակ կլինի կենսագործել սոցիալիզմը։ «...Ես համարձակորեն կրկնում եմ,— ասում է այս առթիվ Գերցենը,—որ հողերի համայնական տիրության և դաշտերի վերաբաժանման լոկ մեկ փաստն ինքնըստինքյան արդարացնում է այն ենթադրությունը, որ մեր չմշակված հողը, մեր սևահողը ավելի նպաստավոր է արևմտյան դաշտերից հավաքած սերմացուն ցանելու համար» (А. И. Герцен, Собр. соч. т. XV, էջ 148)։

Գերցենը հավատացած է, որ Ռուսաստանն առաջ կընթանա զարգացման ուրույն՝ եվրոպականից տարբեր ճանապարհով, որովհետև համայնքի գոյությունն ապահովում է նրան կապիտալիստական զարգացման ֆազայից նրա բոլոր արատներով հանդերձ։ Ահա Գերցենի դատողությունն այդ առթիվ։ «Բնականաբար,— ասում է նա,— հարց է առաջանում՝ արդյոք պե՞տք է Ռուսաստանը անցնի եվրոպական զարգացման ֆազաները, թե՞ նրան վիճակված է բոլորովին այլ, ռևոլյուցիոն զարգացում։ Ես վճռաբար բացասում եմ նման կրկնությունների անհրաժեշտությունը։ Մենք կարող ենք և պետք է անցնենք մեր նախորդների պատմական զարգացման վշտալի, դժվարին ֆազաները, բայց այնպես, ինչպես սաղմն է անցնում կենդանաբանական գոյության ստորին աստիճանները» (А. И. Герцен, Собр. соч. т. XV, էջ 186)։

Ի դեմս համայնքի Գերցենը տեսնում է կենարար մի ուժ, որը ո՛չ միայն Ռուսաստանը սոցիալիզմի կհասցնի, այլև կփրկի զառամյալ աշխարհը ճակատագրական փլուզումից։ Իհարկե, համայնքի դրական սաղմերի հետ միասին Գերցենը նկատում է և այն բացասական տարրերը, որոնք աղավաղում են համայնքի բնական զարգացումը և որոնք փաթաթված են համայնքի վզին ցարական բյուրոկրատիայի, ճորտատիրության կողմից։ Ուստի սոցիալիզմին անցնելու համար նախ և առաջ հարկավոր է ոչնչացնել ճորտատիրական իրավունքը և գյուղացիներին ազատագրել հողի հետ միասին։ Հողն անհրաժեշտ է ազատագրված գյուղացուն, որպեսզի հնարավոր լինի խուսափել աղքատությունից, պրոլետարականության խոցերից և բուրժուազիայի կազմավորումից Արևմուտքի օրինակով։ Ռուսական գյուղացիությանը հարկավոր է լուսավորել Արևմուտքի սոցիալական գաղափարներով, որով հնարավոր կլինի հաղթահարել այն բացասական ազդեցությունները, որ արտաքուստ խանգարում են համայնքի բնականոն զարգացմանը։ Այս խնդիրը հանձնարարվում է ինտելիգենտական ուժերին։ «Հսկան արթնանում է» հոդվածում Գերցենը, դիմելով ռուս ինտելիգենցիային, հռչակում է «Դեպի ժողովուրդ» լոզունգը, որն այնուհետև դառնում է նարոդնիկության դավանանքի անկյունաքարերից մեկը։

Գերցենի «նարոդնիկական սոցիալիզմի» ուսմունքը սահմանափակվում էր համայնական հողատիրության, գյուղացիներին հողի հետ միասին ազատագրելու, «հողի իրավունքի» մասին եղած գյուղացիական պատկերացումներով։ Լենինն իրավացիորեն գրում էր, որ այդ ուսմունքի մեջ «չկա և ոչ մի գրամ սոցիալիզմ։ Այս նույնպիսի բարեհոգի ֆրազ է, նույնպիսի լավ երազանք, որն զգեստավորում է բուրժուական գյուղացիական դեմոկրատիայի ռևոլյուցիոնությունը Ռուսաստանում, ինչպես և «48 թվականի սոցիալիզմի» զանազան գծերը Արևմուտքում» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 18, էջ 15)։ Գերցենի սոցիալիզմն արտահայտում էր ռուս գյուղացիության ռևոլյուցիոն ձգտումները կալվածատիրական իշխանությունը մեկընդմիշտ տապալելու համար։

կան բարձր հատկությունների մասին։ Ն. Սերնո-Սոլովյովիչին գրած նամակում Օգարյովը բնորոշում էր Մ. Նալբանդյանին որպես «ոսկի հոգի», որը նվիրված է անշահախնդիր կերպով, նվիրված է սրբությամբ», իսկ Գերցենը հավելագրել էր. «Բարևեցե՛ք նրան,— դա ամենաազնվագույն մարդն է, ասացե՛ք նրան, որ մենք հիշում և սիրում ենք նրան»։ Գերցենն առանձնապես բարձր էր դասում Չերնիշևսկուն՝ այդ «ուժեղ անձնավորությանը», որին նա համարում էր նոր Ռուսաստանի մարմնավորում և որի «պրոպագանդան պատասխան էր խակական տառապանքներին, մխիթարանքի և հուսադրության խոսք էր կյանքի դաժան աքցաններում կործանվողների համար» (А. И. Герцен, Собр. соч. т. XIX էջ 194)։

Գերցենի գաղափարական-քաղաքական էվոլյուցիայի հանրագումարն են հանդիսանում 1869 թ. գրված «Նամակներ հին ընկերոջս»՝ Բակունինին, որոնց մեջ հեղինակը քննադատելով ռևոլյուցիոն ֆրազներից թխված՝ Բակունինի գործելակերպի ծրագիրը, իր հայացքն ուղղում է «ոչ թե դեպի լիբերալիզմը, այլ դեպի Ինտերնացիոնալը, դեպի այն Ինտերնացիոնալը, որը Մարքսն էր ղեկավարում...» (Լենին)։ Դժբախտաբար, Գերցենի մահը 1870 թ. խզեց էվոլյուցիայի այդ գիծը։

***

Ա. Ի. Գերցենի անունը սերտորեն կապված է ռուս ժողովրդի ազատագրական պայքարի հետ։ Նրա ռևոլյուցիոն գործունեությունը այդ պայքարի փառավոր էջերից մեկն է։ Լենինը «Գերցենի հիշատակին» իր հոդվածում բազմակողմանիորեն և խոր կերպով գնահատել է Գերցենի դերը ռևոլյուցիոն շարժման մեջ։ «Մեծարելով Գերցենին,— ասում է Լենինը,— մենք պարզ տեսնում ենք երեք սերունդ, երեք դասակարգ, որոնք գործել են ռուսական ռևոլյուցիայի մեջ։ Սկզբում՝ ազնվականներն ու կալվածատերերը, դեկաբրիստներն ու Գերցենը։ Նեղ է այդ ռևոլյուցիոներների շրջանը։ Շատ հեռու են նրանք ժողովրդից։ Բայց նրանց գործն ապարդյուն չանցավ։ Դեկաբրիստներն արթնացրին Գերցենին։ Գերցենը ռևոլյուցիոն ագիտացիա ծավալեց»։ Ազնվական ռևոլյուցիոներ Գերցենը հեռանալով Ռուսաստանից, կտրվել էր հայրենի իրականությունից և չէր կարող տեսնել ռևոլյուցիոն ժողովրդին ու զգալ նրա ցասումը։ Այստեղից էլ, բացատրում է Լենինը, նրա լիբերալ ապելյացիան՝ ուղղված վերնախավերին,— նրա քաղցր-մեղցր նամակները Ալեքսանդր II-ին։

Գաղափարական տեսակետից՝ վարգանալով գիտական սոցիալիզմի ուղղությամբ, Գերցենը, Լենինի արտահայտությամբ, «ընդհուպ մոտեցավ դիալեկտիկական մատերիալիզմին և կանգ առավ պատմական մատերիալիզմի առաջ»։ Դժբախտաբար հասարակական զարգացման օբյեկտիվ օրինաչափությունն ըմբռնելու անկարողությունն անջատեց նրան գիտական սոցիալիզմի, Մարքսի բանակից և առաջ բերեց Գերցենի հոգևոր կրախը։ Գերցենը «ռուսական» սոցիալիզմի, նարոդնիկության հիմնադիրը հանդիսացավ, բայց նրա սոցիալիզմը, Լենինի դիպուկ արտահայտությամբ, նույնպիսի բարեհոգի ֆրազ էր, ինչպես և այլևայլ ուտոպիական սոցիալիզմի ձևերն Արևմուտքում։

60-ական թվականներին՝ գյուղացիական ռևոլյուցիայի աճման պայմաններում, Գերցենը վճռաբար կանգնում է ռևոլյուցիոն դեմոկրատիայի կողմը, զինակցում ռազնոչինեց-ռևոլյուցիոներներին։ Հող և ազատություն նշանաբանի ներքո Գերցենի մղած պրոպագանդայից ծնվում է «Զեմլյա ի վոլյա» ռևոլյուցիոն կազմակերպությունը։

Գերցենի ամբողջ կյանքը նվիրված է եղել ճնշվածների ազատագրման վեհ նպատակին։ Չնայած նրա սխալներին և սայթաքումներին, նա մեծ ավանդ է մտցրել այդ ազնիվ պայքարի գործում։ Սոցիալ-դեմոկրատիայի նախակարապետ, այդպես է անվանել Լենինը Ա. Ի. Գերցենին։ Նրա բազմակողմանի և կրքոտ ռևոլյուցիոն գործունեությունը, նրա մշտապես մաքուր ձգտումները, նրա անհանգիստ որոնումների միևնույն նպատակասլացությունը իրավունք են տալիս ոսկե տառերով նշել Գերցենի անունը սոցիալիզմի տարեգրության պատմության էջերում։

## ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

# ՊԱՐՏԻԱՅԻ ԱՆԴԱՄԻ ԲԱՐՁՐ ԿՈՉՈՒՄԸ

**Վ. ՎԱՐԴԱՆՈՎ**

ՀԿՊ Դիլիջանի շրջկոմի քարտուղար

ՍՄԿՊ XX համագումարից հետո արմատական տեղաշարժեր կատարվեցին մեր պարտիայի ու ժողովրդի կյանքում, լայն ասպարեզ բացվեց կոմունիստների, աշխատավորական մասսաների ստեղծագործական նախաձեռնության ու ակտիվության զարգացման համար։ Հաղթահարելով Ի. Վ. Ստալինի անձի պաշտամունքի հետևանքները, ՍՄԿՊ-ն լիովին վերականգնեց պարտիական կյանքի լենինյան նորմերը և ղեկավարման կոլեկտիվության սկզբունքը։ Պարտիան ընդլայնեց իր ղեկավար և ուղղություն տվող ներգործությունը սովետական հասարակության կյանքի բոլոր կողմերի վրա, ամրապնդվեցին նրա կապերը ժողովրդի հետ։

Սովետական հասարակության զարգացման նոր էտապում՝ կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում, է՛լ ավելի են աճում Կոմունիստական պարտիայի դերն ու նշանակությունը։ Նոր, աճող պահանջներին համապատասխան պարտիան կկատարելագործի իր գործունեության ձևերն ու մեթոդները, կզարգացնի ներպարտիական դեմոկրատիան և կբարձրացնի իր ղեկավարության մակարդակը։

Ելնելով նոր Ծրագրից, պարտիայի XXII համագումարն ընդունեց ՍՄԿՊ նոր Կանոնադրությունը՝ ներպարտիական կյանքի հիմնական օրենքը։ Նրանում զարգացված են պարտիայի կառուցման լենինյան կազմակերպական սկզբունքները՝ կոմունիզմի ծավալուն շինարարության պայմաններին ու խնդիրներին համապատասխան։ Նոր Կանոնադրության մեջ ընդհանրացված է պարտիական շինարարության հարուստ փորձը, սահմանված են պարտիայի գործունեության հիմնական կանոններն ու նորմերը, կազմակերպական ձևերն ու մեթոդները։ ՍՄԿՊ Կանոնադրությունը պարտիայի ձեռքում կազմակերպական հուսալի զենք է կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում, այն ստեղծում է նորանոր հնարավորություններ կոմունիստների ձեռներեցության և ինքնագործունեության առավելագույն ծավալման, պարտիական կազմակերպությունների մարտունակության բարձրացման համար։

Ավելի բարձր պահանջներ են ներկայացվում պարտիայի անդամին։ Պատմական արդի պայմաններում ավելի ու ավելի է բարձրանում կոմունիստի կոչումը, աճում նրա դերն ու պատասխանատվությունը։ «Կոմունիստը,— ասված է ՍՄԿՊ Ծրագրում,— պարտավոր է արտադրության մեջ, հասարակական և անձնական կյանքում իր ամբողջ վարքագծով ցույց տալ կոմունիստական հարաբերությունները զարգացնելու և ամրապնդելու պայքարի բարձր օրինակներ,

պանպանել կոմունիստական բարոյականության սկզբունքները և նորմերը»:

Ծրագրային այդ դրույթներին համապատասխան, ՍՄԿՊ նոր Կանոնադրության մեջ պարզ ու որոշակի սահմանված են պարտիայի անդամի հիմնական պարտականություններն ու իրավունքները, շարադրված են կազմակերպական այն նորմերը, որոնցով կարգավորվում է ՍՄԿՊ մեջ ընդունելության գործը:

Այն, թե ով կարող է լինել լենինյան մեծ պարտիայի անդամ, եղել ու մնում է մեր պարտիական շինարարության արմատական հարցերից մեկը: Վ. Ի. Լենինը բազմիցս նշել է, որ պարտիայի որակական կողմից են կախված նրա ամրությունն ու մարտունակությունը, պարտիայի հեղինակությունը, մասսաների վրա նրա ներգործության ուժը: Նա սովորեցնում էր, որ «Պարտիայի ամեն մի անդամ պատասխանատու է պարտիայի համար և պարտիան պատասխանատու է յուրաքանչյուր անդամի համար» (Երկեր, հատ. 6, էջ 641):

ՍՄԿՊ նոր Կանոնադրության առաջին պարագրաֆում, ուր խոսվում է այն մասին, թե ով կարող է լինել պարտիայի անդամ, պահպանված է պարտիայի անդամության լենինյան սկզբունքը: Բայց նոր Կանոնադրության մեջ բացակայում է այն բնորոշումը, որն արտացոլում է պարտիայի անդամության դասակարգային սահմանափակումները: Եվ դա հասկանալի է, քանի որ մեր երկրում սոցիալիզմի հաղթանակի, սովետական հասարակության միասնության ամրապնդման շնորհիվ ՍՄԿՊ-ն դարձել է ամբողջ ժողովրդի պարտիա:

Այստեղ ձևակերպման մեջ նորն այն է, որ պարտիայի անդամ կարող է լինել Սովետական Միության ամեն մի քաղաքացի, որն «ակտիվորեն մասնակցում է կոմունիզմի կառուցմանը»: Կանոնադրական այդ պահանջն անմիջականորեն բխում է կոմունիստական շինարարության արդի էտապում պարտիայի կյանքի նոր պայմաններից և ՍՄԿՊ-ի մեջ ընդունվելու վճռական պայմանն է:

Մեծ պատիվ է լինել պարտիայի անդամ: Կոմունիստները աշխատավորների շահերին, կոմունիզմի գործին իրենց անձնազոհ ծառայությամբ նվաճել են ժողովրդի մեծ սերն ու հարգանքը: Ռևոլյուցիոն կրքոտություն, քաղաքական ակտիվ գործունեություն, հասարակական պարտքի բարձր գիտակցություն— ահա թե որոնք են կոմունիստի բնորոշ գծերը: Կոմունիստ լինելու համար, ասել է Ն. Ս. Խրուշչովը, հարկավոր է ո՛չ միայն լավ ըմբռնել թե ինչ է կոմունիզմը, այլև լինել նրա ակտիվ զինվորը: Իսկ դրան ոչ բոլորն են ընդունակ, չնայած պաշտպանում են Կոմունիստական պարտիայի գաղափարները:

Սովետական Միության Կոմունիստական պարտիան՝ սովետական ժողովրդի մարտական, փորձված ավանգարդը, իր շարքերը համալրում է մեր հասարակության առավել գիտակից ու ակտիվ անդամների հաշվին, մշտապես հոգ տանելով իր շարքերի մաքրության, կոմունիստի բարձր կոչման պահպանման մասին: Միայն ՍՄԿՊ XX (1956 թ. փետրվար) — XXII (1961 թ. հոկտեմբեր) համագումարների միջև ընկած ժամանակամիջոցում մեր պարտիան աճեց 2,5 միլիոն մարդով, հասնելով 9 միլիոն 716 հազարի: Այդ շրջանում պարտիան աճեց ոչ միայն թվով, այլ բարելավվեց նաև նրա սոցիալական կազմը: Այսպես. 1960 թվականին ՍՄԿՊ անդամության նոր թեկնածու ընդունվածների երկու երրորդը կազմել են բանվորներն ու կոլտնտեսականները, այսինքն՝ այն մարդիկ, որոնք անմիջականորեն ստեղծում են նյութական բարիքներ: Եթե 1956 թվականին կոմունիստների ընդհանուր թվից բանվորներ ու կոլտնտեսականներ էին 49,1 տոկոսը, ապա 1960 թվականին այն հասավ 52 տոկոսի: Բնորոշն այն է, որ այդ տարիներին մեծապես ավելացել է մասնագետների հոսքը դեպի պարտիայի շարքերը:



ՍՄԿՊ նոր Կանոնադրության մեջ ո՛չ միայն ընդլայնվել են յուրաքանչյուր կոմունիստի իրավունքները, այլև բարձր պահանջներ են ներկայացվել նրան:

ՍՄԿՊ XXII համագումարի կողմից առաջադրված խնդիրների մեջ ամենագլխավորը, ամենաէականը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումն է: Եվ դա հասկանալի է, քանի որ նյութական արտադրության ոլորտը եղել ու մնում է հասարակության զարգացման վճռական գործոնը: Ահա թե ինչու նոր Կանոնադրության մեջ առաջին պլանի վրա է քաշվում պարտիայի անդամի այն պարտականությունը, որը վերաբերում է նոր հասարակության նյութատեխնիկական բազայի ստեղծմանը: Կոմունիստը պարտավոր է «պայքարել կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման համար, լինել աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի օրինակ, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, հանդես գալ որպես ամեն մի նորի, առաջադիմականի նախաձեռնող, պաշտպանել ու տարածել առաջավոր փորձը, տիրապետել տեխնիկային, կատարելագործել իր որակավորումը, պահպանել ու բազմապատկել հանրային, սոցիալիստական սեփականությունը...»:

Կանոնադրության այդ նոր պահանջը, որը թելադրված է մեր հասարակության զարգացման արդի մակարդակով, պետք է դառնա յուրաքանչյուր կոմունիստի կյանքի անխախտ օրենքը, նրա բարձրագույն կոչումը: Պարտիայի անդամը կոմունիզմի կառուցման ակտիվ մարտիկ է, նա պետք է իրեն նվիրաբերի այդ վեհ գործին:

Կոմունիստական շինարարության պլանների հաջողությունը վճռվում է գործարաններում, կառույցներում, կոլտնտեսություններում ու սովխոզներում, գիտահետազոտական հիմնարկներում և այլուր: Կոմունիստի կոչումն է՝ լինել համաժողովրդական պայքարի ավանգարդում, ցույց տալ կոմունիստական աշխատանքի օրինակ, լինել աշխատասեր ու նորարար: Նա պետք է պաշտպանի նորի ծիլերը, զարկ տա կոմունիստական աշխատանքի կոլեկտիվների և հարվածայինների շարժմանը:

Կարելի է բերել բազմաթիվ փաստեր, որոնք ցույց են տալիս, թե կոմունիստները ինչպիսի անձնվիրությամբ են աշխատում նոր հասարակարգի հաղթանակի համար: Դիլիջան քաղաքի «Նոր կյանք» ճկած աթոռների ֆաբրիկայի բոլոր կոմունիստներն արտադրության առաջավորներ են, ցույց են տալիս կոմունիստական աշխատանքի լավագույն օրինակներ: Կոմունիստը միաժամանակ մասսաների առաջնորդողն ու կազմակերպիչն է: Ֆաբրիկայի կոմունիստներն իրենց անձնական օրինակով պայքարի են հանում ողջ կոլեկտիվին՝ տեխնիկա-տնտեսական բարձր ցուցանիշներով կատարելու յոթնամյակի առաջադրանքները: Այստեղ չկա պլանը չկատարող և ոչ մի բանվոր: Գործարանը 1961 թվականին արտադրական պլանը կատարեց ժամկետից շուտ՝ դեկտեմբերի 15-ին, մեծ չափով գերակատարելով աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման առաջադրանքները:

Վճռական նշանակություն ունի այն հանգամանքը, թե կոմունիստը որտեղ է աշխատում: Վերջին շրջանում մեծ գործ է կատարվել կոմունիստների ճիշտ տեղաբաշխման բնագավառում: Կոմունիստը պետք է աշխատի նյութական արտադրության վճռական տեղամասում, այնտեղ, ուր վճռվում է մեր պլանների բախտը: Իր անձնական օրինակով, գործիմացությամբ ու եռանդով կոմու-

նիստը պետք է վարակի շրջապատին, ջանա վերացնել գործի նկատմամբ նըկատվող անտարբերությունը։ Կոմունիստը ոչ թե ուղեկցորդ է, այլ կոմունիզմի լուսաշող գագաթները տանող ծանր լոկոմոտիվի մեքենավար։

Արդի պայմաններում կոմունիստի ավանգարդային դերի մասին հասկացությունը խիստ ընդլայնվել է, այն իր մեջ ներառնում է նոր պահանջներ, որոնք իրենց արտահայտությունն են գտել ՍՄԿՊ Կանոնադրության մեջ։

Կոմունիզմի կառուցումը պահանջում է հասարակության բոլոր անդամներին դաստիարակել կոմունիստական բարոյականության ոգով, զարգացնել հասարակական հարաբերությունները, ձևավորել ապագայի մարդուն։ Այժմ կոմունիստից պահանջվում է այդ ասպարեզում ևս լինել օրինակ, լինել ավանգարդում։

Ռեսպուբլիկայի վաստակավոր ուսուցիչ, կոմունիստ Գ. Մելյանին Դիլիջանում հարգում են նրա ազնվության, շիտակության և ջանասեր գործունեության համար։ Նրան հաճախ կարելի է տեսնել արտադրական ձեռնարկություններում, բժշկական հիմնարկներում, խանութներում մարդկանց հետ զրուցելիս։ Գ. Մելյանը հետաքրքրվում է ամեն ինչով, հաճախ քաղաքային կոմիտեի առջև բարձրացնում է բնակչության շրջանում տարվող դաստիարակչական աշխատանքի բարելավման հարցերը։ Շատերն են դիմում նրա խորհրդին։ Նա անհաշտ է հասարակական կարգը խախտողների, սովետական առևտրի կանոնները խախտողների նկատմամբ։ Քաղաքի Պապանինո կոչվող թաղամասի բոլոր բնակիչները թոշակառու կոմունիստ Մովիկ Հարությունյանին գիտեն որպես լավ ագիտատոր ու կազմակերպիչ։ Լինի շաբաթօրյակ, թե կանանց ու երիտասարդության շրջանում անցկացվող որևէ միջոցառում, նա այնտեղ է, դրանց կազմակերպիչն ու ակտիվ մասնակիցը։

Կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսը, որն ամենայն իրավամբ մտել է պարտիական կյանքի հիմնական օրենքի մեջ՝ պետք է դառնա պարտիայի անդամի վարքագծի նորման, այն չափանիշը, որով ստուգվելու և գնահատվելու են յուրաքանչյուր կոմունիստի բարոյական հատկանիշները։ «Պարտիական կազմակերպությունը,— ասված է ՍՄԿՊ Կանոնադրության մեջ,— պետք է հասնի այն բանին, որ յուրաքանչյուր կոմունիստ իր ամբողջ կյանքում ինքը պահպանի և աշխատավորների մեջ արմատավորի ՍՄԿՊ Ծրագրում՝ կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսում շարադրված բարոյական սկզբունքները»։

ՍՄԿՊ Կանոնադրությունը յուրաքանչյուր կոմունիստից պահանջում է հաստատ ու անշեղորեն կենսագործել պարտիայի որոշումները, մասսաներին պարզաբանել պարտիայի քաղաքականությունը, նպաստել ժողովրդի հետ պարտիայի կապերի ամրապնդմանն ու ընդլայնմանը, զգայուն և ուշադիր լինել մարդկանց նկատմամբ, ժամանակին արձագանքել աշխատավորների պահանջներին ու կարիքներին։

Կոմունիստական պարտիայի աշխարհայացքը մարքսիզմ-լենինիզմի անհաղթ ուսմունքն է։ Պարտիայի ակտիվ գործիչ լինելու համար կոմունիստը պետք է լավ տիրապետի մարքս-լենինյան տեսությանը, սիստեմատիկաբար բարձրացնի իր գաղափարական մակարդակը։ Տիրապետելով այդ տեսությանը, իր ամենօրյա գործունեության մեջ առաջնորդվելով նրանով, կոմունիստը պարտավոր է լինել աշխատավորական մասսաների մեջ մարքսիստական-լենինյան ուսմունքի, ՍՄԿՊ նոր Ծրագրի ակտիվ պրոպագանդողը։



Գաղտնիք չէ, որ մեր հասարակության մեջ դեռևս կան ոչ քիչ թվով մարդիկ, որոնք շարունակում են կառչել հնից՝ անցյալի մնացուկներից։ Այդ մնացուկները դրսևորվում են աշխատանքի նկատմամբ որոշ անձանց արհամարհական վերաբերմունքի, պորտաբույծ կյանք վարելու, մասնավոր սեփականատիրական ձգտումների, աշխատանքում ու կենցաղում ոչ ճիշտ վարքագիծ ցուցաբերելու, կրոնական նախապաշարումների մեջ։ Կանոնադրությունը պարտիայի անդամից պահանջում է վճռական պայքար մղել բուրժուական գաղափարախոսության բոլոր դրսևորումների դեմ, մասնավոր սեփականատիրական հոգեբանության մնացուկների, կրոնական նախապաշարմունքների և անցյալի մյուս վերապրուկների դեմ, խիստ պահպանել կոմունիստական բարոյականության սկզբունքները, հասարակական շահերը բարձր դասել անձնական շահերից։

Կանոնադրությունը բոլոր կոմունիստներին պարտավորեցնում է լինել աշխատավոր մասսաների մեջ սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և սովետական հայրենասիրության գաղափարների ակտիվ կիրառող, պայքարել նացիոնալիզմի և շովինիզմի վերապրուկների դեմ, խոսքով ու գործով նպաստել ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությանը, սոցիալիստական լագերի երկրների ժողովուրդների, բոլոր երկրների պրոլետարների ու աշխատավորների հետ սովետական ժողովրդի եղբայրական կապերի ամրապնդմանը։

Մեր պարտիայի ուժն ու անպարտելիությունը նրա շարքերի միասնության և անխախտ միաձուլության մեջ է։ ՍՄԿՊ Կանոնադրությունը տոգորված է այն հոգատարությամբ, որպեսզի յուրաքանչյուր կոմունիստ ամեն կերպ ամրապնդի պարտիայի գաղափարական ու կազմակերպական միասնությունը, պարտիայի շարքերը պահպանի կոմունիստի բարձր կոչմանն անարժան մարդկանց ներթափանցումից, ճշմարտացի և ազնիվ լինի պարտիայի ու ժողովրդի հանդեպ, ցուցաբերի զգոնություն, պահպանի պարտիական ու պետական գաղտնիքը։

Սակայն կարելի է դեռևս հանդիպել առանձին կոմունիստների, ղեկավար աշխատողների, որոնք պարտիայի ու պետության հանդեպ ցուցաբերում են անազնվություն, զբաղվում են աչքակապությամբ, սքողում են գործերի իրական վիճակը։ Այդպիսի մարդիկ բարձր են դասում իրենց անձնական հեղինակությունը պետական շահերից, իրենց կազմակերպական աշխատանքի անընդունակությունը վարագուրելով պարադայնությամբ։

Մոտիկ անցյալում վատ էր գործերի վիճակը «Դիլիջան» հանքային ջրերի գործարանում։ Այստեղ ո՛չ միայն չէին կատարվում արտադրական պլանները, այլև ցածր էին արտադրանքի որակը, տնտեսա-տեխնիկական ցուցանիշները։ Այս ամենը սքողելու նպատակով գործարանի ղեկավարությունը բռնել էր հավելագրումների և աչքակապության ճանապարհը, ամեն կերպ ջանալով ստեղծել այն տպավորությունը, թե իրենց մոտ ամեն ինչ լավ է, բարեհաջող։ Ահա թե ինչու քաղկոմը ստիպված եղավ փոխել գործարանի ղեկավարությունը։

Պարտիան այսօր ամենայն սրությամբ է դնում կոմունիստների ազնվության ու ճշմարտացիության հարցը։ Եվ դա բնական է։ Կոմունիզմը ազնիվ մարդկանց, մաքուր խղճի տեր մարդկանց հասարակարգ է։

Նա, ով աշխատում է ազնիվ, ունի նորի զգացում, քննադատաբար է վերաբերվում իր գործունեության արդյունքներին, երբեք չի վախենա քննադատությունից և ինքնաքննադատությունից, որոնք պարտիայի ձեռքում հզոր

զենք են հնի, իր դարն ապրածի դեմ մղվող պայքարում, հասարակության վե-
րափոխման համար պարտիայի անձնուրաց ռևոլյուցիոն աշխատանքում։

Երբ պարտիայի XX, ապա XXII համագումարներում ՍՄԿՊ Կենտկոմը
պարզ ու որոշակի, պարտիական սկզբունքայնությամբ դրեց Ստալինի անձի
պաշտամունքի վնասակար հետևանքների հաղթահարման հարցը, դրանով
իսկ նա ցույց տվեց, որ միայն ուժեղ, մասսաների մեջ խոր արմատներ ունե-
ցող և վստահորեն առաջ ընթացող պարտիան է ընդունակ ամբողջ ժողովրդի
առջև անսքող բացահայտելու իր սեփական թերությունները։

Քննադատությունը և ինքնաքննադատությունն ամեն կերպ զարգացնելու
պահանջն իր վառ արտացոլումն է գտել Կանոնադրությամբ սահմանված
պարտիայի անդամի պարտականությունների մեջ։ Յուրաքանչյուր կոմունիստ
պարտավոր է զարգացնել քննադատությունն ու ինքնաքննադատությունը, հա-
մարձակորեն բացահայտել թերությունները և հասնել դրանց վերացմանը,
պայքարել պարադայնության, գոռոզամտության, ինքնահանգստացման,
տեղայնության դեմ, վճռական հակահարված տալ քննադատության ճնշման
բոլոր փորձերին, հանդես գալ պարտիային ու պետությանը վնաս հասցնող
ամեն տեսակ գործողությունների դեմ։

Բայց քննադատությունը պետք է ծավալվի սկզբունքային հողի վրա, բա-
րեկամական դիրքերից՝ ելնելով կոմունիստական այն սկզբունքից, որ մարդը
մարդուն բարեկամ է, ընկեր և եղբայր։ Միաժամանակ Կանոնադրությունը
երաշխավորում է պարտիայի անդամի այդ անկապտելի իրավունքը. ինչ-
պես նշված է Կանոնադրության մեջ, քննադատությունը ճնշողները և քննա-
դատության համար հետապնդողները պետք է պարտիական խիստ պատաս-
խանատվության ենթարկվեն, ընդհուպ մինչև ՍՄԿՊ շարքերից նրանց վտա-
րելը։

Հաճախ քննադատության անվան տակ առանձին կոմունիստներ փորձում
են քողարկել իրենց անգործնականությունը, քննադատությունը ծառայեցնել
անձնական շահերին։ Այսպես էր վիճակը, օրինակ, քաղաքի միլիցիայի բա-
ժանմունքում։ Բաժանմունքի նախկին պետ Ա. Աբգարյանը, նրա տեղակալ Ք.
Հակոբյանը և քննիչ Ս. Խաչատրյանը, փոխանակ համատեղ պայքար մղելու
հակահասարակական արարքների, պետական միջոցների հափշտակումների
դեմ, զբաղված էին միմյանց դեմ նյութեր հավաքելով և իրար վարկաբեկելով,
այդ հասցրել էր միլիցիայի անձնակազմի կարգապահության անկման, հան-
ցավոր տարրերի նկատմամբ ներողամտության։

ՍՄԿՊ XXII համագումարը նոր սրությամբ առաջ քաշեց պետական ու
պարտիական ապարատի բոլոր օղակներում կադրերի ընտրության, նրանց տե-
ղաբաշխման ու դաստիարակության հարցը։ Կանոնադրությունը պարտիայի
անդամների վրա պարտականություն է դնում անշեղորեն կիրառել կադրերին
ըստ նրանց քաղաքական ու գործարար հատկանիշների ընտրելու՝ պարտիայի
գիծը։ Անհաշտ լինել այն բոլոր դեպքերում, երբ խախտվում են կադրերի ընտ-
րության ու դաստիարակության լենինյան սկզբունքները։ Պարտիական ու պե-
տական աշխատանքի բախտը վճռում են կադրերը։ Որքան բարձր են կադրերի
քաղաքական պատրաստության մակարդակը և մարքսիստական-լենինյան գի-
տակցականությունը, այնքան ավելի բարձր և արդյունավետ է աշխատանքը։
Պարտիական կազմակերպությունների խնդիրն է վճռականապես վերացնել
կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության բնագավառում



 եղած թերությունները։ Այդ կարևորագույն խնդրի լուծման գործում հզոր զենք
է ՍՄԿՊ Կանոնադրությունը։

ՍՄԿՊ Կանոնադրությունը կոմունիստներին պարտավորեցնում է պահպա-
նել պարտիական ու պետական կարգապահությունը, որը հավասարապես
պարտադիր է պարտիայի բոլոր անդամների համար։ Կոմունիստից պա-
հանջվում է մեծ ու փոքր գործերում պահպանել պարտիական կարգապա-
հությունը։ Պարտիական կարգապահությունը համարելով պարտիայի ամրու-
թյան հիմնական պայմաններից և նրա կազմակերպական կառուցվածքի ան-
կյունաքարերից մեկը, Լենինը նշում էր, որ ով թեկուզ չնչին չափով թուլացնում
է պրոլետարական պարտիայի երկաթյա կարգապահությունը, նա փաստորեն
օգնում է բուրժուազիային, ընդդեմ պրոլետարիատի։

Մեր պարտիայի առանձնահատկությունն այն է, որ կարգապահության
պահպանումը օրենք է, հավասարապես պարտադիր է պարտիայի բոլոր ան-
դամների համար, անկախ այն բանից, թե նրանք ինչ պաշտոն են գրավում
պարտիայի ու պետության մեջ։ «Պարտիան,— ասված է Կանոնադրության
մեջ,— ունի մեկ կարգապահություն, մեկ օրենք բոլոր կոմունիստների համար,
անկախ նրանց ծառայություններից ու գրաված պոստերից»։

Կոմունիստը հասարակական ակտիվ գործիչ է։ Պարտիայի անդամը պար-
տավոր է ակտիվ մասնակցել երկրի քաղաքական կյանքին, պարտիական ու
պետական գործերի կառավարմանը, օրինակ տալ հասարակական պարտքի
կատարման գործում։ Այժմ անհրաժեշտ է հասարակական գործունեության
կարգով կոմունիստներին ավելի լայնորեն ներգրավել պարտիական աշխա-
տանքում։ Այդ ուղղությամբ Դիլիջանի պարտկազմակերպությունը կուտակել է
որոշ փորձ։

Քաղկոմում ստեղծված են երեք արտահաստիքային բաժիններ, որտեղ
հասարակական հիմունքներով որպես բաժնի վարիչներ, հրահանգիչներ են
աշխատում 16 կոմունիստ։ Վերջերս քաղկոմի պլենումը ընտրեց նաև արտա-
հաստիքային քարտուղար։ Պարտիական կազմակերպություններում աշխա-
տում են մոտ 80 պրոպագանդիստներ և 350 ագիտատորներ. գաղափարական
աշխատանքն ավելի բարձր հիմքերի վրա դնելու համար քաղկոմին կից կազ-
մակերպված է հասարակական խորհուրդ։ Լենինի անվան սովխոզի, № 1 սա-
նատորիայի պարտիական կազմակերպություններում հասարակական հիմունք-
ներով հաջողությամբ գործում են քաղլուսկաբինետները։

Պարտիական կազմակերպությունների օրինակով հասարակական հի-
մունքները ծավալվում են նաև արհմիութենական, սովետական և կոմերիտա-
կան աշխատանքում։ Այսպես՝ ՀԼԿԵՄ քաղկոմի երկու քարտուղարն էլ արտա-
հաստիքային են։ Քաղսովետի ժողկրթության բաժնին կից առարկայական
հանձնաժողովներից բացի վերջերս ստեղծվել է հասարակական խորհուրդ՝
ուսուցիչների շրջանում տարվող աշխատանքները բարելավելու, նրանց ան-
հրաժեշտ մեթոդական օգնություն ցույց տալու նպատակով։ Քաղաքում գոր-
ծում են կուլտուրայի համալսարան, իրավաբանական ֆակուլտետ և այլն։

Արդի պայմաններում խոշոր նշանակություն է ստացել խաղաղության ու
ժողովուրդների բարեկամության հետագա ամրապնդման գործը։ Կոմունիստա-
կան պարտիան իր ստեղծման առաջին իսկ օրերից իր դրոշի վրա գրել է խա-
ղաղություն և բարեկամություն։ Այդ իր վառ արտահայտությունն է գտել Կո-
մունիստական պարտիայի նոր Կանոնադրության մեջ, ուր պարտիայի անդամ-

ներից պահանջվում է ամեն կերպ նպաստել ՍՍՌՄ պաշտպանական հզորու-
թյան ամրապնդմանը, անդուլ պայքար մղել խաղաղության ու ժողովուրդնե-
րի բարեկամության համար։

Նոր Կանոնադրության կարևոր առանձնահատկություններից մեկն էլ այն
է, որ նա, բարձր պահանջներ ներկայացնելով կոմունիստներին, միաժամանակ
լայն իրավունքներ է տալիս նրանց, բարձրացնում նրանց ակտիվությունն ու
ձեռներեցությունը, ստեղծում բոլոր հնարավորությունները՝ դրսևորելու պար-
տիայի անդամի անձնական ձիրքերն ու կարողությունները։ Աննախընթաց
պայմաններ են ստեղծվում կոմունիստների, պարտիական սկզբնական կազ-
մակերպությունների բուռն, ստեղծագործական նախաձեռնությունն ու
ինքնուրույնությունը միացնելու ամուր գիտակցական կարգապահության, պար-
տիական կոլեկտիվի ղեկավարության, վերադաս օրգանների որոշումների,
դիրեկտիվների անթերի կատարման հետ։ «Այսպիսով,— ասել է ընկ. Կոզլովը
ՍՄԿԿ XXII համագումարին տված իր զեկուցման մեջ,— Կանոնադրության մեջ
նախատեսված՝ պարտիայի անդամի պարտականությունները ելնում են մեր
մեծ գործի համար յուրաքանչյուր կոմունիստի պատասխանատվությունը
բարձրացնելու անհրաժեշտությունից։ Պարտիայի անդամի կողմից իր կանո-
նադրական պարտականությունների հստակ ըմբռնումը և Կանոնադրությամբ
նախատեսված լայն իրավունքների համակողմանի օգտագործումը պետք է ա-
պահովի կոմունիստների նախաձեռնության և ինքնագործունեության հետագա
զարգացումը, բոլոր պարտիական կազմակերպությունների մարտունակության
բարձրացումը»։

XXII համագումարի կողմից ընդունված Կանոնադրությունը լրացված է
մի շարք նոր պահանջներով, որոնք է՛լ ավելի են բարձրացնում պարտիական
կազմակերպությունների պատասխանատվությունը պարտիայի շարքերի աճ-
ման գործում, անհատական ընտրության սկզբունքի անշեղ կենսագործման
ապարեղում։ Պարտիական կազմակերպությունները պետք է ավելի հոգա-
տարությամբ զբաղվեն երիտասարդ կոմունիստների, պարտիայի անդամության
թեկնածուների դաստիարակության ու նրանց գաղափարական կոփման հար-
ցերով։ Կանոնադրությունը պահանջում է առավելագույն ուշադրություն հան-
դես բերել կոմունիստների գործերի քննարկման ժամանակ. սահմանված նոր
կարգի համաձայն, սկզբնական պարտիական կազմակերպության որոշումը
պարտիայից վտարելու մասին օրինական է համարվում, երբ դրա օգտին
քվեարկել է ոչ թե ժողովին ներկա գտնվող պարտիայի անդամների պարզ մե-
ծամասնությունը, այլ նրանց առնվազն $^2/_3$-ը։

Այս և Կանոնադրության մեջ արված մի շարք նման փոփոխությունների
նպատակն է ավելի բարձրացնել կոմունիստի կոչումը, կոմունիզմ կառուցող-
ների ջոկատի մարտիկի պատասխանատվությունը։

---

# ՆՈՐ ԽՆԴԻՐՆԵՐԻՆ ՀԱՄԱՊԱՏԱՍԽԱՆ


## Ա. ՄՈՒՐԱԴՅԱՆ

ՀԿՊ Աշտարակի շրջկոմի քարտուղար


Աշտարակի շրջանի պարտիական կազմակերպությունները նկատելիորեն
բարելավել են կոլտնտեսականների, բանվոր-ծառայողների շրջանում տարվող
ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքը։ Օգտագործելով գաղափա-
րական ներգործման բազմազան միջոցները, նրանք աշխատավորներին օգնում
են խոր ուսումնասիրելու պարտիայի նոր Ծրագիրը, XXII համագումարի փաս-
տաթղթերը, դրանք դարձնելով իրենց գործունեության մարտական ծրագիրը։

Պարտիական կազմակերպությունները քաղաքական-դաստիարակչական
աշխատանքում ջանում են կիրառել նոր, ավելի արդյունավետ ձևեր ու մեթոդ-
ներ, դրանք սերտորեն զուգակցել կազմակերպական աշխատանքի հետ, նպաս-
տել նոր մարդու ձևավորմանը, արտադրական պլանների կատարմանը։

Գաղափարական աշխատանքի կարևորագույն օղակներից է քաղաքական
լուսավորության ցանցը։ Ներկայումս ավելի քան 2100 կոմունիստներ ու ան-
պարտիականներ խմբակներում ու տեսական սեմինարներում բացառիկ հետա-
քրքրությամբ ուսումնասիրում են համագումարի նյութերը։ Ուշադրության է
արժանի այն փաստը, որ քաղաքական լուսավորության ցանցում ներգրավված
անպարտիականների թիվը յոթ հարյուրով ավելի է անցյալ տարվանից. որ-
պես պրոպագանդիստներ աշխատում են պարտշրջկոմի բոլոր պատասխանա-
տու աշխատողները, կոլտնտեսությունների, սովխոզների, հիմնարկ-ձեռնար-
կությունների շատ ղեկավարներ։

Քաղաքական-մասսայական լուրջ աշխատանք են կատարում մեր ագիտա-
տորները։ Ավելի քան յոթ հարյուր մարդ կոլտնտեսություններում, արտադրա-
կան ձեռնարկություններում և թաղամասերում կազմակերպված ագիտ-պունկ-
տերում աշխատավորներին պարզաբանում են XXII համագումարի ծրագրա-
յին որոշումները, ինչպես և սովետական ժողովրդի ձեռք բերած աշխատան-
քային մեծ հաջողությունները, Կոմունիստական պարտիայի ներքին ու արտա-
քին քաղաքականության, սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման, սո-
վետական ընտրական սիստեմի, միջազգային դրության և այլ հարցեր։

Շրջանային կոմիտեն մեծ ուշադրություն է հատկացնում դասախոսական
պրոպագանդային։ Միայն վերջին չորս ամսում Քաղաքական ու գիտական գի-
տելիքների տարածման ընկերության շրջանային բաժանմունքի, ՀԿՊ շրջկոմի
դասախոսական խմբի և տեղերում եղած ընկերների ուժերով կարդացվել են
մոտ երկու հարյուր վաթսուն զեկուցում ու դասախոսություն, որոնք հիմնակա-
նում նվիրված են եղել պարտիայի նոր Ծրագրում արծարծված հարցերին։

Շրջանի 22 գյուղերում ստեղծված են գյուղական դասախոսական խմբեր,
որտեղ ընդգրկված են ավելի քան երկու հարյուր մարդ։ Աշխատավորների հա-
մար կազմակերպված այդ մասսայական լեկտորիումը պրակտիկայում իրեն
արդարացնում է։ Առաջիկայում դասախոսական նման խմբեր են ստեղծվելու
նաև մնացած գյուղերում ու սովխոզներում։

Աշխուժացրել է իր փորձունեությունը պարտշրջկոմի դասախոսական խումբ
բը, որի անդամները պարբերաբար, սահմանված պլանի համաձայն քաղաքա-
կան լուսավորության ցանցի ունկնդիրների և աշխատավորների առաջ հան-
դես են գալիս դասախոսություններով։ Յուրաքանչյուր ամսվա սկզբին կար-
դացվելիք դասախոսությունների թեմատիկ պլանը հրապարակվում է շրջանա-
յին «Այգեգործ կոլտնտեսական» թերթում։ Այդ պլանում նշվում է, թե խմբի
որ անդամը ինչ թեմայով, երբ և որ օբյեկտներում է դասախոսություն կարդա-
լու։ Դա ոչ միայն բարձրացնում է խմբի անդամների պատասխանատվությունը,
այլև հնարավորություն է տալիս դասախոսությունների թեմաները պլանա-
վորելիս հաշվի առնել աշխատավորների կարծիքն ու ցանկությունները։

Գլխավորը դասախոսությունների որակն է, նրանց գաղափարական հա-
գեցվածությունը, այն, թե ինչպես է նյութը հրամցվում ունկնդիրներին։ Հայտ-
նի է, որ անգամ ակտուալ, աշխատավորներին խիստ հուզող հարցերին վերա-
բերող դասախոսությունը, երբ այն կարդացվում է չոր ու ցամաք, առանց հույ-
զի ու կրքի, սովորաբար վատ են ունկնդրում։ Այդ իսկ պատճառով մենք լուրջ
ուշադրություն ենք հատկացնում դասախոսների ընտրությանը, նրանց հետ
տարվող աշխատանքին։ Դասախոսներից շատերը տեսականորեն պատրաստ-
ված ու փորձառու, իրենց գործը սիրող մարդիկ են՝ պարտիական և սովետա-
կան ակտիվիստներ, գյուղատնտեսության մասնագետներ, բժիշկներ, ուսուցիչ-
ներ, իրավաբաններ և այլն։ Նրանց օգնելու համար սիստեմատիկաբար կազմա-
կերպվում են դասախոսությունների տեքստերի քննարկումներ, լսում դասա-
խոսությունները։ Օրինակ, վերջերս շրջկոմի արտահաստիքային իդեոլոգիա-
կան հանձնաժողովի անդամները տեղերում լսել են Հ. Գրիգորյանի, Ռ. Առուս-
տամյանի, Գ. Հովհաննիսյանի, Վ. Օհանյանի դասախոսությունները և նրանց
տվել մեթոդական անհրաժեշտ խորհուրդներ։ Դասախոսների խոսքի կուլտու-
րան զարգացնելու նպատակով հանձնարարում ենք նրանց շատ կարդալ գե-
ղարվեստական գրականություն, որպեսզի կարողանան իրենց խոսքը համեմել
ժողովրդական ասացվածքներով, թևավոր խոսքերով։

ՍՄԿԿ XXII համագումարի նյութերի, գիտական կոմունիզմի իդեաների
պարզաբանման հետ միասին շրջանային կոմիտեն և սկզբնական պարտիական
կազմակերպություններն առանձնակի տեղ են հատկացնում գիտա-աթեիստա-
կան պրոպագանդային։ Շրջկոմին կից գործում է աթեիստական սեկցիա. բացի
սեկցիայի անդամներից գիտա-աթեիստական թեմաներով հանդես են գալիս
նաև գյուղական դասախոսական խմբերում ընդգրկված քիմիայի, ֆիզիկայի
և բնագիտության դասատուները։ Հակակրոնական թեմաներով կազմակերպվող
զրույցների, զեկուցումների և դասախոսությունների ընթացքում շատերն օգ-
տագործում են գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումները, մեր կյան-
քից վերցրած այնպիսի կոնկրետ օրինակներ ու փաստեր, որոնք ցույց են տա-
լիս կրոնական նախապաշարմունքների վնասները։ Աշխատում ենք կրոնական
դոգմաների հերքումը կատարել գիտականորեն, որպեսզի այն կրի ոչ միայն
լուսավորչական, այլև մարտական, հարձակողական բնույթ։



Աշխատավորների էսթետիկական դաստիարակության ասպարեզում շոշա-
փելի գործ է կատարում շրջկենտրոնում գործող կուլտուրայի համալսարանը,
ուր ընդգրկված են ավելի քան երկու հարյուր մարդ։ Անցյալում համալսարա-
նի պարապմունքների ժամանակ կարդացվում էին միայն դասախոսություններ։
Վերջերս Քաղաքական ու գիտական գիտելիքների տարածման ընկերության
ռեսպուբլիկական վարչության հետ միասին որոշ փոփոխություններ մտցրինք
պարապմունքների անցկացման ձևի մեջ։ Օրինակ, հերթական պարապմունք-
ներից մեկի ժամանակ երաժշտագետ Ա. Բարսամյանի կարդացած «Ինչպես
հասկանալ երաժշտությունը» թեմայով դասախոսությունից հետո ելույթ ունե-
ցավ Պետական կոնսերվատորիայի սիմֆոնիկ նվագախումբը՝ դիրիժոր Մ.
Մալունցյանի ղեկավարությամբ։ Պարապմունքը (որին բացի համալսարանի
ունկնդիրներից մասնակցում էին ավելի քան երեք հարյուր մարդ) հաջող ան-
ցավ ու մեծ բավականություն պատճառեց ունկնդիրներին։

Մեր շրջանում լայն ընդունելություն են գտնում հարց ու պատասխանի
երեկոները։ Հաճախ են գյուղերում ու արտադրական ձեռնարկություններում,
շրջկենտրոնում կազմակերպվում այդպիսի երեկոներ, որտեղ աշխատավոր-
ներին հետաքրքրող հարցերին պատասխանում են պարտիական ու սովետա-
կան ղեկավար աշխատողները, մասնագետները, տնտեսավարները։ Մեզ մոտ
գործն այնպես է կազմակերպված, որ աշխատավորներին հուզող և ոչ մի հարց
անպատասխան չմնա։

Հարց ու պատասխանի երեկոներ են կազմակերպվում նաև կոնկրետ թե-
մաների շուրջը։ Այսպես. պարտիայի նոր Ծրագրի առանձին հարցերին նվիր-
ված երեկոներ են տեղի ունեցել Բազմաղբյուր, Փարպի, Ջորափ, Կարբի և այլ
գյուղերում։ Ոսկեվազում անցկացված երեկոյում հանդես եկան գյուղական
Սովետի գործկոմի նախագահը, փորձա-ցուցադրական տնտեսության ղեկավա-
րը և գյուղական դասախոսական խմբի անդամներից մեկը. Նրանք պատմեցին
իրենց հայրենի գյուղի անցյալի, ներկայի և նրա զարգացման հեռանկարների
մասին։ Երեկոյի մասնակիցներին առանձնապես հետաքրքրեց այն, թե առաջի-
կա քսան տարում Ոսկեվազի տնտեսությունն ու կուլտուրան ինչպես են զար-
գանալու և ինչ կոնկրետ անելիքներ ունեն իրենք XXII համագումարի հոյակապ
կանխագծումները կյանքում մարմնավորելու համար։ Ապա տրվեցին բազ-
մաթիվ հարցեր. երեկոյի վերջում հանդես եկավ շրջանային կուլտուրայի տան
երգի-պարի անսամբլը։

Պրոպագանդիստական աշխատանքում մենք մեծ տեղ ենք հատկացնում
աշխատավորների հետ արտադրության առաջավոր մարդկանց, ռևոլյուցիայի
վետերանների, գիտության ու կուլտուրայի անվանի գործիչների հանդիպում-
ների կազմակերպմանը։ Այսպես, Ոսկեվազի փորձա-ցուցադրական տնտե-
սության կովարուծական ֆերմայի վարիչ, ՍՄԿԿ XXII համագումարի պատ-
գամավոր Խ. Գյուլնազարյանը հանդիպումներ է ունեցել Բյուրականի, Ագա-
րակի, Ջորափի, Կոշի, Թալիշի կոլտնտեսականների հետ, պատմել համագու-
մարից ստացած իր տպավորությունների մասին։ Օգտվելով այն առիթից, որ
մեր շրջանում նկարահանումներ էր կատարում Կիևի Դովժենկոյի անվան կի-
նոստուդիայի խումբը, կազմակերպեցինք հանդիպում դերասանների հետ։

Մեծ է դրական օրինակի ուժը։ Առաջավոր կոլտնտեսությունների և կոլ-
տնտեսականների աշխատանքի դրական փորձի տարածման ու արմատավոր-
ման նպատակով, արտադրական կոլեկտիվներում հաճախ հանդես են գալիս

արտադրության առաջավորները՝ պատմելով գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման ուղղությամբ իրենց գործադրած ջանքերի, նախաձեռնությունների մասին։ Շրջկոմի քաղլուսկաբինետը պարբերաբար լույս է ընծայում «Առաջավորի բյուլետեն», որտեղ տպագրվում են առաջավոր փորձը լուսաբանող նյութեր։ Այսպես. բյուլետեններում հոդվածներ են տպագրվել Սարալանջի երիտասարդ հովիվ Ս. Թովմասյանի, Ուչանի ծխախոտագործուհի Ս. Ներսիսյանի, Ոսկեվազի փորձա-ցուցադրական տնտեսության եգիպտացորեն մշակողների աշխատանքի ուսանելի փորձի մասին և այլն։ Կոլտնտեսային ու սովխոզային թերթերի էջերում, ժողովներում և զրույցների ժամանակ պախարակվում են պորտաբույծները, հանրօգուտ աշխատանքից խուսափողները, նրանց նկատմամբ ստեղծվում է անհանդուրժողականության մթնոլորտ, օգնելով այդպիսիններին կանգնելու ուղիղ ճանապարհի վրա։

Ագիտացիոն-մասսայական, պրոպագանդիստական աշխատանքի բարելավումը բարերար կերպով է ազդել մեր կոլտնտեսությունների, սովխոզների և արտադրական ձեռնարկությունների գործունեության վրա։ Շատ տնտեսություններում լավ են կազմակերպված անասունների խնամքն ու կերակրումը, հաջող է ընթանում ծնի կամպանիան։ Նախապատրաստական մեծ գործ է արվում գարնան գյուղատնտեսական աշխատանքները հաջող անցկացնելու ուղղությամբ, միջոցառումներ են իրականացվում տնտեսությունները ավելի ամրապնդելու, աշխատանքային կարգապահությունը բարձրացնելու համար։

Գաղափարական աշխատանքը մեր շրջանի պարտիական կազմակերպություններում ավելի լիարյուն ու բովանդակալից է դարձել։ Բայց այն, ինչ արված է, չի կարող մեզ բավարարել։ ՍՄԿԿ XXII համագումարի որոշումները կատարելու համար պարտիական կազմակերպությունները պետք է վճռականորեն բարձրացնեն քաղաքական-դաստիարակչական աշխատանքի բովանդակությունը, գործադրեն ներգործման ավելի կատարյալ ձևեր։ Մինչդեռ մեզ մոտ պրոպագանդիստական աշխատանքը հաճախ կրում է վերացական բնույթ, չի շաղկապվում կյանքի, տնտեսական շինարարության գործնական խնդիրների հետ։ Դա ամենահիմնական թերությունն է, որը դեռ չենք հաղթահարել։ Քիչ դասախոսություններ են կարդացվում հատկապես շրջանի հեռավոր՝ Թղիթ, Քարաշամբ, Լեռնարոտ գյուղերում։ Առանձին պարտիական կազմակերպություններ դեռևս կառչում են քաղաքական աշխատանքի հին, ստանդարտ մեթոդներին, չեն որոնում և կիրառում նոր, ավելի մատչելի ու ազդեցիկ ձևեր։ Մեզ մոտ քիչ ուշադրություն է նվիրվում տեսական կոնֆերանսների կազմակերպմանը. ռեսպուբլիկայի անվանի գիտնականները, արվեստագետները, պարտիական, սովետական և տնտեսական ղեկավար գործիչները դեպքից դեպք են հանդես գալիս շրջանի աշխատավորների առջև։

Աշտարակի շրջանի պարտիական կազմակերպությունները մշակել են կոնկրետ միջոցառումներ, որպեսզի ավելի ուժեղացնեն գաղափարական աշխատանքը, այն վերածեն կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, նոր մարդու դաստիարակության ակտիվ գործոնի։

---

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԼՈՒԾՄԱՆ ԿԱՐՈՏ ՀԱՐՑԵՐ*

Արթիկի շրջանի յուրաքանչյուր կոլտնտեսություն ու սովխոզ, լինի այն մեծ թե փոքր, ունի անասնաբուծական չորս-հինգ ֆերմա։ Առանց նկատի ունենալու եղած հնարավորությունները, նրանք հավասարապես զբաղվում են և տավարաբուծությամբ, և՛ ոչխարաբուծությամբ, և՛ խոզաբուծությամբ, ունեն թռչնաբուծական և մեղվաբուծական ֆերմաներ։ Այնինչ մեր բնա-կլիմայական պայմաններից ելնելով, տնտեսությունները պետք է մասնագիտացվեն։ Լեռնային հատվածում գտնվող Հնաբերդի, Մանթաշի, Գեղադիրի և Պեմզաշենի, մասամբ էլ Արթիկի սովխոզները մեծ հնարավորություններ ունեն ոչխարաբուծությամբ զբաղվելու։ Արագածի լանջերին ձմեռանոցներ կառուցելը, ոչխարների հոտերը նախ ամառանոցներում, ապա ձմեռանոցներում պահելը, որը միանգամայն հնարավոր է, զգալի չափով կկրճատի արտադրանքի մեկ միավորի աշխատանքային ծախսումները. ինչ խոսք, որ դա կնպաստի տնտեսությունների շահութաբերության բարձրացմանը։

Տավարաբուծությունը, որը, ինչպես ցույց է տվել տարիների փորձը, նույնպես զարգացման լայն հեռանկարներ ունի։ Բնական խոտհարքների, գյուղամերձ և ամառանոցային արոտների առկայությունը հնարավորություն է տալիս մեծ չափով բարձրացնելու տավարաբուծության եկամտաբերությունը։ Սակայն մեր շրջանի սովխոզներում պայմաններ չկան խոզաբուծության զարգացման համար։ Տնտեսության այդ ճյուղը պահվում է բացառապես գնովի կերով. չունենալով ոռոգելի տարածություններ և գտնվելով բարձր լեռնային գոտում, հնարավոր չէ մշակել կերի արմատապտուղներ։ Ահա թե ինչու մսի ինքնարժեքը խիստ բարձր է. հայտնի է, որ մեկ ցենտներ խոզի միսը վաճառվում է 80 ռուբլով, այնինչ 1960 թվականին Արթիկի սովխոզում մեկ ցենտներ խոզի մսի արտադրության վրա ծախսվել է 110, իսկ Հնաբերդում՝ 141 ռուբլի։

Նույն պատկերն է սարահարթում գտնվող կոլտնտեսություններում։ Օրինակ, Հայրենյացի կոլտնտեսությունն ունի 748 հեկտար վարելահող, որից հացահատիկային կուլտուրաների ցանքսի տակ է դրված 395 հեկտարը։ Տնտեսությունը ոչ մի հեկտար ոռոգելի տարածություն չունի։ Նա պահում է 675 գլուխ խոշոր եղջերավոր անասուն, այդ թվում՝ 193 կով, 2088 մանր եղջերավոր անասուն, 152 խոզ։ Այստեղ գրեթե զարգացման հավասար մակարդակի վրա են գտնվում տնտեսության բոլոր ճյուղերը։ Սակայն, երբ վերլուծում ենք այդ ճյուղերի պահպանման վրա ծախսված աշխատանքն ու դրամական միջոցները և համեմատում ստացած եկամտի հետ, ապա ակնհայտ է դառնում արտադրության մասնագիտացման անհրաժեշտությունը։ Վերջին տարիներին

* Առաջարկության կարգով։

կոլտնտեսության երկու ճյուղերը՝ ոչխարաբուծությունն ու խոզաբուծությունը հետևյալ պատկերն են ներկայացնում.

| Տնտեսության ճյուղեր | Տարիներ | Ընդամենը ծախսված է (ռուբ.) | Ստացված է եկամուտ (ռուբ.) |
|---|---|---|---|
| Ոչխարաբուծություն | 1958 | 14427 | 31530 |
| | 1959 | 20650 | 32950 |
| | 1960 | 24959 | 30746 |
| Խոզաբուծություն | 1958 | 9933 | 5120 |
| | 1959 | 10530 | 3736 |
| | 1960 | 9257 | 7500 |

Զնայած խոշոր միջոցներ են ներդրվել խոզաբուծության պահպանման համար, սակայն սպասված արդյունքը չի ստացվել: Պատճառն այն է, որ խոզը պահվում է (ինչպես ասացինք) բացարձակապես գնովի կերի միջոցով, իսկ ոչխարը՝ սեփական կերով, այդ իսկ պատճառով ոչխարաբուծությունից ավելի մեծ արդյունք է ստացվում: 1960 թվականին 72 ցենտներ խոզի մսի արտադրության համար կոլտնտեսությունը ծախսել է (բոլոր ծախսումները դրամի վերածած) 9257 ռուբլի և ստացել է 7500 ռուբլու եկամուտ, կամ՝ կոլտնտեսությունը նույն տարում վնաս է կրել 1757 ռուբլի: Նույն՝ 1960 թ. ոչխարաբուծության վրա ընդամենը ծախսվել է 24.959 ռ., բայց ստացվել է 30.746 ռուբլի եկամուտ: Ճիշտ է, ոչխարաբուծությունից ստացված եկամուտները դեռևս քիչ են, բայց այդ ճյուղը զարգացման խոշոր հեռանկար ունի: Այստեղ տավարաբուծությունն աստիճանաբար կդառնա տնտեսության համար որպես լրացուցիչ ճյուղ:

Հայկասարի և Հովտաշենի կոլտնտեսություններից յուրաքանչյուրը միավորում է 40 տնտեսություն. այդ փոքրիկ կոլտնտեսություններն զբաղվում են անասնաբուծության գրեթե բոլոր ճյուղերով: Հայկասարի կոլտնտեսությունը 1960 թվականին այդ ճյուղերից ստացել է 36700, իսկ Հովտաշենինը՝ 21200 ռուբլու դրամական եկամուտ: Եվ դա այն ժամանակ, երբ առաջին կոլտնտեսությունը դրանց պահպանման վրա նույն տարում ծախսել է 49700, իսկ երկրորդը՝ 22300 ռուբլի: Ի դեպ, այդ տնտեսություններում վերջին երեք տարում ծախսումները զգալի չափով գերազանցել են եկամուտներին: Այդ պատճառով էլ երկու կոլտնտեսություններն էլ գտնվում են ֆինանսական և տնտեսական ծանր վիճակում: Նրանք հնարավորություն չունեն կենսագործելու որևէ լուրջ միջոցառում գյուղերի բարեկարգման, կոլտնտեսականների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման, կապիտալ շինարարության ուղղությամբ: Եթե այդ տնտեսությունները մասնագիտացվեն, զարկ տրվի հիմնականում ոչխարաբուծությանը, իսկ տավարաբուծությունը դառնա լրացուցիչ ճյուղ, առաջիկա երկու-երեք տարում նրանք դուրս կգան զարգացման լայն ճանապարհ:

Արթիկի շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները պետք է առավելապես մասնագիտացվեն ոչխարաբուծության բնագավառում: Դրանով հնարավոր կլինի մեծ չափերով ավելացնել անասնաբուծական մթերքների արտադրությունը: Եթե այս տարվանից սկսենք տնտեսությունների մասնագիտացումը, և, ամենից առաջ, հրաժարվենք խոզաբուծությունից, 2600 գլուխ խոզի փոխարեն առաջիկա երեքից-չորս տարում 12 հազարով ավելացնենք մանր եղջերավոր անասունների գլխաքանակը, պայմաններ կստեղծվեն բրդի և մսի արտադրության շեշտակի ավելացման համար: Այսպիսով յոթնամյակի վերջին տարում, 1960 թվականի համեմատությամբ, բրդի արտադրությունը կավելանա 360 ցենտներով, կամ 36 տոկոսով, մսի արտադրությունը՝ 2800 ցենտներով կամ 24 տոկոսով: Մեր կարծիքով թռչնաբուծությամբ պետք է զբաղվել այնտեղ, որտեղ դրա համար կան նպաստավոր պայմաններ. օրինակ, Մանթաշի սովխոզում նախատեսվում է կազմակերպել թռչնաբուծական խոշոր ֆաբրիկա:

Այս ամենը վկայում են տնտեսության մասնագիտացման լուրջ առավելությունների մասին, որը մյուս միջոցառումների հետ մեկտեղ անհրաժեշտ նախապայման կստեղծի գյուղատնտեսության արտադրության զարգացման բնագավառում պարտիայի XXII համագումարի առաջադրած խնդիրները հաջողությամբ լուծելու համար:

Գյուղատնտեսության շեշտակի վերելքի կարևոր պայման է հանդիսանում նաև ցանքաշրջանառության վերակառուցումը և սակավ բերքատու կուլտուրաները առավել բերքատու կուլտուրաներով փոխարինելը: Ժամանակն է, որ յուրաքանչյուր շրջանի պարտիական ու սովետական կազմակերպություն իրավունք ունենա համարձակ կերպով ընտրելու թե ո՞ր կոլտնտեսությունում ու սովխոզում ո՞ր կուլտուրան կարելի է ցանել և առանց մեծ ծախսումների մեծ արդյունք ստանալ:

Առանց եգիպտացորենի շատ կաթ և միս ստանալ հնարավոր չէ: 1958 թվականին Նոր կյանքի կոլտնտեսությունը ցանեց 56 հեկտար եգիպտացորեն, յուրաքանչյուր հեկտարից ստացավ 178 ցենտներ կանաչ մասսա և կոնսերվացրեց 240 տոննա կողր: Այդ տարին յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստացվեց 1786 կիլոգրամ կաթ: Եվ ահա, միայն այն պատճառով, որ 1959 թվականին եգիպտացորենի ամբողջ ցանքատարածությունը կարկտահարվեց, իսկ 1960 թվականին՝ ցրտահարվեց, կոլտնտեսությունը չկարողացավ սիլոս պատրաստել. երկու տարվա ընթացքում, 1958 թվականի համեմատությամբ, մեկ ֆուրաժային կովի կաթնատվությունը 1961 թվականին պակասեց 355 կիլոգրամով:

Արթիկի շրջանի կոլտնտեսություններում եգիպտացորենի մշակությունը լայնորեն արմատավորվել է: Եթե 1957 թվականին շրջանում ցանվեց 886 հեկտար եգիպտացորեն, ապա 1961 թվականին՝ 1191: Սակայն եգիպտացորենից մենք շատ ցածր բերք ենք ստանում: 1958 թվականին շրջանում յուրաքանչյուր հեկտարից ստացվել է 52,5 ցենտներ, 1959 թվականին՝ 58,7, 1960 թ.՝ 66,9, 1961 թվականին՝ 15,9 ցենտներ կանաչ մասսա: Անշուշտ, վերջին երեք տարում պարբերաբար կրկնվող կարկտահարությունը, ցրտահարությունը և երաշտը իրենց հետևանքն են թողել: Սակայն կա նաև երկու օբյեկտիվ պատճառ, որոնք խիստ բացասաբար են անդրադառնում եգիպտացորենի բերքատվության վրա:

Առաջինը՝ շրջանացված սերմացուի բացակայությունն է: Չունենալով սեփական շրջանացված եգիպտացորենի սերմ, մենք ստիպված ենք մի տարի սերմ բերել Իջևանից, մյուս տարի՝ Ալավերդուց, հաճախ էլ՝ Կուբանից: Օրինակ, Իջևանից բերված եգիպտացորենի սերմը մեր պայմաններում լավ արդյունք չի տալիս, քանի որ մեր և Իջևանի շրջանի բնակլիմայական պայմանները տարբեր են: Իջևանը համեմատաբար խոնավ, տաք կլիմա ունի և ծովի մակերևույթից բավականին ցածր է, քան մեր շրջանը: Մեր պայմաններում ցան-

վող սերմացուն պետք է լինի ցրտադիմացկուն, դիմանա նաև երաշտին, ունե-
նա ավելի կարճ վեգետացիոն շրջան։ Լավ կլինի, եթե Գյուղատնտեսության
մինիստրությունը Շիրակի դաշտավայրի որևէ շրջանի փորձացուցադրական
տնտեսություններից մեկում մշակի եգիպտացորենի շրջանացված սերմացու։
Դա հրամայական անհրաժեշտություն է։ Եգիպտացորենի ցածր բերքատվության
մյուս կարևոր պատճառը ցանքսի, մշակության և բերքահավաքի աշխատանք-
ների մեքենայացման խիստ ցածր մակարդակն է։

Նախատեսվում է առաջիկա երեք-չորս տարում (հիմնականում ի հաշիվ
բազմամյա խոտաբույսերի) սարահարթի տնտեսություններում եգիպտացորե-
նի ցանքատարածությունները ընդարձակել 400 հեկտարով։ Իսկ ինչ վերաբե-
րում է շրջանի նախալեռնային գոտու տնտեսություններին, որոնք գտնվում են
ծովի մակերևույթից 1800—2100 մետր բարձրության վրա, եգիպտացորենի
փոխարեն պետք է ցանել վիկա-վարսակի խառնուրդ։ Բանն այն է, որ այստեղ
եգիպտացորենի ցանքը կատարվում է միայն հունիսի 15—25-ը, օգոստոսի
վերջերին վրա են հասնում ցրտերը. շատ հաճախ ցրտահարություն է լինում
նաև հունիսի վերջերին։ Բույսերի զարգացման վեգետացիոն շրջանը, ինչպես
տեսնում ենք, 120—125 օրվա փոխարեն այդ գոտու սովխոզներում տևում է
ընդամենը 70—80 օր։ Արդյունքը լինում է շատ տխուր։ Այդ է ցույց տալիս
հետևյալ տարիներին յուրաքանչյուր հեկտարից ստացված բերքի (կանաչ մաս-
սա) չափը:

| | 1959 թ. | 1960 թ. | 1961 թ. |
|---|---|---|---|
| Հնաբերդ | 28,2 ց. | 12,2 ց. | 9,4 ց. |
| Գեղադիր | 56 ց. | 35 ց. | 14,6 ց. |
| Մանթաշ | 20 ց. | 51,2 ց. | 19,6 ց. |

Ինչպես տեսնում ենք, վերո-
հիշյալ սովխոզները եգիպտացո-
րենից ստացել են չնչին բերք,
մեկ հեկտարից՝ աննշան կերի
միավոր, որի հետևանքով եգիպտացորենի մեկ ցենտների ինքնարժեքը շատ
բարձր է։

Մինչդեռ այդ նույն տնտեսությունների հողատարածություններին կից
Արևշատի կոլտնտեսությունում հիանալի բերք է տալիս վարսակը։ Այսպես՝ 1960
թվականին մեկ հեկտարից այստեղ ստացվեց 62 ցենտներ վարսակ, կամ 33,3
ցենտներ կերի միավոր, իսկ երեք սովխոզներում եգիպտացորենի մեկ հեկտա-
րից 1960 թվականին միջին հաշվով ստացվել է 29 ցենտներ, կամ 5,80 ցենտ-
ներ կերի միավոր. մեկ ցենտներ կերի միավորը սովխոզների վրա նստել է
3,19 ռուբլի, իսկ Արևշատի կոլտնտեսությանը՝ 2,1 ռուբլի։

Պարտիան խնդիր է դնում մինչև վերջ հաղթահարել խոտադաշտային ցան-
քաշրջանառությունում տեղ գտած շաբլոնը։ Հենվելով առաջավոր փորձի և
գիտության նվաճումների վրա՝ հարկավոր է ըստ գոտիների մշակել գիտակա-
նորեն հիմնավորված հողօգտագործման սիստեմ։ Ինչպես ասաց Ն. Ս. Խրուշ-
չովը՝ հողօգտագործման այն սիստեմն է լավ, որը ներդրված աշխատանքի դի-
մաց տալիս է մաքսիմալ քանակությամբ մթերք, այն ցանքաշրջանառության
կառուցվածքն է լավ, որը մեկ հեկտար վարելահողի դիմաց տալիս է ավելի
մեծ քանակությամբ հատիկ, կերային միավոր։

Մեր պայմաններում հրամայական անհրաժեշտություն է խոտադաշտային
ցանքաշրջանառության վերանայումը։ Տեղերից մենք միշտ բողոքներ
էինք ստանում առկա ցանքաշրջանառության մասին։ Ամեն տարի վերանայելով
ցանքաշրջանառությունը և ամեն կերպ ձգտելով ի հաշիվ հացահատիկային
կուլտուրաների ավելացնել բազմամյա խոտաբույսերի ցանքատարածություն-



ները, հասել էինք այն բանին, որ 1961 թվականին արդեն ցանքաշրջանառու-
թյան մեջ խոտացանությունը կազմեց 33,1 տոկոս, իսկ առանձին տնտեսու-
թյուններում՝ ավելի բարձր. օրինակ, Արևշատի ու Պեմզաշենի կոլտնտեսու-
թյուններում՝ 35, Գեղադիրում՝ 36 տոկոս։

Վերջին չորս տարում հացահատիկային կուլտուրաների ցանքատարածու-
թյունը նորից զգալի չափով կրճատվեց։ Եթե 1958 թվականին շրջանում ցան-
վել էր 12210 հեկտար հացահատիկ, 5152 հեկտար բազմամյա խոտաբույսեր,
ապա 1961 թվականին ցանվեց 11054 հեկտար հացահատիկ, 6490 հեկտար
բազմամյա խոտաբույսեր. անցած չորս տարում 1338 հեկտարով ավելացան
բազմամյա խոտաբույսերի ցանքատարածությունները։ Եթե բազմամյա խոտաբույսերի ցան-
քատարածությունների ավելացմամբ լուծվեր կերի կայուն բազա ստեղծելու
խնդիրը, հարկ չէր լինի բարձրացնել այս հարցը։ Սակայն խոտադաշտային
ցանքաշրջանառության կիրառմամբ չլուծվեց անասունների կերի պրոբլեմը,
որը վճռական նշանակություն ունի անասնաբուծության զարգացման համար։
Այժմ էլ մեր շրջանը կերի խիստ պահանջ ունի։

Այսպիսով, խոտադաշտային ցանքաշրջանառությունը մեր հողակլիմայա-
կան պայմաններում իրեն չի արդարացնում։ Համոզվելու համար բերենք մի
օրինակ. Փանիկի կոլտնտեսությունը շրջանի խոշոր տնտեսություններից է։
Այն ունի 1009 հեկտար վարելահող, որից հացահատիկային կուլտուրաները
զբաղեցնում են 507 հեկտար, կամ 50,3 տոկոսը, բազմամյա խոտաբույսերը՝
297 հեկտար կամ 29,4 տոկոսը։ Խոտադաշտային ցանքաշրջանառության այս-
պիսի կառուցվածքը չի օգնում լուծելու հացահատիկի և անասունների կերի
հարցը։ Ըստ տարիների բազմամյա խոտաբույսերի և հացահատիկային կուլ-
տուրաների բերքատվությունը և մեկ հեկտարից ստացվող կերի միավորը ներ-
կայացնում են հետևյալ պատկերը.

| | 1959 թ. | | 1960 թ. | | 1961 թ. | |
|---|---|---|---|---|---|---|
| | բերք հեկ-տարից (ցենտն.) | վերածված կերի միա-վորի | բերք հեկտա-րից (ցենտն.) | վերածված կերի միա-վորի | բերք հեկտա-րից (ցենտն.) | վերածված կերի միա-վորի |
| Հացահատիկ<br>Կորնգան (խոտ) | 14<br>17 | 15,4<br>8,5 | 15<br>26,4 | 16,5<br>13,2 | 5,7<br>4,2 | 6,3<br>2,1 |

Այսպիսի պատկեր գոյություն ունի նաև մյուս կոլտնտեսություններում։
Մեջ բերված տվյալներից պարզ երևում է, որ հացահատիկի մեկ հեկտարից
ավելի շատ կերի միավոր է ստացվում*, քան խոտադաշտային ցանքաշրջանա-
ռության դեպքում։ Իհարկե, դրանից չի հետևում, որ խոտաբույսեր ցանելուց
պետք է ամբողջովին հրաժարվել։

Մեր շրջանի բնակլիմայական պայմաններում, մասնավորապես սարա-
հարթի կոլտնտեսություններում, Մանթաշի ջրամբարի շահագործումից հետո
ոռոգելի հողատարածությունները կհասնեն ավելի քան 4600 հեկտարի։ Այդ-
պիսով, շրջանում լայն հնարավորություն կստեղծվի շարահերկ կուլտուրանե-

* Հացահատիկը կերի միավորի վերածելիս նկատի է առնված մեկ հեկտարից ստացված
ցորենի և դարմանը (4:1 հարաբերությամբ)։

րի՝ լոբի, բակլա, ոլոռն ցանելու համար: Անցյալ տարի Վարդաքարի կոլտըն-
տեսությունը փորձի համար ցանեց ոլոռն, դա առաջին փորձն էր և մեր պայ-
մաններում լայն հեռանկարներ ունի: Նախատեսում ենք 1961 թ. համեմատու-
թյամբ մոտակայում հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությու-
նըն ավելացնել 1150 հեկտարով:

ՍՄԿՊ Կենտկոմի 1961 թ. Հունվարյան պլենումը արձանագրեց, որ գյուղա-
տնտեսությանը սպասարկող արդյունաբերությունը վատ է աշխատում, որի
հետևանքով էլ ցածր է գյուղատնտեսական աշխատատար պրոցեսների մեքե-
նայացման մակարդակը: Պլենումը հանձնարարեց միութենական ռեսպուբլի-
կաների Մինիստրների Սովետներին՝ տեղերում կազմակերպել գյուղատնտեսա-
կան մեքենաների ու գործիքների արտադրությունը:

Պարտիայի XXII համագումարում ընկեր Խրուշչովն ասաց. «Հարկավոր է
առավելագույն կարճ ժամկետներում բոլոր կոլտնտեսություններն ու սովխոզ-
ներն ապահովել այնպիսի մեքենաների կոմպլեքսով, որոնք համապատասխա-
նեն գյուղատնտեսական արտադրության առաջավոր տեխնոլոգիային, առանձ-
նահատուկ հոգատարություն ցուցաբերել հացահատիկային կուլտուրաների,
եգիպտացորենի, բամբակի, վուշի, շաքարի ճակնդեղի, կարտոֆիլի մշակու-
թյան համար մեքենաներ, ինչպես նաև անասնաբուծության աշխատանքների
մեքենայացման տեխնիկա ստեղծելու նկատմամբ»:

Ցավոք սրտի ռեսպուբլիկայի Պետպլանը գյուղատնտեսական մեքենաների
արտադրությունը կազմակերպելու ուղղությամբ դեռևս ոչինչ չի ձեռնարկել:
Իսկ մեզ մոտ վիճակը խիստ աննախանձելի է: Եգիպտացորենի ցանքի 90 տոկո-
սը մեր կոլտնտեսություններում ու սովխոզներում կատարվում է հացահատիկի
շարքացանների միջոցով: Միջշարային տարածությունների մշակման համար
չկան կուլտիվատորներ, ամբողջ մշակությունը կատարվում է ձեռքով: Եթե ա-
ռաջավոր տնտեսություններում մի մեխանիզատորը մշակում է 500—600 հեկ-
տար եգիպտացորեն, մեր պայմաններում մեկ աշխատողը հազիվ հասցնում է
մշակել մեկ հեկտար: Էլ ի՞նչ խոսք կարող է լինել մեկ միավորի վրա կատար-
վող աշխատանքային ծախսումների կրճատման մասին: Ավելին. եգիպտացո-
րենի բերքահավաքը, որը շատ ծանր է, կատարվում է ձեռքով և ձգձգվում է
մոտ մեկ ամիս: Այդ պատճառով էլ թանկ է նստում մեկ միավոր արտադրանքի
ինքնարժեքը, բերքահավաքի ձգձգման պատճառով մեծ չափերի են հասնում
կորուստները: Մեր կարծիքով անհրաժեշտ է ռեսպուբլիկայի որևէ գործարա-
նում կազմակերպել եթե ոչ սիլոսի կոմբայնի, գոնե կուլտիվատորների և շար-
քացանների արտադրություն, դա վճռական նշանակություն կունենա եգիպտա-
ցորենի բերքատվությունը բարձրացնելու գործում և կնպաստի անասնաբուծա-
կան մթերքների արտադրության ավելացմանը:

Մեզ հուզում է ևս մի հարց: Դա սովխոզների բանվորներին աշխատանքով
ապահովելու խնդիրն է: Մեր սովխոզները կաթնաանասնապահական են, ի վի-
ճակի են զբաղեցնելու եղած բանվորների 15—30 տոկոսը: Օրինակ, Հնա-
բերդի սովխոզում հաշվվում են 990 աշխատունակ մարդիկ, մինչդեռ հիմնա-
կան աշխատանքում զբաղված են 350 մարդ: Մնացած բանվորական ուժը հնա-
րավոր չէ ընդգրկել աշխատանքում: Այդ իրավացիորեն դժգոհություն է առա-
ջացնում: Մեզ թվում է, որ Հայկ. ՍՍՌ Մինիստրների Սովետը պետք է ուսում-
նասիրի բանվորական ուժի զբաղվածության հարցը ռեսպուբլիկայի բոլոր շըր-
ջաններում և գործնական միջոցներ ձեռք առնի այդ ուղղությամբ: Սովխոզնե-



րի կենտրոններում որևէ արտադրություն կազմակերպելը, ըստ մեզ, այդ հար-
ցի լուծման լավագույն միջոցն է:

ՀԿՊ Կենտկոմը և Հայաստանի կառավարությունը վերջին շրջանում զգալի
աշխատանք են կատարել արտադրողական ուժերի ճիշտ տեղաբաշխման ուղ-
ղությամբ: Ռեսպուբլիկայի արդյունաբերական խոշոր կենտրոնների կողքին
ստեղծվում են արդյունաբերական նոր օջախներ:

Արդյունաբերության զարգացումը այժմ անհրաժեշտ է ուղղել տեղական
հումքի լրիվ օգտագործման նպատակին: Այդպիսի քաղաքականությունը կօգ-
նի տեղական հումքի (մասնավորապես շինանյութերի) բազայի վրա մեծ մասշ-
տաբներով ընդարձակելու շինանյութերի արտադրությունը, զգալի չափով է-
ժանացնելու շինարարությունը. այդ միջոցառումը լայն թափ կհաղորդի, մաս-
նավորապես բնակելի շենքերի շինարարությանը:

Մինչդեռ տեղական հումքը, հատկապես շինանյութերը, դեռևս անբավա-
րար են օգտագործվում: Նկատվում է նեղ գերատեսչական մոտեցում: Վերջերս
շրջկոմում քննության առնվեց տեղական հումքի օգտագործման հարցը: Ու-
սումնասիրությունը ցույց տվեց, որ Արթիկի շրջակայքը հարուստ է ոչ միայն
տուֆ քարով, այլև բազալտով, շլակով, բարձրորակ կավով: Արթիկից վերև,
Արագածի լանջերին ընկած տարածության վրա կան շլակի անհատնում պաշար-
ներ՝ առանց հողային շերտի և այլ խառնուրդների: Շլակը հիանալի շինանյութ
է. դրա կարիքն ունեն ոչ միայն ռեսպուբլիկայի շինարարական կազմակերպու-
թյունները, այլև Վրաստանը: Այժմ, երբ պարտիան դնում է Անդրկովկասյան
ռեսպուբլիկաների տնտեսական շրջանների գործունեության կոորդինացման
հարցը, այլևս ոչ մի նշանակություն չպետք է ունենա, թե տվյալ հումքից ռես-
պուբլիկայում կա, թե՞ ոչ, այդ հումքի բազայի վրա կառուցված գործարաննե-
րը ռեսպուբլիկայի պահանջմունքները որքանո՞վ են բավարարում: Պետք է բո-
լոր դեպքերում նկատի ունենալ համապետական շահը՝ ամենալայն համագոր-
ծակցությամբ: Գերատեսչական մոտեցումը տեղական շինանյութերի ռեսուրսների
օգտագործման հարցում պետք է մինչև վերջ հաղթահարվի: Մեզ թվում է, որ
Արթիկում վերջերս հայտնաբերված շլակի պաշարները պետք է անպայման
օգտագործվեն: Այդ աշխատանքներում կներգրավվեն մեծ թվով բանվորներ և
կլուծվի աշխատանքով չզբաղվածների հարցը:

Հ. ԻԿԻԼԻԿՅԱՆ

ՀԿՊ Արթիկի շրջկոմի քարտուղար

---

# ԱՊԱՀՈՎԵԼ ՀՈՏԻ ՆՈՐՄԱԼ ՎԵՐԱՐՏԱԴՐՈՒԹՅՈՒՆԸ

Ուսումնասիրելով ՍՄԿՊ XXII համագումարի որոշումները և պարտիայի
նոր Ծրագիրը, ռեսպուբլիկայի կոլտնտեսականներն ու կոլտնտեսուհիները, սով-
խոզների բանվորներն ու բանվորուհիները, գյուղատնտեսության մասնագետ-
ները սոցիալիստական լայն մրցություն են ծավալել՝ արագացնելու հողագոր-
ծության և անասնաբուծության զարգացման տեմպերը, օգտագործելու բոլոր
ռեզերվները՝ երկրին ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ տալու համար։
Անասնաբուծության զարգացման բնագավառում նրանք հիմնական խնդիրն
են համարում՝ ավելացնել կաթի, մսի, բրդի և ձվի արտադրությունը, որին կա-
րելի է հասնել միայն կերի բազա ստեղծելու, բոլոր տեսակի անասունների
գլխաքանակն ավելացնելու և մթերատվության բարձրացման միջոցով։ Առանց
անասունների գլխաքանակի ավելացման, նրանց որակական կազմի բարելավ-
ման, մթերատվության բարձրացման, հնարավոր չէ անասնաբուծական մթերք-
ների առատություն ստեղծել։ Ահա թե ինչու մեր պարտիան և կառավարությու-
նը մեծ նշանակություն են տալիս հանրային հոտի, մանավանդ մայրական
կազմի ավելացմանը, ավելի մեծ քանակությամբ մատղաշների ստացմանը։

Ճիշտ է, վերջին տարիներին, մանավանդ ՍՄԿՊ Կենտկոմի 1953 թվականի
Սեպտեմբերյան պլենումի պատմական որոշումից հետո, մեր ռեսպուբլիկա-
յում անասունների գլխաքանակը կոլտնտեսություններում և սովխոզներում
զգալի չափով ավելացել է, բայց դա դեռևս չի ապահովում պարտիայի ու կա-
ռավարության առաջադրանքների լրիվ կատարումը։ Ավելին, 1961 թվականի
դեկտեմբերի մեկի դրությամբ, 1960 թվականի նույն ժամանակաշրջանի հա-
մեմատությամբ, ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում և սովխոզներում խո-
շոր եղջերավոր անասունների գլխաքանակը ոչ թե ավելացել, այլ պակասել է
3,2, ոչխարներինն ու այծերինը՝ 3,8, խոզերինը՝ 8,0 տոկոսով։

Հանրային անասունների անբավարար աճի հիմնական պատճառներից
մեկն այն է, որ հոտում ցածր է մայրական կազմի տեսակարար կշիռը։ Այս-
պես՝ վերջին երեք տարվա ընթացքում կոլտնտեսությունների և սովխոզների
խոշոր եղջերավոր անասունների ընդհանուր հոտում կովերի գլխաքանակը
կազմում է (հազար գլուխներով).

| Թվականը | Ընդամենը խոշոր եղջերավ. անասուններ | Այդ թվում կովեր | Ընդհ. հոտում կովերի տեսակարար կշիռը (տոկոս) |
|---|---|---|---|
| 1958 | 381,1 | 110,5 | 28,9 |
| 1959 | 396,3 | 121,8 | 31,0 |
| 1960 | 408,0 | 127,7 | 31,2 |
| 1961 1 12 | 393,0 | 127,5 | 32,4 |



Մի շարք կոլտնտեսություններում կաթի և մսի արտադրությունը շատ
դանդաղ է ավելանում, որովհետև կովերի տեսակարար կշիռը շատ ցածր է, և
ինչքան էլ նրանց մթերատվությունը բարձր լինի, չի կարող անասնաբուծական
մթերքների շոշափելի աճ լինել։ Այսպես, օրինակ՝ Եղեգնաձորի շրջանի Ջիվա
գյուղի կոլտնտեսությունում կովերի տեսակարար կշիռը տավարի ընդհանուր
հոտում կազմում է 18, նույն շրջանի Արենի գյուղի կոլտնտեսությունում՝ 19,
Կրասնոսելսկի շրջանի Ջայքենդ գյուղի կոլտնտեսությունում՝ 18,3, Բասարգե-
չարի շրջանի Կարճաղբյուր գյուղի կոլտնտեսությունում՝ 19,7 տոկոս։

Ավելի վատ է վիճակը առանձին շրջաններում, որը երևում է ստորև բեր-
ված աղյուսակից.

| Շրջան | 1958 թ. ընդ. խոշոր եղջ. անաս. | 1958 թ. որից կովեր | 1958 թ. կովերի տես. կշիռը (տոկոս.) | 1960 թ. ընդ. խոշոր եղջ. անաս. | 1960 թ. որից կովեր | 1960 թ. կովերի տես. կշիռը (տոկոս.) |
|---|---|---|---|---|---|---|
| Բասարգեչար | 14149 | 3223 | 22,8 | 16239 | 4034 | 24,8 |
| Գորիս | 17510 | 4928 | 27,7 | 18023 | 4990 | 27,5 |
| Ազիզբեկով | 6785 | 1797 | 26,5 | 7283 | 2017 | 27,7 |
| Ղափան | 11395 | 2947 | 25,9 | 12389 | 3138 | 25,2 |
| Աշտարակ | 10558 | 3020 | 28,5 | 10978 | 3400 | 30,9 |
| Սպիտակ | 10831 | 2947 | 27,2 | 11899 | 3474 | 29,2 |

Կովերի գլխաքանակի այսպիսի անբավարար աճի հիմնական պատճառն
այն է, որ լավ չի կազմակերպված հոտի վերարտադրությունը, շատ տնտեսու-
թյուններում անհիմն կերպով խոտանում, մորթում, ծախում են նախրի համա-
լրման համար նախատեսված մատղաշները, խոտանվում և որպես մսացու
հանձնում են շատ կովեր։ Այսպես՝ Ազիզբեկովի շրջանի կոլտնտեսություննե-
րում ու սովխոզներում 1960 թվականին խոտանվել է կովերի 21, Շամշադինի
շրջանում՝ 22,6, Էջմիածնի շրջանում՝ 19,5 տոկոսը 8,9 տոկոսի փոխարեն։

Յուրաքանչյուր տնտեսությունում կովերի գլխաքանակն ամեն տարի պետք
է լրացվի երինջների հաշվին, որոնք պետք է կազմեն խոշոր եղջերավոր անա-
սունների ընդհանուր գլխաքանակի 8—9, կամ կովերի 20—25 տոկոսը, այլա-
պես հնարավոր չի լինի սեփական հոտի վերարտադրության հաշվին ապահովել
կովերի գլխաքանակի աճը. սակայն շատ տեղերում էգ մատղաշների անբավա-
րար կերակրման, խնամքի և աճեցման հետևանքով երինջների տեսակարար
կշիռը շատ ցածր է։ Այսպես՝ Կիրովականի շրջանի կոլտնտեսություններում
1960 թվականի սկզբին եղած երինջները կազմել են կովերի 11,7, իսկ 1961
թվականին՝ 10,2 տոկոսը, Մեղրու շրջանում, համապատասխանաբար՝ 14 և
11,5, Մարտունիում՝ 10,5 և 10 տոկոսը։ Այդ է պատճառը, որ Կիրովականի և
Մարտունու շրջանների կոլտնտեսությունները 1960 թվականին կովերի գլխա-
քանակի աճը կարողացան ապահովել բնակչությունից կովեր գնելու միջոցով։

ՍՄԿՊ Կենտկոմի 1961 թվականի Հունվարյան պլենումը խնդիր է դրել՝
ինչպես ընդհանուր հոտի, այնպես էլ կովերի աճը հիմնականում ապահովել սե-
փական հոտի վերարտադրության հաշվին։ Կովերի աճը սեփական հոտի
վերարտադրության հաշվին ապահովելու համար անհրաժեշտ է տարվա սկզ-
բին եղած կովերի 25 տոկոսի չափ հղի երինջներ ունենալ։ Այդ դեպքում խո-
տանելով կովերի 8—10 տոկոսը, հնարավոր կլինի ամեն տարի կովերի գլխա-
քանակն ավելացնել 12—15 տոկոսով։

1962 թվականին կովերի գլխաքանակի աճն ապահովելու համար ռեսպուբ-
լիկայի կոլտնտեսություններում ու սովխոզներում անհրաժեշտ է աճեցնել
30—35 հազար զուգավորման հասակի երինջ, տարվա սկզբին եղած 20 հազա-
րի փոխարեն։ Յուրաքանչյուր տնտեսություն պետք է հաշվարկումներ կատա-
րի, աճեցնի այնքան երինջներ, որ հնարավոր լինի կովերի գլխաքանակի աճն
ապահովել հոտի վերարտադրության հաշվին։

Ոչխարների գլխաքանակի արագ աճը, հետևապես և բրդի, ոչխարի մսի ու
կաթի խիստ ավելացումը հիմնականում պայմանավորված են հոտի մեջ մայ-
րական կազմի քանակով։ Հաշվումները ցույց են տալիս, որ որքան բարձր է
հոտում մայր ոչխարի տեսակարար կշիռը, այնքան բարձր է նաև ոչխարաբու-
ծական մթերքների արտադրանքը և ցածր դրանց ինքնարժեքը։ Այժմ ռեսպուբ-
լիկայի կոլտնտեսություններում ու սովխոզներում մայր ոչխարներն ընդհա-
նուր հոտում կազմում են 55—56 տոկոս։ Ոչխարաբուծության հիմնական շըր-
ջաններում՝ Թալինում, Աղիզբեկովում, Եղեգնաձորում, Մարտունիում, Սիսիա-
նում, Գորիսում, որոշ չափով այն բարձր է։ Սակայն մայր ոչխարների այդ քա-
նակն անբավարար է։ Ոչխարները ձմեռային ծնի փոխադրելու, համապատաս-
խան կերի բազա ստեղծելու միջոցով հոտում մայրական կազմը պետք է
հասցնել 65 տոկոսի։ Այսպիսով, հնարավոր կլինի ոչխարների գլխաքանակի
աճն ապահովել սեփական հոտի վերարտադրության հաշվին։

Խոզաբուծության զարգացման համար կարևոր նշանակություն ունի հիմ-
նական մերուների քանակը։ 1961 թվականի հունվարի մեկի դրությամբ կոլ-
տնտեսություններում եղած հիմնական մերուները կազմում են եղած խոզերի
12,3 տոկոսը։ Յոթնամյակի վերջին այն պիտի հասցվի 16—20 տոկոսի։ Սա-
կայն մեծ քանակությամբ խոճկորներ ստանալու և խոզի մսի արտադրությունն
ավելացնելու համար անհրաժեշտ է բոլոր տնտեսություններում պահել միածին
մերուներ, մեկ հիմնական մերունի դիմաց ունենալով 3—4 միածին մերու։

Միայն մայրական կազմի աճը բավական չէ անասունների գլխաքանակն
ավելացնելու համար։ Անհրաժեշտ է նաև տեղերում ժամանակին կազմակեր-
պել մայր անասունների զուգավորումն ու արհեստական սերմնավորումը՝ նրան-
ցից մաքսիմում քանակությամբ սերունդ ստանալու և աճեցնելու համար։

Ահա ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ու սովխոզներում հոտի
վերարտադրության վերջին տարիների ցուցանիշները.

Տարվա սկզբին հոտում եղած յուրաքան-
չյուր 100 մայրից ստացվել է

| | 1959 թ. | 1960 թ. | 1961 թ. |
|---|---|---|---|
| Հորթեր | 80 | 78 | 75 |
| Խոճկորներ | 887 | 948 | 770 |
| Գառներ | 77 | 74 | 74 |

Ինչպես տեսնում ենք, մատղաշների
թիվն իջել է։ Կոլտնտեսություններում
ու սովխոզներում ամեն տարի մայր
անասունների զուգավորման աշխա-
տանքները վատ կազմակերպելու և
նրանց որոշ մասի ստերջության հե-
տևանքով նախատեսվածից պակաս է ստացվում մոտ 10—13 հազար հորթ և
100—110 հազար գառ։ Այս գլխաքանակը շատ մեծ ռեզերվ է հանրային անա-
սունների աճն ապահովելու, լրացուցիչ միս, կաթ, բուրդ ստանալու համար։

Հրազդանի, Իջևանի, Ալավերդու, Կալինինոյի, Ղուկասյանի, Կոտայքի,
Կրասնոսելսկի, Սևանի, Կամոյի անվան և մի շարք այլ շրջանների կոլտնտե-
սություններում ու սովխոզներում 1960 թվականին վատ էր կազմակերպված
հոտի վերարտադրության գործը, մանավանդ, խոշոր և մանր եղջերավոր անա-



սունների գծով։ Այդ է պատճառը, որ չնայած տվյալ տարում գնման միջոցով
այդ շրջաններում ձեռք բերվեցին մեծ քանակությամբ խոշոր եղջերավոր անա-
սուններ ու ոչխարներ, բայց և այնպես չապահովվեցին գլխաքանակի ավելաց-
ման ուղղությամբ ստանձնած սոցիալիստական պարտավորությունները, իսկ
շատ կոլտնտեսություններում ու սովխոզներում, 1959 թվականի համեմատու-
թյամբ, նույնիսկ նվազեց անասունների գլխաքանակը։

Այն կոլտնտեսություններում ու սովխոզներում, որտեղ հոտի վերարտա-
դրության աշխատանքները լավ են կազմակերպված, ֆերմաները համալրված
են իրենց գործն իմացող անասնապահներով, ամեն տարի անասունների գըլ-
խաքանակի, ինչպես նաև անասնաբուծական մթերքների ավելացման առաջա-
դրանքները կատարվում են առանց դրսից անասուններ գնելու։ Բերենք միև-
նույն պայմաններում գտնվող տնտեսություններից մի քանի օրինակ։ Սևանի
շրջանի Չկալովկա գյուղի կոլտնտեսությունը 1960 թվականին, տարվա սկզբին
եղած 100 կովից և երինջից ստացել է 96 հորթ և պահպանել 92-ը, իսկ նույն
շրջանի Սեմյոնովկայի սովխոզում ստացվել է միայն 68 հորթ և պահպանվել
34-ը. Աշխի շրջանի Մարալիկ գյուղի կոլտնտեսությունում համապատասխա-
նորեն՝ 95 և 81, իսկ նույն շրջանի Խարկով գյուղի կոլտնտեսությունում՝ 75 և
49, Մարտունու շրջանի Լիճքի կաթնաանասնապահական սովխոզում՝ 88 և 79,
իսկ նույն շրջանի Ղարանլուղ գյուղի կոլտնտեսությունում՝ 41 և 23, Եղեգնա-
ձորի շրջանի Աղավնաձոր գյուղի կոլտնտեսությունում՝ 94 և 90, իսկ Ղաբախ-
լու գյուղի կոլտնտեսությունում՝ 65 և 64 հորթ։ Այսպիսի օրինակներ կարելի է
բերել Ալավերդու, Արթիկի, Սպիտակի, Գորիսի և այլ շրջաններից։ Պայմանննե-
րը նույնն են, անասունները նույնը, ցեղը նույնը, իսկ ցուցանիշները տարբեր։
Այստեղ կարևորը մարդիկ են, աշխատանքի կազմակերպումը, մարդկանց պա-
տասխանատվության զգացումը։

Առաջավոր տնտեսությունների և առաջավոր մարդկանց աշխատանքի ցու-
ցանիշները վկայում են, որ բոլոր տնտեսություններում էլ հնարավոր է հոտի
վերարտադրությունն այնպես կազմակերպել, որ առանց դրսից անասուններ
գնելու ամեն տարի կատարվեն մսի արտադրության ու վաճառքի և անասուն-
ների գլխաքանակի ավելացման պլանները։

Անհրաժեշտ է լավ կազմակերպել անասունների խնամքն ու կերակրումը,
նրանց ցեղի բարելավման, զուգավորման և ծնի գործը, վերացնել անասուն-
ների անկումները, լայնորեն կիրառել առաջավոր տնտեսությունների փորձը։
Այդպիսով կապահովվի հանրային անասունների և, առաջին հերթին, մայր ա-
նասունների ավելացման պլանների անթերի կատարումը։ Յուրաքանչյուր կոլ-
տնտեսության, սովխոզի հիմնական խնդիրը պետք է լինի անասնաբուծական
մթերքների արտադրությունը և անասունների գլխաքանակն ավելացնել տնտե-
սության ռեզերվները ճիշտ և խելացի օգտագործելու միջոցով։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները, անասնապահական
ֆրոնտի մասնագետները զինված պարտիայի նոր Ծրագրով, ՍՄԿՊ XXII հա-
մագումարի որոշումներով, իրենց ամբողջ եռանդն ու կարողությունը կդար-
ձադրեն՝ շեշտակի ավելացնելու անասնաբուծական մթերքների արտադրու-
թյունը։

Ա. ԱԲԱՂՅԱՆ

Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրության
տոհմարուծական վարչության պետ

# ՈՍԿԻ ՁԵՌՔԵՐ

Աշխատանքային բուռն վերելքի այս ժամանակաշրջանում առաջնակարգ
խնդիր է դառնում կոմունիզմ կառուցողների, հատկապես, արտադրության
վարպետների առաջավոր փորձի ուսումնասիրությունն ու ընդհանրացումը,
դրանք բոլորի սեփականությունը դարձնելը։ Ժողովուրդը վարպետ է անվա-
նել իր սիրած բանաստեղծներին, երգիչներին ու գրողներին, նկարիչներին ու
քանդակագործներին։ Այդ պատվավոր, իմաստալի և պարտավորեցնող անունն
են վաստակել և լավագույն քարտաշն ու դարբինը, պղնձագործն ու հյուսնը,
դարբինն ու որմնադիրը։

Մի կողմում մարդկային հոգու, բնության գույների ու ձայների ընկալման
ու արտահայտման վարպետություն, մյուս կողմում՝ ստեղծագործ մտքի ու
ամենաստեղծ ձեռքերի՝ ոսկի ձեռքերի, հանրօգուտ արտադրանք։ Արհեստավոր
վարպետի ձեռքերն են ստեղծել այն ջութակն ու սրինգը, շվին ու փողը, որոնց
վարպետ նվագողը հիացնում է ամենքին։ Նույն ձեռքերն են ստեղծել բազմա-
թիվ գիտական հիմնարկների ու լաբորատորիաների սարքերն ու հարմարանք-
ները, որոնց օգնությամբ և միջոցով կատարվել ու կատարվում են գիտական,
աշխարհը փոխող, բնությունը մարդուն ենթարկող այնքան հայտնագործու-
թյուններ։ Եվ այսպես, ամենուրեք և անընդհատ մի, թերևս, անտեսանելի ու
անքակտելի կապ կա մտքի ու ձեռքի վարպետների միջև, հարատև կապ։

Ահա ոսկի ձեռքերի տեր վարպետներից մեկը՝ Ձերժինսկու անվան հաս-
տոցաշինական գործարանի ձևող ու հղկող բանվոր Միքայել Անտոնի Ասլան-
յանը։

Միքայելը ծնվել է 1909 թվականին Պոլսում, աշխատավորի ընտանիքում։
Նա 1925 թվականին իր ծնողների և հարազատների հետ գալիս է Հայրենիք՝
Սովետական Հայաստան և աշխատանքի ընդունվում Երևանի մեխանիկական
(այժմ Ձերժինսկու անվան հաստոցաշինական) գործարանում, ուր նրան է
հանձնվում հղկման ունիվերսալ հաստոցը, որն ստացվել էր 1924 թվականին,
Լենինգրադի Պրոմյոտ գործարանից։ Գործարանն այդ հաստոցն ուղարկել էր
Ալեքսանդր Մյասնիկյանի նամակն ստանալուց հետո, որով նա խնդրում էր
օգնել Երևանի մեխանիկական գործարանին։

Պրոմյոտ գործարանի բանվորները 32 մետաղահատ հաստոց են նվիրում
Երևանի թուջաձուլման մեխանիկական գործարանին։ Դրանցից մեկը մինչև
օրս էլ գործում է Միքայելի հոգատար խնամքի, գործիմացության շնորհիվ։
Երեսունվեց տարի է, ինչ Ասլանյանն աշխատում է այդ հաստոցի վրա։ Այն
այժմ էլ նոր տեսք ունի և արտադրողականությամբ չի զիջում գործող շատ
հաստոցների։

Խնամելով, կատարելագործելով իր հաստոցը, բանվորն ինքն էլ է կատա-



րելագործվում. տեխնիկայի կատարելագործմանն ու վերափոխմանը զուգըն-
թաց իր աշխատանքով նա ավելի է մոտենում ինժեներին։ Այդ ուղի է հարթում
մտավոր ու ֆիզիկական աշխատանքի վերացման համար։ Միքայել Ասլանյանն
արդեն այդ ուղիով է ընթանում։ Նա ունի աշխատանքային երկար տարիների
արդյունավետ փորձ։ Բայց կարևորը տարիները չեն, այլ վարպետությունը։ Նրա
մոտ են բերվում բոլոր տեսակի պողպատները՝ նրանց մեջ պարունակվող տար-
րերի առկայությունը որոշելու համար։ Այժմ, երբ այնքան բազմատեսակ պող-
պատներ են արտադրվում, նա գտնում է, որ ժամանակն է հրաժարվել կայծա-
յին եղանակից և նոր եղանակներով որոշել պողպատի տեսակը, որը տնտեսա-
պես ավելի արդյունավետ է։

Միկրոններն առավել ճշտությամբ որոշելու համար նա այլևս ստանդարտ
ձողակարկին չի օգտագործում։ «Ծանր է», ասում է վարպետը (ստանդարտ ձո-
ղակարկինը կշռում է 270 գրամ)։ Նա պատրաստել է 50 գրամանոց ձողա-
կարկին, որով շոշափում ու հայտաբերում է մշակված մասի խախտված չա-
փերն ու հաստոցի օգնությամբ ստանում սահմանված միկրոնների ճշտությու-
նը։ Նա պատրաստել է կենտրոնաորոնիչ, որն առավելագույն ճշտությամբ է
կատարում իր դերը։

Ասլանյանը շատ բան է արել հաստոցը մոդեռնացնելու համար։ Ամենից
առաջ տրանսմիսիոն հաղորդակը փոխարինել է անհատակ հաղորդակով, էլեկ-
տրաշարժիչը՝ սեպափոկ հաղորդակով. էլեկտրաշարժիչը հերմետիկորեն ծածկ-
ված է, որը պաշտպանում է շարժիչը հղկելու պրոցեսում առաջացած փոշուց։
Վերափոխված է հաստոցի սեղանը, հանված են կոճղերը, և այն հարմարեց-
ված է ինչպես ուղղահայաց, այնպես էլ հորիզոնական հղկման համար։ Հաս-
տոցի ձեռքի լծակը փոխարինվել է հարմարավետ ղեկանիվով։ Հաստոցի իլի
արագությունը հասցված է մեկ րոպեում 2000 պտույտի։

Վարպետ Ասլանյանի գործիքային պահարանում դուք կգտնեք ընտիր ու
կարգով դասավորված տարբեր ինքնաշեն ճշգրիտ գործիքներ, կաղապարներ,
օղեր, խոշորացույց, սպասքներ, տրամաչափեր։ Վարպետ Միքայելի առա-
ջարկությամբ գործարանում նախագծել ու պատրաստել են մի նոր չափաբեր-
ման հաստոց, որով պատրաստում են հղկուկներ՝ մետաղի կառուցվածքը ման-
րադիտակով զննելու համար։ Այդ հաստոցով չափաբերում են հատուկ հաս-
տոցների կարևորագույն մասերը։

Ահա և ֆրեզերագործ բանվոր Հակոբ Մանուկի Սիմոնյանը։ «Հաստոցը
պահանջում է սիրով խնամել ու պահպանել իրեն», ասում է վարպետ Սիմոն-
յանը շրջապատի երիտասարդներին և անձնական օրինակով վարակում
նրանց։ Նա ժամանակին յուղում ու նորոգում է հաստոցը։ Սիմոնյանն իր ստեղ-
ծած հարմարանքների օգնությամբ պատրաստում է պարույրաձև կոնավոր ժան-
անիվներ, բարդ ուրվանկարների տարբեր մասեր և զանազան դրոշմներ։ Սո-
վետական բանվորը լավ է հասկանում, որ տեխնիկան թեթևացնում է իր գործը,
օգնում աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, որ որքան լրիվ
օգտագործվի այդ առաջավոր տեխնիկան, այնքան շուտ կհաղթենք կապիտա-
լիզմին՝ խաղաղ մրցության մեջ։

Մեր ռեսպուբլիկայում հսկայական հաստոցային պարկ կա։ Այն անընդ-
հատ մեծանում է։ Ժամանակակից սարքավորումը դուրս է մղում բարոյապես
հնացած տեխնիկան, դրանց մի մասը կատարելագործվում է։ Յոթնամյակում
մոդեռնացվելու են 4 հազար մետաղահատ հաստոց, որոնք կտան 10 միլիոն

ուրլու խնայողություն (գների նոր մասշտաբով)։ Սարքավորումների մոդեռ-
նացման աշխատանքներին ակտիվ կերպով մասնակցում են և իրենք՝ բանվոր-
ները։ Տեխնիկական ստեղծագործությունը դառնում է սովետական մարդու
կենսական խնդիրը։
Հայաստանի մեքենաշինարար գյուտարարների և ռացիոնալիզատորների
առաջարկությունների 53 տոկոսը վերաբերում է սարքավորումների կատարե-
լագործմանը։ Գնալով ավելի ու ավելի մասսայական է դառնում ռացիոնալի-
զատորական-նորարարական շարժումը, ավելի ու ավելի շատ բանվորներ, ին-
ժեներա-տեխնիկական աշխատողներ են դառնում գյուտարարներ ու ռացիոնա-
լիզատորներ։ Դրանցից է, օրինակ՝ Ձերժինսկու անվան գործարանի խառատ
Հակոբ Հովհաննեսի Մոմճյանը, որը շատ բան է արել իր հաստոցի մոդեռնաց-
ման ուղղությամբ։
Հետին կոճղում նա հարմարեցրել է քառաբուն գլխիկ, որի օգնությամբ մի
օպերացիան ավարտելուց հետո, երկրորդին անցնելիս հաստոցը չի կանգնում,
խը պտտվում է. դարձուն գլխիկը հնարավորություն է տալիս մի գործիքն օգ-
տագործելուց հետո մյուսին անցնել առանց իլը կանգնեցնելու։ Կատարելագոր-
ծել է սառեցման եղանակը։
Պողպատի մշակման համար օգտագործվող կտրիչները նա սարում է տա-
շեղակոտրիչ առվակներով։ Պողպատը նման կտրիչներով մշակելիս առաջա-
ցած տաշեղը հարմար է տեղափոխման համար և ցեխային աշխատանքի պայ-
մաններում՝ անվտանգ. մինչդեռ սովորական կտրիչով աշխատելիս առաջա-
նում է ոլորուն տաշեղ, որը խառատը անընդհատ պետք է հեռացնի։ Իսկ այդ
նրանից ժամանակ է խլում և խիստ հոգնեցուցիչ է։ Տաշեղակոտրիչները վե-
րացնում են ձեռքի այդ ծանր աշխատանքը։ Խառատ Մոմճյանն էլ ֆրեզերա-
գործ Սիմոնյանի նման ունի իր գործիքային պահարանը։ Վարպետներ Մոմճ-
յանի և Սիմոնյանի հաստոցները երբեք հիմնական նորոգման չեն ենթարկվել
և, ասես թե, բոլորովին նոր են։
Անհրաժեշտ է արմատապես վերափոխել հաստոցների տեխնիկական սպա-
սարկման կարգը,— ասում են վարպետ Մոմճյանն ու Սիմոնյանը։ Առաջներում
«պլանը կատարելու» համար աշխատանքում զգացվում էր անտեղի շտապո-
ղականություն, հաստոցը աշխատեցնում էին մինչև նրա շարքից դուրս գալը։
Պարտիան պահանջում է բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը,
միաժամանակ լավ պահպանել ու խնամել հաստոցը, գործիքներն ու մեքե-
նաները։ Լավ է հաստոցը ժամանակին նորոգման կանգնեցնել, քան թե սպա-
սել մինչև նրա շարքից դուրս գալը։
Պարտիայի նոր Ծրագրում ասված է, որ քսան տարվա ընթացքում
«...պետք է լիովին բավարարվեն ժողովրդական տնտեսության պահանջները
ժամանակակից մեքենաների, հաստոցների ու ապարատների բոլոր տեսակնե-
րի, ինչպես նաև պահեստամասերի ու գործիքների նկատմամբ»։
Ստեղծագործ մոտեցումը, անընդհատ առաջ գնալու ձգտումը հնարավո-
րություն են տվել Երևանի հիդրոպոմպերի գործարանի խառատ Ղարիբ
Մկրտչյանին՝ իր հաստոցի արտադրողականությունը հասցնելու նրա նախա-
գծային կարողությունը գերազանցող չափի։
Մկրտչյանի հաստոցը երբեք հիմնական նորոգման չի ենթարկվել։ Առաջ
հիդրոպոմպի պարույրաձև պատյանը մշակվում էր սովորական պատրոններով։
Ունիվերսալ պատրոնների բռունցքները հարմարեցված չէին սրընթաց կտրր-



ման։ Գործարանում փոխեցին բռունցքների կառուցվածքը, կատարելագործե-
ցին, ավելացրին վերաձուլիկները. այդ ամենի միջոցով մոտ 70 տոկոսով բարձ-
րացավ կտրելու արագությունը. ստեղծվել են աշխատանքի առավել անվտանգ
պայմաններ. պարույրը այլևս դուրս չի թռչում պատրոնից։ Մկրտչյանը մշա-
կում է հիդրոպոմպի պարույրը։
Սերը դեպի առաջավոր տեխնիկան պատանի Անդրանիկ Սարգսյանին դեռ-
ևս 16 տարեկան հասակում Նախիջևան քաղաքից բերեց Երևան։ 1947 թվակա-
նին նա աշխատանքի է ընդունվում հիդրոտուրբինների գործարանում։ Կարճ
ժամանակամիջոցում նա աչքի է ընկնում իր համարձակությամբ, մեքենաների
նկատմամբ տածած սիրով ու հետաքրքրասիրությամբ. և գործարանի ղեկավա-
րությունը, առանց տատանվելու, նրան է վստահում կարուսելային հաստոցը։
Երկար ժամանակ պետք չէր, որ նա ընտելանար հաստոցին, ծանոթանար նրա
բոլոր մասերին ու հատկություններին։ Սակայն նա չի բավարարվում ձեռք բե-
րածով։ Նա հմտանում է հիդրոտուրբինների պատյանները և կարևոր մասերը
մշակելու գործում։ Այժմ Սարգսյանը մշակում է հիդրոպոմպերի սալիկներ։
Սկզբնական շրջանում մի հերթափոխում (8 ժամ) նա մշակում էր 50 սալիկ։
Հաստոցի արտադրողականությունը բարձրացնելու, ավելի կատարելագործված
կտրիչներ օգտագործելու միջոցով 7-ժամյա հերթափոխում այժմ նա մշակում
է 100 սալիկ։ Կարուսելային հաստոցի հետ միասին Անդրանիկին հանձնվեց
Մինսկի հաստոցաշինական գործարանում թողարկված երկայնակի ռանդման
հաստոցը։ Շատ կարճ ժամանակամիջոցում հաստոցն աշխատեցնելու հմտու-
թյուն և վարպետություն ձեռք բերելով՝ Անդրանիկը կրկնապատկեց արտադրո-
ղականությունը։ Դրան զուգընթաց Սարգսյանը սովորեց աշխատել նաև Սվերդ-
լովի անվան գործարանի արտադրած ներտաշ հաստոցի վրա։ Նա մշակում է
ավելի բարդ՝ ՇՆի—18,5 պոմպերի ռեդուկտորը։ Այդ ռեդուկտորի անցքերի
մշակումը պահանջում է 0,03 մմ համառանցքային ճշտություն։ Ժանանիվա-
վոր գայլիկոնային մղիչը օգտագործվում է սննդի արդյունաբերության մեջ.
վարպետն աշխատում է որքան հնարավոր է բարձրացնել դրա որակը և ավելի
շատ այդպիսի պոմպեր թողարկել։
Անդրանիկ Սարգսյանը քայլում է գործարանի ռացիոնալիզատորների առա-
ջին շարքերում, նրա նպատակն է՝ ավարտել տեխնիկումը, սովորել ԲՈՒՀ-ում
և դառնալ ինժեներ։
Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում լայնորեն տա-
րածվել է արհեստների համատեղման պրակտիկան։ Այն հնարավորություն է
տալիս բանվորներին՝ ազատ կերպով ընտրելու սիրած արհեստը, ավելի խնա-
յողաբար օգտագործելու աշխատաժամանակը։ Օրեցօր ավելանում է բազմար-
հեստ բանվորների թիվը։ Նրանցով հպարտանում է ռեսպուբլիկան, հայ ժո-
ղովուրդը։
Ցավոք սրտի մեզ մոտ դեռևս կան այնպիսի աշխատողներ, որոնք չեն
գնահատում իրենց վստահված տեխնիկան, ինչպես հարկն է չեն պահպանում
հաստոցը, որը պատճառ է դառնում հաստոցի ժամանակից շուտ մաշվելուն,
արտադրությունից դուրս գալուն։
Նորարարների փորձը ցույց է տալիս, որ անհրաժեշտ է հրաժարվել հաս-
տոցների հիմնական նորոգումից, եղած անսարքություններն ու վթարները վե-
րացնել անմիջապես, չսպասելով նրանց շարքից դուրս գալուն։
Հայաստանի կենտրոնական վիճակագրական վարչության տվյալներով

*ժողտնտխորհի մեքենաշինական ու հաստոցաշինական վարչության ձեռնար-*
*կությունները 1960 թվականին հիմնական նորոգման համար ծախսել են 561,5*
*հազար ռուբլի, իսկ էլեկտրատեխնիկական սպասքաշինական վարչության ձեռ-*
*նարկությունները՝ 1,102 հազար ռուբլի (նոր դրամով)։ Իսկ որքա՞ն վնաս է*
*հասցնում արտադրությանը տեխնիկական վատ վիճակում գտնվող հաստոցը։*
*Այդ վնասը կազմում է 15 միլիոն ռուբլի։*

*Եթե սարքավորման հիմնական նորոգման մեթոդը ժամանակակից տեխ-*
*նիկայի պայմաններում արդեն հնացած ու հետադիմական է, ապա այն ավելի*
*քան հնացած կլինի մեքենաշինական արդյունաբերությունը ավտոմատացված*
*արտադրության վերափոխելու պայմաններում։*

*Ավտոմատացված արտադրությունը պահանջում է աշխատել այնպես, ինչ-*
*պես վարպետներ՝ Ասլանյանը, Սիմոնյանը, Մոմչյանը, Մկրտչյանը, Սարգսյա-*
*նը և նրանց նման շատ շատերը։*

Ա. ՄԱՐՋԱՆՅԱՆ

Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի
մեքենաշինության տեխնոլոգիայի
ճանձնաժողովի նախագահ։

«Դաստիարակչական աշխատանքի կենտրոնում պարտիան դնում
է հասարակության բոլոր անդամների մեջ աշխատանքի նկատմամբ կո-
մունիստական վերաբերմունք կարգացնելը: Հասարակության բարօրու-
թյան համար կատարվող աշխատանքը յուրաքանչյուր մարդու սրբական
պարտականությունն է: Ինչպես ֆիզիկական, այնպես էլ մտավոր ամեն
մի հանրօգուտ աշխատանք հարգելի ու պատվավոր է: Անհրաժեշտ է
բոլոր աշխատավորներին դաստիարակել աշխատանքի լավագույն օրի-
նակներով, հանրային տնտեսությունը վարելու լավագույն օրինակ-
ներով:

Աշխատանքով է ստեղծվում այն ամենը, ինչը անհրաժեշտ է մարդ-
կանց ապրելու և կարգանալու համար: Ուստի, յուրաքանչյուր աշխատ-
ունակ մարդ պետք է մասնակցի այն միջոցների ստեղծմանը, որոնք
անհրաժեշտ են նրա կյանքի ու գործունեության համար, հասարակու-
թյան բարօրության համար»:

ՍՄԿՊ ԾՐԱԳԻՐ



# ՆԱՎԹԱՅԻՆ ՈՒ ԱՎՏՈՄՈԲԻԼԱՅԻՆ ՄՈՆՈՊՈԼԻԱՆԵՐԸ ԱՄՆ-ՈՒՄ

*Վ. ԳԱԲՈՒՉՅԱՆ*

Տնտեսական գիտությունների թեկնածու

*Կա՞ն արդյոք մոնոպոլիաներ ԱՄՆ-ում։*

*Նման հարցադրումը այսօր՝ XX դարի երկրորդ կեսին, այն էլ իմպե-*
*րիալիզմի «կլասիկ» երկրի վերաբերյալ, իրոք որ առնվազն անհեթեթ է հնչում։*

*Սակայն, հարցադրումը դեռ քիչ է։ Բուրժուական տնտեսագիտության*
*ժամանակակից շատ ուղղություններ ժխտում են արդի կապիտալիզմի մոնո-*
*պոլիստական բնույթը, ֆինանսական կապիտալը, իմպերիալիզմին հատուկ այլ*
*կատեգորիաներ ու օրինաչափություններ։ Եվ այդպիսի հայտարարություններով*
*հագեցած աշխատություններ ամենից շատ լույս աշխարհ են գալիս ԱՄՆ-ում։*
*Դա բացատրվում է նախ՝ նրանով, որ ԱՄՆ-ում արտադրության մոնոպոլիզա-*
*ցիան հասել է ամենաբարձր աստիճանի, հետևաբար այստեղ ավելի ինտենսիվ*
*տեսական մարզանքներ են պահանջվում մոնոպոլիաների տիրապետությունը*
*և այդ տիրապետությունից բխող սոցիալ-տնտեսական հետևանքները քողարկե-*
*լու համար. երկրորդ, ԱՄՆ-ում գործում է... «մոնոպոլիաներն արգելող», «Հա-*
*կատրեստային օրենսդրություն», որի մասին երբեք չեն մոռանում հիշատակել*
*ամերիկյան բուրժուական հեղինակները՝ տվյալ թեմատիկայով գրված իրենց*
*աշխատություններում։*

*Մեր նպատակը չէ ցույց տալ կապիտալի և արտադրության կենտրոնաց-*
*ման ու համակենտրոնացման պրոցեսների հիման վրա մոնոպոլիաների առաջ*
*գալն առհասարակ, կամ մոնոպոլիաների տիրապետությունն իմպերիալիստա-*
*կան երկրների տնտեսական ու քաղաքական կյանքի հարաբերություններում։*

*Այստեղ մենք կանդրադառնանք մեկ երկրի արդյունաբերության երկու*
*ճյուղերի մոնոպոլիաներին։*

*ԱՄՆ-ի մոնոպոլիաների ու նրանց գործունեության հարցերը քննարկելիս չի*
*կարելի շրջանցել մի կարևոր առանձնահատկություն՝ ամերիկյան «Հակատրես-*
*տային օրենսդրությունը»։*

*Չպետք է մոռանալ, որ օրենսդրությունը, որպես վերնաշենքային կատե-*
*գորիա, ածանցյալ է և այս իմաստով ոչ մի «Հակատրեստային օրենսդրություն»,*
*ինչպիսի խիստ սանկցիաներ էլ այն նախատեսի, միևնույնն է, չի կարող կա-*
*սեցնել բազիսում, էկոնոմիկայում գործող օրինաչափությունները՝ արտադրու-*
*թյան համակենտրոնացումն ու կենտրոնացումը, մոնոպոլիաների առաջացումն*
*ու զարգացումը։*

*Սակայն, մյուս կողմից, հարց է ծագում. ինչպե՞ս է ըստ էության գործում*

«Հակատրեստային օրենսդրությունը» և ինչպե՞ս է այն անդրադառնում ԱՄՆ-ի
մոնոպոլիաների գործունեության վրա։ Այս հարցի պատասխանը սերտորեն
կապված է մի այլ հարցի հետ.— եթե օրենսդրությունն ածանցվում է տիրապե-
տող արտադրական հարաբերություններից, ապա ինչո՞վ բացատրել, որ ամե-
րիկյան էկոնոմիկայում, մոնոպոլիստական կապիտալի տիրապետության պայ-
մաններում օրենսդրությունն «արգելում» է մոնոպոլիաները։

Նախ նշենք, որ ամերիկյան, այսպես կոչված՝ «Շերմանի Հակատրեստա-
յին օրենսդրությունը» ձևակերպվել է 1890 թվականին, այն շրջանում, երբ ար-
դյունաբերական կապիտալիզմը վերաճում էր մոնոպոլիստական կապիտալիզ-
մի։ Դա բանվոր դասակարգի շահագործման ուժեղացման, ֆերմերների քայ-
քայման ու սարկացման, մանր և միջակ ձեռնարկությունների սնանկացման ու
մասսայական դուրսմղման պրոցեսների ուժեղացման շրջանն էր, որը դժգոհու-
թյուն առաջացրեց մանր բուրժուազիայի ու ժամանակի ինտելիգենցիայի շար-
քերում. հակատրեստային լայն շարժում սկսվեց։ Տրեստները և կորպորացիա-
ները հայտարարվեցին ամերիկյան իրականության բոլոր չարիքների գլխավոր
պատճառը։ Այդ ամբողջ շարժման հիմքում ընկած էին մոնոպոլիստական կա-
պիտալի կրնկի տակ տրորվող մանր բուրժուազիայի շահերը։ Սակայն հետագա-
յում և մինչև այսօր, պետական մոնոպոլիստական կապիտալիզմի պայմաննե-
րում, երբ մոնոպոլիաներն իրենց կամքն են թելադրում ո՛չ միայն էկոնոմիկա-
յի, այլև քաղաքականության հարցերում, երբ մոնոպոլիաներն իրենց են ենթար-
կել ԱՄՆ-ի ամբողջ պետական ապարատը, շարունակում է գործել ամերիկյան
«Հակատրեստային օրենսդրությունը»։ Շարունակում է գործել, որովհետև այն
ոչ միայն չի հակասում, այլ նույնիսկ համապատասխանում է մոնոպոլիստա-
կան կապիտալի շահերին։ Նախ՝ «օրենսդրությունը» զենք է ծառայում բանվո-
րական կազմակերպությունների դեմ պայքարելու համար։ «Օրենսդրության»
մեջ «միավորում» բառը վերծանված չէ, ճշտված չէ, որ այն վերաբերում է
կորպորացիաներին. դրանով իսկ հնարավորություն է տալիս օրենքով նախա-
տեսված բոլոր սանկցիաները տարածել բանվորական «միավորումների» վրա՝
արհմիությունների դեմ, գործադուլային շարժումներն ու բանվոր դասակարգի
տնտեսական պայքարը ճնշելու նպատակով։

Տրեստների և մոնոպոլիստական այլ միությունների մեջ ընդգրկված ձեռ-
նարկությունների կողքին ԱՄՆ-ում, ինչպես բոլոր իմպերիալիստական երկրը-
ներում, կան մեծ թվով մանր ու միջակ ձեռնարկություններ, որոնք հումք, կի-
սաֆաբրիկատներ և մասեր են մատակարարում միայն մեկ պատվիրատու-մո-
նոպոլիայի, դրանով իսկ ամբողջովին կախման մեջ գտնվելով նրանից։ Ձևա-
կանորեն անկախ ձեռնարկությունների փաստացի կախումը մոնոպոլիաներից
հանդես է գալիս նաև պատրաստի արտադրանքի իրացման գործում։ Օրինակ
կարող է ծառայել ԱՄՆ-ում ավտոմոբիլների վաճառքի մեթոդը։ Ամերիկյան
ավտոմոբիլային մոնոպոլիաներն իրենց ավտոմեքենաների վաճառքով զբաղ-
վող ձևականորեն անկախ վաճառականներին ուղղակի թելադրում են վաճառքի
գները, սահմանում առևտրական ծախսերը և նույնիսկ ամենամսյա ֆինանսա-
կան հաշվետվություններ պահանջում նրանցից։ Այս կարգի ձեռնարկություն-
ները համարվում են մոնոպոլիաներից «անկախ», հետևաբար նրանց հարաբե-
րությունների վրա ամերիկյան «Հակատրեստային օրենսդրությունը» չի տա-
րածվում։

«Հակատրեստային օրենսդրությունն» ըստ էության ամենևին չի արգելում



տրեստների կազմավորումն ու գործունեությունը ԱՄՆ-ում։ Արգելվում են
միայն տարբեր միավորումների միջև գների, շուկաների բաժանման վերաբեր-
յալ համաձայնությունները, այսպիսով փաստորեն սահմանափակելով մոնո-
պոլիաների միայն մեկ ձևի՝ կարտելների գործունեությունը։ «Օրենսդրությունը»
չի կարող նույնիսկ տեսականորեն արգելել մոնոպոլիաներն ընդհանրապես
որովհետև ինչպես «օրենսդրություն»-ում, այնպես և ԱՄՆ-ի Գերագույն դատա-
րանում «մոնոպոլիա» հասկացությունը մեկնաբանվում է որպես «մրցակցու-
թյան բացակայություն»։ Հասկանալի է, որ մոնոպոլիաները ո՛չ միայն չեն
բացառում կապիտալիստական մրցակցությունը, այլև ավելի են սրում այն։

Եվ ահա, ամերիկյան պաշտոնական դատողությունը ժխտում է մոնոպո-
լիաների առկայությունը, ելնելով այն իրականությունից, որ կորպորացիաների
միջև մրցակցություն է ընթանում։ Ստացվում է այսպես. մրցակցություն կա,
հետևաբար մոնոպոլիա չկա, մոնոպոլիա չկա, հետևաբար «Հակատրեստային
օրենսդրությունը» կիրառելի չէ... Ահա մի «օրենսդրություն», որը հարմար խա-
ղալիք է և՛ նոր ոտքի կանգնող, և՛ վաղուց պարարտացած մոնոպոլիաների
ձեռքում։

Այսպիսով, չնայած «Հակատրեստային օրենսդրության» գոյությանը, ավե-
լի ճիշտ՝ հենց մասամբ «Հակատրեստային օրենսդրության» գոյության շնոր-
հիվ, ԱՄՆ-ը դարձան մոնոպոլիաների տիրապետության կլասիկ երկիր։ Գործ-
նականում մշակվել են զանազան իրավական ձևեր, որոնք հեշտությամբ շրջան-
ցում են «օրենսդրությամբ» նախատեսվող արգելքները, դրանով իսկ միավո-
րումների և մոնոպոլիզացիայի ավելի նուրբ ու ճկուն եղանակներ ստեղծելով։
«Հակատրեստային օրենսդրությունը» ոչ մի չափով չի կաշկանդել ԱՄՆ-ի խո-
շոր մոնոպոլիաների տնտեսական ու քաղաքական հզորության անընդհատ ուժե-
ղացումը, այլ, ընդհակառակը, նպաստել է այն մեթոդների կատարելագործ-
մանը, որոնց օգնությամբ ԱՄՆ-ի ֆինանսական օլիգարխիան իրականացնում է
իր տիրապետությունը երկրում։ Պետության և մոնոպոլիաների տեսանելի ու
անտեսանելի կապերի շնորհիվ ուժեղացել և ուժեղանում է ԱՄՆ-ի պետական
ապարատի ենթարկումը ամերիկյան մոնոպոլիաներին։

ԱՄՆ-ը կապիտալիստական աշխարհում արտադրության համակենտրո-
նացման և մոնոպոլիզացիայի ամենաբարձր աստիճանին հասած երկիրն է։
«Ամերիկյան տրեստները,— գրել է Վ. Ի. Լենինը,— իմպերիալիզմի կամ մո-
նոպոլիստական կապիտալիզմի էկոնոմիկայի բարձրագույն արտահայտու-
թյունն են» (Երկեր, հ. 23, էջ 44)։ ԱՄՆ-ում ներկայումս հաշվվում են շուրջ
400000 արդյունաբերական ընկերություններ, որոնցից միայն 300-ը տիրապե-
տում են բոլոր ընկերությունների ամբողջ ակտիվի 60 տոկոսին։ Իսկ այդ 300
խոշորագույն ընկերություններից առանձնանում են 36 հսկաներ, որոնց տա-
րեկան շրջանառությունը գերազանցում է մեկ միլիարդ դոլարից։ Դրանցից են՝
2 մետալուրգիական, 10 նավթային, 3 ավտոմոբիլային, 5 քիմիական, 5 էլեկ-
տրատեխնիկական և էլեկտրոնային, 1 գյուղատնտեսական մեքենաշինության,
4 սննդի, և այլ ընկերություններ։

ԱՄՆ-ի էկոնոմիկայում շատ մեծ է նավթարդյունաբերության նշանակու-
թյունը։ Կապիտալ ներդրումների ծավալով այս ճյուղը գրավում է առաջին
տեղը ԱՄՆ-ի ամբողջ արդյունաբերության մեջ։ Սակայն, ի տարբերություն
ավտոմոբիլային արդյունաբերության կամ մետաղաձուլության, նավթարդյու-
նաբերության մեջ փոքրաթիվ, ասենք 3—4 մոնոպոլիաների նշանակալի տի-

քապետություն չկա։ Այլ կերպ ասած, եթե վերցնենք նավթարդյունաբերական
3—4 ամենախոշոր ընկերությունների տեսակարար կշիռն ամերիկյան արդյու-
նաբերության այդ ամբողջ ճյուղի մեջ (մի մեթոդ, որն անպայման կիրառելի է
արդյունաբերության մյուս ճյուղերի մոնոպոլիզացիայի աստիճանի մասին
պատկերացում կազմելու համար), ապա նավթարդյունաբերության ռեալ
պատկերը չի ստացվի։ Սա, իհարկե, չի նշանակում, թե նավթարդյունաբերու-
թյան համակենտրոնացվածության աստիճանը ցածր է։ Բավական է ասել, որ
20 նավթային մոնոպոլիաներ մտնում են ԱՄՆ-ի 300 խոշորագույն կորպորա-
ցիաների ցուցակի մեջ, որոնցից 10-ի ակտիվները գերազանցում են մեկ մի-
լիարդ դոլարից, այն ժամանակ, երբ ամերիկյան արդյունաբերության բոլոր
ճյուղերում մեկ միլիարդ դոլարից ավելի ակտիվ ունեցող ընկերություննե-
րի ընդհանուր թիվը կազմում է 17։
Այս նույն չափանիշով կարող ենք ցույց տալ նավթային խոշորագույն
ընկերությունների արագ աճը, որն ԱՄՆ-ի նավթարդյունաբերության հետպա-
տերազմյան զարգացման առանձնահատկություններից մեկն է։ Այսպես, եթե
1946 թվականին մեկ միլիարդ դոլարից ավելի ակտիվներ ունեին նավթային
միայն 3 ընկերություններ, ապա, ինչպես նշվեց, նրանց թիվն այժմ հասնում
է 10-ի։ Ընդ որում, նավթավերամշակման արդյունաբերության մոնոպոլիզա-
ցիան զգալիորեն ավելի բարձր է, քան նավթի արդյունահանմանը. այսպես,
նավթային 20 խոշորագույն ընկերություններ տալիս են հում նավթի ամբողջ
համախառն արդյունահանման 45 տոկոսը, մինչդեռ տիրապետում են երկրի
նավթավերամշակման բոլոր ձեռնարկությունների արտադրական ամբողջ կա-
րողությունների 80 տոկոսը, մայրուղային նավթամուղների 90 տոկոսը, տան-
կերային նավատորմի և բենզինի արտադրության 85 տոկոսը։
Սակայն այս տվյալները դեռևս լրիվ պատկերացում չեն տալիս ԱՄՆ-ի
նավթարդյունաբերության մոնոպոլիզացիայի աստիճանի մասին։ Ամերիկյան
նավթարդյունաբերության այդ վիթխարի ճյուղի ամբողջ ակտիվների ավելի
քան կեսը վերահսկում են Ռոկֆելլերները և արդեն 80 տարի է, ինչ նրանք վիթ-
խարի շահույթներ են ստանում ամերիկյան և, հատկապես, այլ երկրների բան-
վորների արյան ու քրտինքի հաշվին։
ԱՄՆ-ի նավթային մոնոպոլիաները միավորված են խմբավորումների մեջ,
որոնցից ամենահզորը Ռոկֆելլերների «Ստանդարդ օյլ»-երի խումբն է, որի
մեջ մտնում են՝ «Ստանդարդ օյլ կոմպանի օֆ Նյու-Ջերսի», «Ստանդարդ օյլ
օֆ Կալիֆոռնիա», «Ստանդարտ օյլ օֆ Ինդիանա» և այլ ընկերություններ։
«Ստանդարդ օյլ»-երը այն միավորումներից են, որոնք չանասիրաբար ապա-
հովում են Պենտագոնի ռազմական պատվերները, իսկ Պենտագոնը բարեխղճու-
թյամբ նրանց համար ապահովում է միլիոնների հասնող շահույթներ։
«Ստանդարդ օյլ»-երի միավորումն իր 600-ից ավելի դուստր ընկերու-
թյունների ցանցով, վերահսկում է կապիտալիստական աշխարհի նավթի ամ-
բողջ արդյունահանման և վերամշակման $1/3$-ը։ Այս միավորումն ԱՄՆ-ում և այլ
երկրներում ունի 100 հազար կիլոմետր երկարությամբ նավթամուղներ, շուրջ
300 տանկերներ և վաճառահանման ձեռնարկություններ՝ կապիտալիստական
համարյա բոլոր երկրներում։
«Ստանդարդ օյլ»-երի գլխավոր ընկերությունը, նրանց լիդերը «Ստան-
դարդ օյլ կոմպանի օֆ Նյու Ջերսի» կոնցեռնն է։ Այս մոնոպոլիան, որը նավ-
թային մի շարք ընկերությունների ակցիաների հսկիչ ծրարները զավթելու մի-



ջոցով հիմնադրել է Ջոն Ռոկֆելլեր Առաջինը 1882 թվականին, առաջին տրեստն
է ամերիկյան կապիտալիզմի պատմության մեջ։ «Ջերսի»-ի (ինչպես ԱՄՆ-ում
կրճատ անվանվում է այդ կոնցեռնը) ակտիվները ներկայումս կազմում են
շուրջ 9 միլիարդ դոլար։ ԱՄՆ-ի արդյունաբերական ոչ մի այլ ընկերության ակ-
տիվները չեն հասնում այդպիսի գումարի։ «Ստանդարդ օյլ կոմպանի օֆ Նյու-
Ջերսի» կոնցեռնը իր կապիտալների գումարով գրավում է առաջին տեղը բոլոր
ընկերությունների շարքում, իսկ շահույթների մեծությամբ գրավում է երկ-
րորդ տեղը, զիջելով միայն ավտոմոբիլային «Ջեներալ Մոտորս» ընկերությա-
նը։ Վերջին տարիներին ամերիկյան նավթային այլ ընկերությունների՝ «Գալֆ
օյլ կոմպանի» (Մելոնի ֆինանսական ընտանիք), «Սինկլեր օյլ կորպորեյշն»,
«Ֆիլիպս Պետրոլիում» և «Տեխաս օյլ կոմպանի» (Մորգանի ֆինանսական ըն-
տանիք) տրեստների ակտիվներն աճեցին ավելի արագ տեմպերով, քան
«Ստանդարդ օյլ կոմպանի օֆ Նյու-Ջերսի» կոնցեռնինը, սակայն վերջինիս ակ-
տիվների բացարձակ աճը շարունակեց գերազանցել։
Նավթարդյունաբերությունը տարբերվում է իր խիստ բարձր շահութաբե-
րությամբ։ Հենց դրանով է բացատրվում այն կրքոտությունը, որով նավթային
մոնոպոլիաներն իրենց թաթերը մեկնում և կառչում են ամեն մի շրջանից, վայ-
րից, որտեղ հնարավորություն կա շնչելու նավթի «բուրմունքը»։ ԱՄՆ-ի նավթ-
արդյունաբերության գոյության 100 տարիների ընթացքում ամերիկյան նավ-
թային ընկերությունների կողմից կալվածատերերին վճարված ամբողջ վար-
ձավճարի 95 տոկոսը տրվել է չօգտագործվող հողամասերի համար։ Կապիտալ-
ների այսպիսի վատնումը, որը հնարավոր կարող է լինել միմիայն չափազանց
բարձր շահութաբերության դեպքում, շատ բնորոշ է ամերիկյան նավթարդյու-
նաբերության համար։
Բարձր շահութաբերություն, սպառազինությունների մրցավազքի հետե-
վանքով նավթի, որպես ստրատեգիական վառելիքային հումքի պահանջի մե-
ծացում, նավթի տնտեսական բարձր էֆեկտիվություն, կապիտալիստական
երկրների ածխարդյունաբերության անկում՝ ահա այն հանգամանքները, որոնք
նավթարդյունաբերության մոնոպոլիաների համար գործունեության լայն աս-
պարեզ են բացել։ Նավթային հումքի հիման վրա քիմիական արտադրանքի ար-
տադրության մեծացումը՝ նավթային և քիմիական արդյունաբերության ձեռ-
նարկությունների միջև սերտ կապերի ստեղծման օբյեկտիվ գործոն է։ Նավթի
հիման վրա քիմիկատներ են արտադրվում ինչպես քիմիական, այնպես և
նավթային մոնոպոլիաների կողմից։ Հաճախ նավթային և քիմիական ընկերու-
թյունները համատեղ ընդհանուր ձեռնարկություններ են ստեղծում։ Այսպես,
օրինակ, ամերիկյան «Գուդրիչ» կաուչուկի ընկերությունը և «Գալֆ օյլ կոմ-
պանի» ու «Տեխաս օյլ կոմպանի» նավթային ընկերությունները համատեղ
գնեցին սինթետիկ կաուչուկի ամերիկյան պետական գործարանը։
Արդյունաբերության այլ ճյուղերի ձեռնարկությունների հետ իրենց ունե-
ցած հարաբերություններում նավթային մոնոպոլիաներն ամեն կերպ արգելա-
կում են նավթի հետ մրցող որևէ այլ վառելիքի արտադրության կազմակերպու-
մը։ Նավթային մոնոպոլիաների «գործունեությամբ» է բացատրվում այն, որ
սինթետիկ վառելիքի արժեքավոր հումք հանդիսացող թերթաքարերի՝ ԱՄՆ-ում
առկա հարուստ պաշարները համարյա չեն օգտագործվում։ Ահա թե ինչպես են
մոնոպոլիաներն արգելակում արտադրողական ուժերի զարգացումը։
ՍՄԿԿ XXII համագումարին տրված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ

ընկեր Ն. Ս. Խրուշչովը նշեց, որ «Գաղութային լծից ազատագրված երկրները որոշակի հաջողություններ են ձեռք բերել ազգային և կուլտուրական վերածնության ճանապարհին։ Բայց Ասիայի և Աֆրիկայի ազատագրված երկրների մեծամասնության տնտեսական զարգացումը դեռևս դանդաղ է ընթանում։ Ժողովրդական մասսաների նյութական դրությունը մնում է ծանր, իսկ նրանց երկրների հարստությունները ոսկու գետի պես հոսում են դեպի օտարերկրյա բանկերի ու կորպորացիաների սեյֆերը։ ԱՄՆ-ի մոնոպոլիաները թույլ զարգացած երկրներում իրենց ծախսած յուրաքանչյուր դոլարի դիմաց վաստակում են երկու-երեք, դոլար»։ Սա լիովին վերաբերում է նաև ամերիկյան նավթային մոնոպոլիաների գործունեությանը։ ԱՄՆ-ի նավթային մոնոպոլիաներն ընդհանրապես, Ռոկֆելլերների «Ստանդարդ օյլ»-երի խումբը մասնավորապես, իրենցից ներկայացնում են ամերիկյան մոնոպոլիստական կապիտալի այն մասը, որի շահերն ավելի սերտորեն են կապված արտաքին շուկաների, կապիտալի արտահանման հետ։

Նավթային մոնոպոլիաները մեծ դեր են խաղում ԱՄՆ-ի արտաքին տնտեսական էքսպանսիայում։ Նրանք նավթ են արդյունահանում 75 երկրներ։ Արտասահմանում կատարված կոնցեսիաների չափով, օտար երկրներում գտնվող իրենց ձեռնարկությունների թվով ու հզորությամբ և արտասահմանյան կապիտալ ներդրումների չափով ու շահութաբերությամբ արդյունաբերական ոչ մի մոնոպոլիա չի կարող համեմատվել ԱՄՆ-ի նավթային խոշոր մոնոպոլիաների հետ։ Միայն նավթային մոնոպոլիաների արտասահմանյան կապիտալ ներդրումների գումարն ավելի մեծ է, քան ամերիկյան ամբողջ վերամշակող արդյունաբերության արտասահմանյան ներդրումներինը։ Արտասահմանում ամերիկյան կապիտալ ներդրումների ամբողջ գումարի մոտ 35 տոկոսը և արտասահմանյան կապիտալ ներդրումներից ստացված շահույթների 45 տոկոսը նավթային մոնոպոլիաների բաժինն են։ ԱՄՆ-ի 5 խոշորագույն նավթային մոնոպոլիաների արդյունահանած ամբողջ նավթի $^{2}/_{3}$-ը ստացվում է օտար երկրներում։ Նավթային հարուստ աղբյուրների և էժան բանվորական ուժի առկայությունն ամերիկյան նավթային մոնոպոլիաներին ձգում է տնտեսապես առավել հետամնաց երկրներ։ Ամերիկյան մոնոպոլիաները ամբողջովին մոնոպոլիզացրել են նավթի հանույթն ու վերամշակումը Սաուդյան Արաբիայում, Բահրեյնյան կղզիներում, իշխող դիրք են գրավել Վենեցուելայի, Կոլումբիայի, Կանադայի, Ճապոնիայի նավթարդյունաբերության մեջ, ակտիվորեն մասնակցում են Իրանի, Իրաքի, Քուվեյթի, Ինդոնեզիայի, Սահարայի և այլ երկրների նավթային հարստությունների շահագործմանը։ 10 տարվա ընթացքում՝ 1947-ից մինչև 1957 թվականը ամերիկյան նավթային բոլոր մոնոպոլիաների արտասահմանում ստացած և ԱՄՆ տեղափոխած շահույթների գումարը կազմեց 13 միլիարդ 670 միլիոն դոլար, որի կեսը 20 խոշորագույն տրեստների բաժինն էր, իսկ մնացած կեսի մեծ մասը՝ 200 նավթային այլ ընկերություններինը։

Ինչպես նշվեց, արտաքին տնտեսական էքսպանսիայի գործում նավթային մոնոպոլիաների շարքում հատկապես մեծ է «Ստանդարդ օյլ»-երի դերը։ Իսկ այդ միավորման մեջ դարձյալ առանձնանում է «Ստանդարտ օյլ կոմպանի օֆ Նյու-Ջերսի»-ն, որի ամբողջ շահույթների մոտ 80 տոկոսը ստացվում է արտասահմանյան գործունեությունից։ Միայն «Ջերսի»-ն վերահսկում է 322 ընկերությունների գործունեությունը և նրանց միջոցով իր ձեռքում է պահում կապիտալիստական աշխարհի նավթային բիզնեսի 20 տոկոսը։ Աշխարհի տարբեր



մասերում նրա ձեռնարկություններում աշխատում են 155000 բանվորներ ու ծառայողներ։ Նա գլխավոր մասնակիցն է ամերիկյան 4 ընկերություններից կազմված «ԱՐԱՄԿՕ» կոնցեռնի, որն ընդգրկում է Սաուդյան Արաբիայի ամբողջ տերիտորիայի $^{3}/_{4}$-ը, այսինքն՝ այնպիսի տարածություն, որը հավասար է Անգլիայի, Ֆրանսիայի, Իտալիայի և Շվեյցարիայի տերիտորիաներին՝ միասին վերցրած։ Ըստ որում «Ստանդարդ օյլ կոմպանի օֆ Նյու-Ջերսի»-ի արտասահմանյան կապիտալ ներդրումների շահույթի նորման ավելի քան 6 անգամ գերազանցում է ԱՄՆ-ում կատարված ներդրումների շահույթի նորմային։

Եթե ԱՄՆ-ում մեկ բանվորի շահագործումից ռոկֆելլերները տարեկան ստանում են 3036 դոլար շահույթ, ապա Լատինական Ամերիկայում՝ 13950 դոլար, իսկ առանձին երկրներում՝ ավելի շատ։ Օրինակ՝ Վենեցուելայում մեկ բանվորից ռոկֆելլերները տարեկան քամում են 20200 դոլար շահույթ։ Այստեղից հասկանալի է, թե ինչու Վենեցուելան համարվում է «Ռոկֆելլերյան գահի գոհարը»։

ԱՄՆ-ում բուռն կերպով պրոպագանդվում է Ջոն Ռոկֆելլեր Առաջինի կողմից շրջանառության մեջ նետված հետևյալ տեսակետը. «Ինչ որ լավ է Ստանդարդ օյլ-ի համար, լավ է նաև ԱՄՆ-ի համար»։ Այս «թեորիան» մեծ հաջողությամբ կիրառվում է գործնականում։ Երբ հնարավոր չի լինում «սև ոսկին» յուրացնել գաղութատիրական հին մեթոդներով, ասպարեզ է գալիս դոլարը։ Դոլարին կրնկակոխ հաջորդում է ամերիկյան դրոշակը, որին հետևում են զինվորները։ Մերձավոր և Միջին Արևելքը հարուստ է նավթի պաշարներով. ահա թե ինչու գործի դրվեց «էյզենհաուերի դոկտրինան», որը, ի դեպ, մշակվեց ո՛չ Սպիտակ տան պատերի ներսում, ո՛չ էլ ԱՄՆ-ի պետական դեպարտամենտում, այլ «Ստանդարդ օյլ կոմպանի օֆ Նյու-Ջերսի» կոնցեռնի օրգանի էջերում. այդ դոկտրինան ընդունվեց ամերիկյան կոնգրեսի կողմից, որովհետև... «ինչ որ լավ է Ստանդարդ օյլ-ի համար, լավ է նաև ԱՄՆ-ի համար»։

30-ական թվականներին, երկրորդ համաշխարհային պատերազմը ծագելուց մի քանի տարի առաջ, «Ջերսի»-ն գերմանական «Ֆարբենինդուստրի» քիմիական կոնցեռնին վաճառեց նավթի վերամշակման տեխնոլոգիական պրոցեսներին վերաբերող մի շարք կարևոր գաղտնիքներ։ 1945 թվականին Գերմանիայում հայտնաբերված գաղտնի փաստաթղթերից հաստատվեց, որ «Ֆարբենինդուստրի» կոնցեռնի ղեկավարները հայտնել են Հիտլերին, թե «Ջերսի»-ից ստացված են այնպիսի տեղեկություններ, «առանց որոնց անհնար կլիներ պատերազմել ժամանակակից մեթոդով»։ Վերմախտն իր հերթին հայտնել է, թե առանց «Ջերսի»-ի նա չէր կարողանա ապահովել ավիացիոն բենզինի և քսուքյուղերի անհրաժեշտ պաշարներ։ Այդ գործարքները, իհարկե, «լավ» էին «Ստանդարդ օյլ»-ի համար. իսկ ինչքա՞ն «լավ» էին մարդկության համար...։

Բացի արդյունահանումից և վերամշակումից, «Ստանդարդ օյլ կոմպանի օֆ Նյու Ջերսի»-ն լայն գործունեություն է ծավալել նաև կապիտալիստական աշխարհում նավթի փոխադրության ու վաճառահանման բնագավառներում։ Նրան են պատկանում ավելի քան 30 հազար կիլոմետր երկարությամբ նավթամուղներ և շուրջ 250 տանկերներ։ Իսկ նավթ վաճառահանող նրա առևտրական ցանցը, որը տարածվում է կապիտալիստական աշխարհի բոլոր հիմնական շրջաններում, իրացնում է ո՛չ միայն «Ջերսի»-ի կողմից արտադրված նավթը, այլև ուրիշ նավթային ընկերությունների արտադրանքը։ «Ստանդարդ օյլ կոմ-

պանի օֆ Նյու Ջերսի»-ն, «Ստանդարդ օյլ»-երի ամբողջ խումբը առհասարակ. նավթային միջազգային կարտելի ամենաակտիվ անդամն է և կատաղի պայքար է մղում գլխավոր մրցակցի՝ անգլո-հոլանդական «Ռոյալ Դաչ Շել»-ի հետ:

Ամերիկյան նավթային մոնոպոլիաների կողմից օտար երկրներում արդյունահանվող նավթի միայն մի աննշան մասն է ներմուծվում ԱՄՆ, այն էլ հիմնականում Վենեցուելայից: Մնացած մեծ մասը իրացվում է այլ երկրներում: Օտար երկրների ընդերքից արդյունահանվող նավթը հենց այդ երկրներում վաճառելով, ամերիկյան նավթային մոնոպոլիաներն ամեն տարի հսկայական քանակությամբ «ոսկե ձվեր» են տուն փոխադրում:

***

ԱՄՆ-ի էկոնոմիկայի կարևորագույն ճյուղերից մեկը ավտոմոբիլային արդյունաբերությունն է, որը հաճախ անվանվում է երկրի գործարար ակտիվության բարոմետր: Ավտոմոբիլային արդյունաբերությունն սպառում է ԱՄՆ-ում արտադրվող ամբողջ պողպատի 25, կապարի 28, ցինկի 65, բնական կաուչուկի 65, սինթետիկ կաուչուկի 61 տոկոսը և այլն: Հասկանալի է, որ նման պայմաններում ամերիկյան ավտոմոբիլային արդյունաբերության տատանումներն անխուսափելիորեն կանդրադառնան ԱՄՆ-ի էկոնոմիկայի վրա: Բնականաբար, ավտոմոբիլային արդյունաբերությունն իր հերթին մեծ չափով կախման մեջ է արդյունաբերության թվարկված և այլ ճյուղերի դրությունից: Արդյունաբերական միջճյուղային կապերի խորությամբ և բազմակողմանիությամբ ավտոմոբիլային արդյունաբերությունն ԱՄՆ-ի էկոնոմիկայում գրավում է առաջին տեղը: Մյուս կողմից՝ 11 միլիոն բանվորներ, այսինքն՝ ԱՄՆ-ի յուրաքանչյուր վեցերորդ բանվորը զբաղված է ավտոմոբիլային արդյունաբերության մեջ, կամ ավտոմոբիլային տրանսպորտում:

Ավտոմոբիլային արդյունաբերությունն ամերիկյան էկոնոմիկայի մոնոպոլիզացիայի ամենաբարձր աստիճանին հասած ճյուղերից մեկն է: Պատրաստի ավտոմեքենաների, ինչպես նաև պահեստամասերի արտադրությունը խիստ կենտրոնացված է հիմնականում խոշորագույն ձեռնարկություններում: 2500-ից ավելի բանվորներ ունեցող ձեռնարկություններում աշխատում է ԱՄՆ-ի ավտոմոբիլային ամբողջ արդյունաբերության մեջ զբաղված բոլոր բանվորների ավելի քան 65 տոկոսը: Բավական է ասել, որ ԱՄՆ-ում արտադրվող բոլոր ավտոմոբիլների 95 տոկոսը տալիս են 3 խոշոր մոնոպոլիաներ, որոնք ճանաչված են որպես «Մեծ եռյակ». դրանք են՝ «Ջեներալ Մոտորս կոմպանի», «Ֆորդ մոտոր կոմպանի» և «Կրայսլեր կորպորեյշն»:

«Մեծ եռյակ»-ի կողքին, մինչև 1953—1954 թվականները գոյություն ունեին ավտոմոբիլային վեց «անկախ» ընկերություններ—«Ստուդըբեյկըր», «Ուիլլիս», «Պակարդ», «Հադսըն», «Նաշ» և «Կայզըր»: 1953 թվականին «Կայզըր» և «Նաշ» ընկերությունները միավորվեցին մեկ՝ «Կայզըր-Նաշ» մոնոպոլիայում: 1954 թվականի հունվարին միավորվեցին «Հադսըն» և «Ուիլլիս» ընկերությունները՝ կազմելով «Ամերիկըն Մոտորս» մոնոպոլիան, իսկ նույն թվականի օգոստոսին միավորվեցին վերջին երկու «անկախ» ընկերությունները՝ «Ստուդըբեյկըր»-ը և «Պակարդ»-ը՝ «Ստուդըբեյկըր-Պակարդ» մոնոպոլիայում:

Մանր ու միջակ, նույնիսկ խոշոր ավտոմոբիլային ընկերությունները, որոնք իրավականորեն «ինքնուրույն» են, փաստորեն ամբողջովին վերահսկ-



վում են «Մեծ եռյակ»-ի կողմից: Այս երևույթը, որը հատուկ է առհասարակ մոնոպոլիստական կապիտալին, առանձնապես ցայտուն է դրսևորվում ԱՄՆ-ի ավտոմոբիլային արդյունաբերության մեջ: Ավտոմոբիլային մոնոպոլիաների համար հաճախ ավելի ձեռնտու է ոչ թե կուլ տալ, այլ պահպանել և իրենց ենթարկել այդ «անկախ» ընկերությունները: Նույնը պետք է ասել նաև հումք և զանազան մասեր մատակարարող ձեռնարկությունների մասին: «Ջեներալ Մոտորս» կոնցեռնին սպասարկում են 26 000 ընկերություններ, որոնցից 16700-ը՝ հարյուր մարդուց քիչ բանվորներ և ծառայողներ ունեցող ձեռնարկություններ են:

Ամերիկյան ավտոմոբիլային մոնոպոլիաները, ավելի ճիշտ՝ հենց «Մեծ եռյակ»-ը, վերահսկում են ո՛չ միայն ԱՄՆ-ի համարյա ամբողջ ավտոմոբիլային արդյունաբերությունը, այլև զգալի չափով նաև ուրիշ կապիտալիստական երկրների ավտոմոբիլային ձեռնարկությունները: Մարդատար ավտոմեքենաների կապիտալիստական ամբողջ արտադրության մոտ 2/3-ը կենտրոնացված է ամերիկյան մոնոպոլիաների ձեռքում: ԱՄՆ-ի մոնոպոլիաների դուստր ընկերությունների ձեռքում է կենտրոնացված Կանադայի ամբողջ ավտոմոբիլային արդյունաբերությունը, Անգլիայի, ԳՖՌ-ի և Ֆրանսիայի ավտոմոբիլային արդյունաբերության 40 տոկոսը: Ամերիկյան ավտոմոբիլային մոնոպոլիաները դուստր ընկերություններ ունեն նաև Ճապոնիայում, Ավստրալիայում, Բրազիլիայում, Արգենտինայում, Վենեցուելայում, Բելգիայում և այլ երկրներում:

«Ջեներալ Մոտորս կոմպանի»-ն, որն ստեղծվել է 1908 թվականին՝ 20 ընկերությունների միացմամբ, ԱՄՆ-ի ավտոմոբիլային ամենահզոր մոնոպոլիան է: Այն պատկանում է Դյուպոնի ֆինանսական խմբին և սերտ կապեր ունի Մորգանների հետ: «Ջեներալ Մոտորս»-ը արտադրում է ԱՄՆ-ում թողարկվող բոլոր ավտոմեքենաների ավելի քան 45 տոկոսը: Սա միակ կոնցեռնն է, որի վերաբերյալ ամերիկյան սենատի հանձնաժողովներից մեկում արձանագրվեց, որ «մոտենում է մոնոպոլիայի», այսինքն՝ դեռևս մոնոպոլիա չէ... Այս կոնցեռնն ունի 126 գործարան ԱՄՆ-ում, 5-ը՝ Կանադայում և 19-ը՝ այլ երկրներում: Նրա գործարաններում աշխատում են 650000 բանվորներ ու ծառայողներ: «Ջեներալ Մոտորս»-ի ակտիվները հասնում են 7,5 միլիարդ դոլարի. Նրա շրջանառության գումարը և շահույթները գերազանցում են կապիտալիստական ցանկացած երկրի արդյունաբերության որևէ ճյուղի ամեն մի ընկերության շահույթները՝ կապիտալիզմի ամբողջ պատմության ընթացքում:

Հետպատերազմյան շրջանում «Ջեներալ Մոտորս»-ի տարեկան միջին շահույթը կազմում է շուրջ մեկ միլիարդ դոլար: Նա ստանում է ամբողջ ԱՄՆ-ում տարեկան յուրացվող շահույթի ընդհանուր գումարի 7 տոկոսը: «Ջեներալ Մոտորս»-ի շահույթի նորման համարյա 3 անգամ գերազանցում է ամերիկյան ամբողջ վերամշակող արդյունաբերության շահույթի նորմայի մակարդակը: «Ջեներալ Մոտորս»-ի, ինչպես նաև մյուս ավտոմոբիլային մոնոպոլիաների կողմից յուրացվող շահույթների աղբյուրը ոչ միայն «ավտոմոբիլային գործունեությունն է, այլև «Պենտագոնյան բիզնես»-ը: ԱՄՆ-ի պետական բյուջեից ստացվող, այսինքն՝ ամերիկյան ժողովրդի վճարած հարկերից գոյացող շահույթների մեծությամբ ավտոմոբիլային մոնոպոլիաները կարող են մրցել ինչպես նավթային, այնպես և արդյունաբերության այլ ճյուղերի մոնոպոլիաների հետ: Երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին ամերիկյան արդյունաբերության թողարկած ամբողջ ռազմական արտադրանքի 18 տոկոսը ավտո-

մոբիլային արդյունաբերության բաժինն էր։ Հետպատերազմյան շրջանում և
ավտոմոբիլային արդյունաբերությունը մնում է ռազմական արտադրանքի ա-
ռաջատար մատակարարողներից մեկը։ Դրանում մեծ դեր խաղաց այն հանգա-
մանքը, որ էյզենհաուերի կառավարությունում պաշտպանության մինիստրի
պորտֆելն ստանալուց առաջ Չառլզ Վիլսոնը «Ջեներալ Մոտորս»-ի պրեզի-
դենտն էր։

1955 թվականից «Ջեներալ Մոտորս»-ը սկսեց թողարկել ատոմային շար-
ժիչներ։ «Ջեներալ Մոտորս»-ն արտադրում է նաև զանազան էլեկտրասարքեր,
շարժիչներ, դիզելներ, ճանապարհային սարքավորում և այլն։ Նրան են պատ-
կանում պողպատի, ապակու, ավտոդողերի արտադրության մի քանի տասն-
յակ գործարաններ։ «Ջեներալ Մոտորս»-ն իր հզորությամբ այսօր մասնակ-
ցում է իմպերիալիստների սանձազերծած սպառազինությունների մրցավազքին։

«Մեծ եռյակ»-ի երկրորդ մոնոպոլիան «Ֆորդ Մոտոր կոմպանի»-ն է, որը
մինչև 1928 թվականն առաջին տեղն էր գրավում ԱՄՆ-ի ավտոմոբիլային ար-
դյունաբերության մեջ։ «Ֆորդ»-ի բաժինը ամերիկյան ավտոմոբիլային արդյու-
նաբերության արտադրանքում այժմ կազմում է 35 տոկոս։ Այս ընկերությունը
բացի մարդատար և ռազմական բեռնասար ավտոմեքենաներից, արտադրում է
նաև տրակտորներ, տանկեր ու ռազմական ռեակտիվ շարժիչներ։ «Ֆորդ Մոտոր
կոմպանի»-ն ունի ավտոմոբիլային 57 գործարան, սպառազինությունների ար-
տադրության մի քանի ձեռնարկություններ, մետաղաձուլական գործարան, եր-
կաթհանքեր, ածխահանքեր, սարքաշինական, ավտոդողերի և ապակու գոր-
ծարաններ, կաուչուկի պլանտացիաներ, 17 կոնստրուկտորային բյուրոներ և
գիտա-հետազոտական լաբորատորիաներ։ Բացի դրանցից, «Ֆորդ Մոտոր կոմ-
պանի»-ն ավտոմոբիլային գործարաններ ունի Անգլիայում, ԳՖՌ-ում, Կանա-
դայում, Լատինական Ամերիկայի մի շարք երկրներում։ Չկա ավտոմոբիլային
արդյունաբերություն ունեցող կապիտալիստական որևէ երկիր, որտեղ
«Ֆորդ»-ը չունենա իր շահերը։ Մինչև 1956 թվականը «Ֆորդ Մոտոր կոմպա-
նի»-ին ամբողջովին վերահսկում էր Ֆորդերի ընտանիքը և փաստորեն հանդի-
սանում էր ԱՄՆ-ի ինքնուրույն ֆինանսական խմբերից մեկը, չնայած իր հզո-
րությամբ զգալիորեն զիջում էր Մորգանին, Ռոկֆելլերին և այլոց։ 1956 թվա-
կանին «Ֆորդ»-ը դադարեց որպես ինքնուրույն ֆինանսական խումբ գոյու-
թյուն ունենալուց. նրա ակցիաների զգալի մասն անցավ «Ֆերստ Նեյշն Սիտի
Բենկ օֆ Նյու-Յորք»-ի ձեռքը, որն այժմ ԱՄՆ-ի խոշորագույն ֆինանսա-մո-
նոպոլիստական միավորումներից մեկն է և ընդգրկում է խոշոր բանկեր,
պղնձարդյունաբերության, ինքնաթիռաշինության, տրանսպորտային ու այլ
ընկերություններ։

Իր մեծությամբ երրորդ ավտոմոբիլային մոնոպոլիան «Կրայսլեր կորպո-
րեյշն»-ն է, որը թողարկում է ԱՄՆ-ում արտադրված ավտոմեքենաների 14 տո-
կոսը։ Այս մոնոպոլիան, որին վերահսկում է Մորգանի ֆինանսական խումբը,
նույնպես մեծ դեր է խաղում սպառազինությունների, հատկապես տանկերի և
ղեկավարվող արկերի արտադրության գործում։ «Կրայսլեր կորպորեյշն»-ը
ունի 40 գործարան ԱՄՆ-ում, ինչպես նաև գործարաններ՝ Կանադայում, Ան-
գլիայում, Ֆրանսիայում, Բելգիայում և Հոլանդիայում։

«Կրայսլեր»-ն իր հզորությամբ զգալիորեն զիջում է «Ջեներալ Մոտորս»-ին
և «Ֆորդ»-ին։ 1958 թվականի առաջին քառորդին, այսինքն՝ գերարտադրության
ցիկլային տնտեսական ճգնաժամի սկզբում, «Ջեներալ Մոտորս»-ի արտա-



դրանքի վաճառքը կրճատվեց 17 տոկոսով, «Ֆորդ»-ինը՝ 36, իսկ « Կրայսլեր
կորպորեյշն»-ինը՝ 56 տոկոսով։

Ավելի փոքր է այն ֆինանսական խմբերի թիվը, որոնք տառացիորեն իշ-
խում են ոչ միայն արդյունաբերության վերոհիշյալ ընկերությունների ու ճյու-
ղերի վրա, ոչ միայն արդյունաբերության և բանկային գործում, այլև ԱՄՆ-ի
ամբողջ ժողովրդական տնտեսության, ամբողջ ԱՄՆ-ի վրա։ Այսօր ԱՄՆ-ում
սեփականատերերի մեծ տոկոսը իր ձեռքումն է պահում երկրի ամբողջ ազգա-
յին հարստության 60 տոկոսը։ Մի քանի ֆինանսական խոշոր խմբեր՝ Մոր-
գանի, Ռոկֆելլերի, Դյուպոնի, Մելոնի, Կուն-Լեբի, Չիկագոյի, Կալիֆոռնյան,
Կլիվլենդյան և Բոստոնյան խմբերը հանդիսանում են ԱՄՆ-ի փաստացի տե-
րերը։ Առաջին հինգը միասին վերցրած կազմում են «Ուոլստրիտյան», կամ՝
Հյուսիս-արևելյան ֆինանսա-արդյունաբերական շրջանային միավորումը։
Սրանց ազդեցությունը, իհարկե, չի սահմանափակվում միայն ԱՄՆ-ի հյուսիս-
արևելքով. այստեղ նրանք կազմավորվել ու կենտրոնացրել են իրենց պատկա-
նող բանկային և արդյունաբերական կորպորացիաները, սակայն նրանց ազդե-
ցությունը տարածվում է ամբողջ ԱՄՆ-ի վրա և նրա սահմաններից շատ հեռու։
Այդ խմբերը միասին վերցրած ներկայացնում են ԱՄՆ-ի ֆինանսական օլի-
գարխիան, ամբողջ երկրի տնտեսական ու քաղաքական կյանքի իսկական
տնօրինողները, որոնցից յուրաքանչյուրի կողմից վերահսկվող կապիտալի չա-
փերը, առանձին վերցրած, համարյա 4 անգամ գերազանցում են այնպիսի երկ-
րի բյուջեի եկամուտների գումարը, ինչպիսին է Անգլիան։

ԱՄՆ-ի ավտոմոբիլային և նավթային կոնցեռնները ժամանակակից կապի-
տալիզմի ամենակենտրոնացված և ամենախոշոր մոնոպոլիաներն են, իսկ հենց
ԱՄՆ-ում նավթային մագնատներն ամերիկյան մոնոպոլիստական կապիտալի
տնտեսապես ամենահզոր և քաղաքականապես ամենաազդեցիկ խումբն
են, ամերիկյան ֆինանսական օլիգարխիայի գլխավոր ներկայացուցիչների
ուժի աղբյուրը։ Ամերիկյան նավթային և ավտոմոբիլային մոնոպոլիաների
գործունեությունը ցույց է տալիս, որ, ինչպես նշված է Սովետական Միության
Կոմունիստական պարտիայի Ծրագրում, «Հսկա մոնոպոլիաները, իրենց
ձեռքում կենտրոնացնելով հասարակական արտադրության գերակշռող մասը,
տիրապետում են ազգի կյանքին։ Միլիարդատերերի և միլիոնատերերի մի փոք-
րաթիվ խումբ անարգել կերպով տնօրինում է աշխարհի ամբողջ հարստությու-
նը, ամբողջ ազգերի կյանքը մանր դրամ է դարձնում հանուն իր շահամոլական
գործարքների»։

նվիրված լեգենդար Կամոյի հիշատակին։ Հասկանալի է, որ այդ գրականության և թռուցիկների մեծ մասը տպագրվում էր անլեգալ կերպով՝ գաղտնի տպարաններում։ Ահա թե ինչու միանգամայն ճիշտ է, որ հին բանվորական մամուլի և ընդհանրապես ռևոլյուցիոն գրականության հրատարակումը մի հերոսական գործ էր այն ժամանակվա պայմաններում։

Ցարի գործակալները, ամեն միջոցի դիմում էին գաղտնի տպարանը երևան հանելու, «որը նրանց համար մեծ հարսանեկան տոն» կլիներ,— պատմում էր Խանոյանը։

Դժբախտաբար առաջին ռևոլյուցիան բարիկադային կատաղի կռիվներում պարտվում է։ Ցարական ռեակցիան դիմում է անողոք ռեպրեսիաների։ Սկսվում է մասսայական ձերբակալումների ու վայրագ հաշվեհարդարի ստոլիպինյան շրջանը։

Այդ տարիների բոլոր ռևոլյուցիոն ելույթների ակտիվ մասնակից Խանոյանը չէր կարող մնալ Թիֆլիսում։ Նա գնում է Ջալալօղլի (Ստեփանավան) ուսուցչություն անելու, բայց ստիպված է լինում հեռանալ այնտեղից։ Թիֆլիսում հրատարակվող «Հոսանք» թերթում տպագրվել էին տեղի աղա-հոգաբարձուների դեմ նրա քննադատական հոդվածները, որոնց պատճառով նրան հալածում էին։

1907-ից մինչև 1912 թվականը նա ուսուցչություն է անում գավառային հետամնաց քաղաքներում՝ Նուխիում և Ղզլարում, երբեք կապերը չխզելով Անդրկովկասի բոլշևիկներից. նա նույնիսկ օգնում է Ստ. Շահումյանին «Նոր խոսք» բոլշևիկյան լեգալ հանդեսի հրատարակման գործում։

1912 թվականին ուսման պակասը լրացնելու ցանկությամբ Խանոյանը մեկնում է Պետերբուրգ և մտնում Մանկավարժական ակադեմիա։ Միևնույն ժամանակ նա կապվում է մայրաքաղաքի ռևոլյուցիոն ուսանողության հետ։

1914 թվականին սկսվում է համաշխարհային պատերազմը։ Խանոյանը վերադառնում է Թիֆլիս և անմիջապես անցնում ընդհատակյա աշխատանքի։ 1915 թվականի վերջերին Թիֆլիսի հայ սոցիալ-դեմոկրատները հրատարակում են «Պայքար» թերթը։ Խանոյանի համար բացվում է գործունեության լայն ասպարեզ։ Նա էր այն պատասխանատու անձը, որին և ամեն անգամ կանչում էր ցարական ժանդարմերիան՝ պատասխան տալու թերթի գործունեության և ուղղության մասին։ «Պայքարում», ինչպես և բոլոր այն թերթերում, որոնց նա մասնակցել է, Խանոյանն ունի հոդվածներ, ուղղված դաշնակների դեմ։ Նա մի շարք հոդվածներ ունի նացիոնալիզմի, ազգամիջյան ատելություն քարոզող բոլոր տեսակի թթու «ազգասերների» դեմ, հոդվածներ, որոնք տոգորված են ազգերի եղբայրության և համերաշխության վսեմ գաղափարներով։

Բնորոշ է Խանոյանի համար հետագայում «Մարտակոչ»-ում տպագրված նրա «Քյալաշի Շիրոն» ակնարկը։ Ինչպիսի՜ անկեղծ ուրախությամբ է նա նշում այն փաստը, որ մինչսովետական շրջանի հետամնաց, ոչ մի գիր ու գրականություն չունեցող եզիդների երեխաների համար Սովետական իշխանությունը ստեղծել է գիր և դպրոց։ Այդ առերևույթ չնչին թվացող փաստը այն ժամանակ՝ տասնյակ տարիներ առաջ, ուրախացնում է Խանոյանին, քանի որ նա այդ փոքրիկ դպրոցի մեջ տեսնում էր, թե ինչ հրաշքների է ընդունակ ազատագրված ժողովուրդը լենինյան ռևոլյուցիայի պայծառ արևի տակ։ Կարելի է երևակայել, թե ինչ ուրախությամբ կլցվեր նա, եթե տեսներ Սովետական Միության մեջ ապրող բազմաթիվ փոքր ազգերի կուլտուրական այսօրվա վերելքը, այն ազգությունների, որոնք անցյալում չեն ունեցել գիր ու գրականություն։

«Պայքար»-ը իր գոյությունը պահպանում է մինչև 1917 թվականը։ Բոլշևիկները մենշևիկներից անջատ հիմնում են իրենց օրգանը՝ «Բանվորի կռիվը», որին Խանոյանը ամենաակտիվ մասնակցություն է ունենում։ Սակայն ժամանակն այնպիսին էր, որ չէր կարելի բավականանալ միայն թերթի աշխատանքով։ Նա ակտիվ մասսայական գործիչ է և ընտրվում է Թիֆլիսի բանվորական առաջին Սովետի դեպուտատ և ստանձնում Սովետի քարտուղարի պաշտոնը։ Երևակայեցեք՝ Նոյ Ժորդանիան՝ վրաց մենշևիկների արխինահապետը և բոլշևիկ Սերգո Խանոյանը միասին, մեկը՝ նախագահ, մյուսը՝ քարտուղար։

1918 թվականին մի շարք գյուղացիական ապստամբություններ են ծագում Վրաստանի գավառներում. դրանցից առանձնապես մեծ ծավալ ստացավ Դուշեթի հայտնի ապստամբությունը Վրաստանի մենշևիկյան հակառևոլյուցիոն կառավարության դեմ։ Վերջինս Դուշեթի ապստամբությունը ճնշելու համար դիմում է գազանային միջոցների։ Այդ, ինչպես և մի քանի ուրիշ ապստամբություններ կազմակերպելու գործում աչքի ընկնող ղեկավար դեր է կատարել Խանոյանը։ Հրաշալի տիրապետելով վրաց լեզվին, լինելով անվախ մասսայական ագիտատոր-կազմակերպիչ՝ նա դառնում է ապստամբ գյուղացիության ղեկավարներից մեկը։ Մենշևիկյան կառավարությունը պատրաստվում է Խանոյանին դատի տալ, բայց նրան հաջողվում է անցնել ընդհատակ։ Մենշևիկները ձերբակալում են նրա կնոջը։ Խանոյանը մի ամբողջ տարի անլեգալ կյանք է վարում՝ մինչև որ նրան հաջողվում է անցնել «սահմանը» և գալ Երևան։ Հայաստանի



նորակազմ «Արմենկոմ»-ը առաջարկում է նրան գնալ Ալեքսանդրապոլ, ուժեղացնել քաղաքի պարտկազմակերպության աշխատանքը։

Ալեքսանդրապոլում նրան հաջողվում է դասեր ստանալ օրիորդաց դպրոցում։ Սակայն դա մի միջոց էր պաշտոնապես քաղաքում ապրելու համար։ Որպես գավառային բոլշևիկյան կոմիտեի նախագահ, Խանոյանը ծավալում է եռուն պարտիական-մասսայական աշխատանք, օգտագործելով բոլոր լեգալ և ընդհատակյա հնարավորությունները։

Ամենից առաջ հարկավոր էր ունենալ բոլշևիկյան մի թերթ, և ահա հրատարակվում է «Ալիք»-ը, որի առաջին իսկ համարը դաշնակները բռնագրավում են և ոչնչացնում։ Արհմիություններն ուզում են ունենալ իրենց տպագիր օրգանը, և ահա լույս է տեսնում «Բանբերը», որի ճակատին տպված է «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» լոզունգը։ Կատաղած դաշնակները բռնագրավում են և «Բանբերը»։ Չբավականանալով դրանով, դաշնակցական «հերոսները» ձերբակալում են աչքի ընկնող բոլշևիկներին, ինչպես և Խանոյանին։ Բայց դաշնակները խուճապի մեջ են։ Կարմիր Բանակը ջախջախելով Դենիկինյան զորամասերը, արդեն մտնում է Հյուսիսային Կովկասին, իսկ 11-րդ բանակը մոտենում է Բաքվին։ Այդ պայմաններում Խանոյանին երկար չեն պահում բանտում և առաջարկում են հեռանալ Հայաստանից։ Բայց ո՞ւր գնար Խանոյանը այդ պատասխանատու պահին, երբ ժողովուրդը պատրաստվում էր Մայիսյան զինված ապստամբության։ Նա գնացք է նստում իբր թե Թիֆլիս մեկնելու, սակայն գիշերով Ղարաքիլիսայի (Կիրովական) կայարանում աննկատ իջնում է վագոնից և մտնում քաղաք, որտեղ և անլեգալ կերպով ապրում ու ակտիվ մասնակցություն է ունենում Մայիսյան ապստամբությանը։

Դաշնակցական կառավարությունը Խանոյանին հայտարարում է «օրենքից դուրս», բայց վերջինիս հաջողվում է թաքնվել և օգոստոսին՝ լեռների վրայով գալիս է Թիֆլիս, այնտեղից՝ Վլադիկավկազ, ապա՝ Բաքու, որտեղ արդեն ծածանվում էր Սովետների կարմիր դրոշը։ Բաքվում Խանոյանը խմբագրում է «Կոմունիստ» հայերեն թերթը մինչև Վրաստանում սովետական կարգերի հաստատումը։ 1921 թվականի փետրվարին նա գալիս է Թիֆլիս և Կասյանի հետ միասին հիմնում «Կարմիր աստղ» թերթը։ 1921 թվականի մայիսին Անդրկովկասի Երկրային կոմիտեն նրան ուղարկում է Երևան, որտեղ նա մտնում է Ալ. Մյասնիկյանի գլխավորությամբ կազմված Հայաստանի նոր կառավարության մեջ, որպես ֆինանսների ժողովրդական կոմիսար։ Բայց Խանոյանի տարերքը խմբագրական աշխատանքն էր։ Նա, կարելի է ասել, բնածին հրապարակախոս էր, պրոպագանդիստ-ժուռնալիստ։ Ահա թե ինչու մենք Խանոյանին նորից գտնում ենք Թիֆլիսում «Կարմիր աստղ», իսկ 1924 թվականից՝ «Մարտակոչ» (Անդրկովկասյան Երկրային կոմիտեի օրգան) թերթերի խմբագրի պաշտոնում։

Սովետական իշխանության տարիներին Խանոյանը կտրված չէր պատասխանատու պարտիական-սովետական աշխատանքից։ Մինչև 1927 թվականը նա և՛ խմբագիր էր, և՛ Անդրերկրկոմի պարտկոլեգիայի նախագահի տեղակալ, Անդրկովկասի Կենտգործկոմի նախագահ, իսկ 1929 թվականից Հայաստանում՝ Արդարադատության ժողկոմ, հետո՝ ռեսպուբլիկայի դատախազ։

***

Բարձրահասակ, երիտասարդական կեցվածքով, միշտ մաքուր սափրված, խոշոր աչքերի խորքում, եթե ուրախ էր՝ կապտավուն մի փայլուն շող ակնոցների միջից, իսկ երբ դժգոհ՝ ապա չեչտված խստություն, պիջակի տակ սովորական սատինե բլուզը, հասարակ կեպին ճակատից քիչ բարձր, այդպես է մնացել մեր հիշողության մեջ Սերգո Խանոյանը։ Նա վերին աստիճանի աշխատունակ էր և տոկուն, մանավանդ գրական աշխատանքում։ Նա կենսուրախ էր, սիրում էր ռևոլյուցիոն պայքարը, դժվարությունները խիզախորեն հաղթահարելը։ Նրան հավասարապես հմայում էին դերասանի խաղը բեմում, Սայաթ-Նովայի և Ջիվանու երգն ու նվագը, Թումանյանի անմահ պոեմները, մանուկների աղմկալից խաղերը, արևոտ պայծառ օրը կանաչ դաշտում և ընդհանրապես բնության գեղեցկությունները։ Նրա համար մեծագույն հաճույք էր հանգստի ժամերին լինել բնության գրկում, ընկերներով շրջապատված։

Խանոյանը հմուտ և վարպետ կոնսպիրատոր էր, որի շնորհիվ էլ նա շատ անգամ մազապուրծ ազատվել է ցարական ժանդարմների, վրաց մենշևիկների ու դաշնակցական գործակալների ճանկերից։

Խանոյանը շնորհալի հրապարակախոս էր, ֆելիետոնիստ։ Իրենց յուրահատուկ հումորով, սրախոսությամբ և գեղարվեստականությամբ ուսանելի են և հաճույքով են կարդացվում նրա հոդվածները, որոնք միշտ էլ դիպուկ են եղել։ Առանց նայելու անգամ հոդվածի տակ դրված ստորագրությանը, մանավանդ «Մարտակոչի» շրջանում, դուք իսկույն կկռահեք, որ հոդվածը Խանոյանի գրչի արգասիքն է։

Բազմաթիվ են Խանոյանի հակիրճ, ժողովրդական լեզվով գրված փոքրիկ հոդվածները։

«Սարեն կուգան...», «Փըրչըլուխից դեպի գոր-

կարճ ժամկետ, քիչ կապիտալ ներդրումներ, որոնք տալիս են տնտեսական մեծ արդյունք: Միաժամանակ հաշվի են առնվում տվյալ շրջանի հողակլիմայական պայմանները, հատկապես մթնոլորտային տեղումների քանակը: Իհարկե, Հայաստանի համարյա բոլոր շրջաններում ջրատնտեսական օբյեկտների կառուցումը չափազանց խոշոր նշանակություն ունի գյուղատնտեսության բոլոր ճյուղերի զարգացման համար, սակայն միջոցների կենտրոնացման անհրաժեշտությունը թելադրում է, առաջին հերթին, ջրատնտեսական օբյեկտներ կառուցել այն շրջաններում, ուր առանց ոռոգման հնարավոր չէ ունենալ քիչ թե շատ ինտենսիվ տնտեսություն:

Քանի որ Գորիսի շրջանում մթնոլորտային տեղումներն ամռան ամիսներին համեմատաբար շատ են լինում, այնտեղ մեծ ծավալով ջրատնտեսական աշխատանքներ չեն կատարվել, որովհետև գումարները կենտրոնացվել են ավելի չորային կլիմա ունեցող շրջաններում:

1960—1961 թվականների ընթացքում Գորիսից ոչ հեռու կառուցվել և շահագործման է հանձնվել Քարահունջի ջրամբարը, որը կոռոգի 130 հեկտար հող: Ընթացիկ տարում կազմվում է Որոտանի ջրանցքի նախագիծը այն հաշվով, որ 1963 թվականին սկսվեն շինարարական աշխատանքները: Ջրանցքը կոռոգի շրջանի Այգեձոր, Ջորաշեն, Խնձորեսկ, Կոռնիձոր և Տեղ գյուղերի կոլտնտեսությունների 5000 հեկտար հողատարածությունները: Քանի որ այս օբյեկտի նախահաշվային արժեքը շատ բարձր է (մոտ 4,0 միլիոն ռուբլի նոր գներով), բայց նրա շինարարությունը որոշակի դրական փոփոխություն կմտցնի շրջանի էկոնոմիկայի մեջ, մինիստրությունը նպատակահարմար չի գտնում ցրել միջոցները նաև այլ օբյեկտների շինարարության վրա, ինչպիսին է, օրինակ, Բռունի ջրամբարը, որի շինարարության վրա կծախսվի մեկ միլիոն ռուբլի, բայց կոռոգի ընդամենը 200 հեկտար հող:

Մեր կարծիքով սխալ կլինի ջրատնտեսական օբյեկտները կառուցելուց հետո շրջանը մասնագիտացնել միայն «անասնաբուծության, մասնավորապես ոչխարաբուծության» ուղղությամբ, ինչպես իր հոդվածում նշում է ընկ. Ք. Պետրոսյանը: Եթե կառուցվում են անհամեմատ թանկ ջրատնտեսական օբյեկտներ, ապա անհրաժեշտ է այդ օբյեկտներով ոռոգվող նոր հողատարածությունները հիմնականում օգտագործել պտղաբուծության և այգեգործության համար: Մեր կարծիքով անասնաբուծության և ոչխարաբուծության հետ մեկտեղ պետք է շրջանը մասնագիտացվի նաև պտղաբուծության և բանջարաբուծության գծով:

Ընկ. Դ. Հովհաննիսյանի հոդվածում նշված է, որ շրջանի ոռոգելի հողերը ռացիոնալ չեն օգտագործվում:

Իրոք, Աբովյանի շրջանի մի շարք կոլտնտեսություններ ու սովխոզներ ոչ սրտացավ և անտնտեսվար վերաբերմունք են ցուցաբերում նոր ոռոգելի տարածություններն օգտագործելու նկատմամբ: Չնայած նրան, որ «Կոտայքի ջրանցքի կառուցման համար արդեն ծախսվել է 4,5 միլիոն ռուբլի, կոլտնտեսություններն ու սովխոզները չեն ջանում օգտագործել ստեղծված հսկայական հնարավորությունները գյուղատնտեսական արտադրության բոլոր ճյուղերի զարգացման համար: Հողերը չեն հարթեցվում, չեն ջրվում, բազմամյա կուլտուրաները տնկվում են չափազանց դանդաղ, ջրովի հողերի մեծ մասն օգտագործում են հացահատիկային կուլտուրաների ցանքի համար կամ բոլորովին չեն օգտագործում:

Ջրային տնտեսության մինիստրությունը շրջանի կազմակերպությունների հետ միասին ձեռք կառնի անհրաժեշտ միջոցներ՝ ճիշտ կազմակերպելու և ամբողջությամբ ու ռացիոնալ օգտագործելու ոռոգելի հողերն ու ստեղծված ջրային ռեսուրսները:



ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր),
ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ.,
ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ.,
ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԿԻՐԱԿՈՍՅԱՆ Ա. Մ.,
ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԱՐԳՍՅԱՆ Վ. Հ.

Թողարկիչ՝ Ա. ԱՍՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ջ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան,
ՀԿՊ Կենտկոմի շենք, հեռ. 2—56—92
Адрес редакции: Ереван, здание
ЦК КП Армении, тел. 2—56—92

ՎՖ 01057 Պատվեր 782 Տիրաժ 9750

Տպ. 7 մամուլ, մամուլում 68 340 նիշ: Ստորագրված է տպագրության 18/III 1962 թ.:

Հայկական ՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան



# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՄԵՏԵՈՏՐՈՆ

Ֆրանսիական Պյու-Դե-Դոմա աստղադիտարանի դիրեկտոր Անրի Դեսսանը իր լաբորատորիաները ժամանակավորապես թողել է Կլերմոն-Ֆերրանում և Լյանոմեզան քաղաքից ոչ հեռու Համանուն հարթավայրում տեղադրելով իր մետեոտրոն կոչվող սարքավորումը, նա կատարում է արտակարգ հետաքրքիր փորձեր։ Այդ աշխատանքը հետապնդում է մեկ նպատակ—օգտագործել օդային անծայրածիր տարածություններում ստեղծվող արևի էներգիայի վիթխարի պաշարները։

Հայտնի է, որ արևի ճառագայթները տաքացնելով գետինը, տաքացնում են նաև մթնոլորտի ցածի շերտերը։ Տաքացած օդը ընդարձակվելով ավելի թեթև է դառնում և ձգտում է դեպի վեր։ Ինչքան բարձր է ջերմաստիճանը, այնքան մեծ է վեր բարձրացող օդի քանակը։ Հաճախ 1000—1500 մետր բարձրության վրա տաք օդը հանդիպում է սառը օդի պատնեշի և հավաքվելով այդպիսի պատնեշի տակ՝ ձգտում է ելք գտնել։ Այդպիսի «առաստաղը» փուլ է գալիս, եթե նրա տակ հավաքվել է տաք օդի բավականին մեծ քանակություն, որը կարող է առաջանալ հարթ ու բաց գույնի մակերեսից արևի ճառագայթների ինտենսիվ անդրադարձման, ինչպես նաև խոտհարքների և անտառների մեծ հրդեհների ժամանակ։ Այս դեպքում տաք օդը բարձրանալով ճեղքում է սառը առաստաղը և ստեղծում փոթորկի հասնող ուժեղ հոսանք։ Նման դեպքի օրինակ է վերջերս Նորմանդիայում տեղի ունեցած ավերիչ փոթորիկը։

Անրի Դեսսանի մետեոտրոնը հիմնված է այս երևույթի վրա։ Այրելով րոպեում մեկ տոննա գազոյլ (դիզելային վառելանյութ) մետեոտրոնը ստեղծում է տեղական գերջեռուցում, դրա վրա ծախսելով 700 հազար կիլովատ, այսինքն՝ մի մեծ ջերմաէլեկտրակայանի հզորություն, որն անհրաժեշտ է սառը օդի շերտը ճեղքելու համար։ Բացված ճեղքով վեր է սլանում օրվա ընթացքում արևից տաքացած միլիոնավոր խորանարդ մետր օդ և քիչ հետո վերածվում ամպի քուլաների, որոնք խտանալով դառնում են անձրևաբեր ամպ 300 հազար տոննա ջրի պարունակությամբ, որից կարելի է 100 միլիոն կիլովատ էներգիա ստանալ 4—5 ժամվա ընթացքում։ Այսպիսով, ծախսելով 700 հազար կիլովատ, կարելի է ստանալ 14 անգամ ավելի էներգիա, որի արժեքը հավասար կլինի 3 տոննա գազոյլի, հարյուր կրակայրիչների, 700 մետր խողովակների և օդամղիչ պոմպի արժեքին։ Բայց սրանով չի սահմանափակվում նրա արժեքը. իսկական արժեքը կայանում է նրանում, որ մետեոտրոնի միջոցով ցանկացած ժամանակ, անհրաժեշտ վայրում կարելի է հավաքել անձրևաբեր ամպեր և ստիպել, որ անձրև գա։ Դժվար չէ կռահել, թե փորձերի հաջող ելքը ինչպիսի հեռանկարներ կբացի գյուղատնտեսության զարգացման, արդյունաբերական կենտրոնները ջրով մատակարարելու, սակավաջուր կամ անջուր վայրերին կենդանություն տալու գործում։ Ինքը Դեսսանը կարծիք է հայտնում, որ այդ ճանապարհով կարելի է Օրեդոն լիճը անընդհատ ապահովել ջրով և այն դարձնել էլեկտրաէներգիայի լրացուցիչ ռեզերվ (հիշենք նաև մեր Սևանի պրոբլեմը, որի լուծման համար, անշուշտ, մեծ հետաքրքրություն են ներկայացնում վերը նշված փորձերը)։ Սակայն այդ բոլորը հետագայում։ Ներկայումս անհրաժեշտ է նշել, որ մետեոտրոնի ստեղծման ուղղությամբ տարվող աշխատանքները դեռ նոր են դուրս եկել իրենց սկզբնական շրջանից, բայց արդեն համբավ են ձեռք բերել։ Անցյալ տարվա հունիսին Համբուրգում կայացած մթնոլորտային երևույթների ուսումնասիրության բնագավառում աշխատող ֆիզիկոսների միջազգային կոնֆերանսը որոշեց 1963 թվականի տարեկան կոնֆերանսն անցկացնել Լյանոմեզան հարթավայրում ի պատիվ մետեոտրոնի։

## ԱՊԱԿՅԱ ԻՐԵՐԻ ՀԱՍԱԿԻ ՈՐՈՇՈՒՄԸ

Ամերիկյան գիտնականները հայտնաբերել են, որ խոնավ հողում կամ ջրում սուզված ապակու վրա ժամանակի ընթացքում կեղև է առաջանում։ Այդ կեղևի ուսումնասիրությունը միկրոսկոպի տակ ցույց է տալիս, որ նա կազմված է առանձին, մարդու մազից 30 անգամ բարակ շերտերից։ Գիտնականները պնդում են, որ այդպիսի շերտերից ամեն մեկը տարվա ընթացքում տեղի ունեցող քիմիական պրոցեսի արդյունք է։ Նրանց թիվը, ինչպես ծառի տարեկան օղակներինը, բավական ճշգրտությամբ ցույց է տալիս ապակյա իրերի հասակը։